# ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

*«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։*

*Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։*

*Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։*

*Մարքսիզմ-լենինիզմի կլասիկների, կուսակցության և սովետական պետության ղեկավարների, միջազգային բանվորական ու կոմունիստական շարժման ականավոր գործիչների աշխատություններից, պաշտոնական փաստաթղթերի ժողովածուներից վերցված քաղվածքները, վկայակոչումները պետք է լինեն երկերի հատորյակների կամ աշխատությունների հայերեն, իսկ եթե այդպիսիք չկան՝ ռուսերեն վերջին հրատարակությունից։*

*Տեսական և գիտական բնույթի հոդվածների վերջում պարտադիր է նշել օգտագործված աղբյուրների համառոտ ցանկը։*

*Սույն պահանջները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածն անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։*

*Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։*


# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

4

ԱՊՐԻԼ 1979

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է 1922 Թ.
ИЗДАЕТСЯ С 1922 Г.

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄԿՈՒՍԻ ԿԵՆՏԿՈՄԻ ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ
«ЛЕНИНЯН УГИОВ» («По ленинскому пути»)—теоретический и политический журнал ЦК КП Армении


## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

## СОДЕРЖАНИЕ







# ՍՄԿԿ ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵՈՒՄ

**ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է ընդունել «ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի 50-րդ տարեդարձի մասին»:**

1979 թվականի ապրիլի վերջին լրանում է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի՝ ՀամԿ(բ)Կ 16-րդ կոնֆերանսի կողմից հավանության արժանանալու և մայիսին սովետների հինգերորդ համամիութենական համագումարի կողմից հաստատվելու 50 տարին:

Հիսուն տարի առաջ կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ծավալվեց սովետական ժողովրդի հերոսական պայքարը հանուն առաջին հնգամյա պլանի կենսագործման, որը ակնառու տեղ գրավեց Սովետական Միությունում սոցիալիզմի կառուցման լենինյան ծրագրի իրագործման ասպարեզում: Դա առաջին կոմպլեքսային պլանն էր, որում գիտականորեն հիմնավորված էին երկրի տնտեսական ու սոցիալական զարգացման տեմպերն ու համամասնությունները: Պլանային սիստեմը սոցիալիզմի ծնունդն է, նրա արմատական առավելությունների արտահայտությունը: Նրա հիմունքները սահմանվել էին մեծ Լենինի կողմից, որի ղեկավարությամբ մշակվեց համաշխարհային պրակտիկայում առաջին հեռանկարային ժողովրդատնտեսական պլանը՝ ԳՈԷԼՌՕ-ի պլանը:

Առաջին հնգամյակը ցույց տվեց կապիտալիստական կարգի համեմատությամբ սոցիալիստական կարգի ունեցած հսկայական առավելությունները, հաստատեց ժողովրդական տնտեսության կառավարման սկզբունքորեն նոր, հետևողականորեն դեմոկրատական ձևեր ու մեթոդներ, աշխատավորության բազմամիլիոնանոց զանգվածների մեջ արթնացրեց ստեղծարար աշխատանքի մեծ եռանդ, որը մարմնավորվեց սոցիալիստական մրցության մեջ: Առաջին հնգամյակը իրականության հեղափոխական վերակերտման, տնտեսական աճի արագ տեմպերի, գիտական պլանավորման, ժողովրդի աշխատանքային սխրանքի խորհրդանիշը եղավ: Դրա իրականացումն ապահովեց սոցիալիստական հասարակության կառուցման նյութական ամրակուռ հիմքի ստեղծումը: Առաջին հնգամյա պլանի հաջող կատարումը վիժեցրեց Հոկտեմբերի երկիրը տնտեսապես խեղդելու՝ իմպերիալիստական ռեակցիայի դիտավորությունները:

Առաջին հնգամյակը դարձավ սովետական հնգամյակների հիանալի համաստեղության սկզբնավորողը, որոնք մեր երկիրը տեխնիկատնտեսական հետամնացությունից հասցրին տնտեսական, գիտատեխնիկական ու սոցիալական պրոգրեսի գագաթները: Դրանցից յուրաքանչյուրն ուներ իր դեմքը, արտացոլում էր ժամանակի անկրկնելի գծերը, մի փուլ էր սոցիալ-տնտեսական կոնկրետ նպատակների հասնելու ասպարեզում: Բայց դրանց բոլորին միավորել և միավորում է ընդհանուր խնդրի անխզելիությունը՝ հնգամյակների աստիճաններով դեպի սոցիալիզմ և կոմունիզմ:

Տնտեսական ու սոցիալական վերափոխումների իրականացման արգասիքն էր սովետական ժողովրդի համաշխարհային պատմական հաղթանակը՝ զարգացած սոցիալիստական հասարակության, մարդու հիմնական իրավունքների իրականացումը երաշխավորող իսկական դեմոկրատիայի հասարակության, աշխատավորների բարձր կազմակերպվածության, գաղափարայնության ու գիտակցականության հասարակության կառուցումը ՍՍՀՄ-ում: Կու-

սակցությունը դաստիարակել է նոր մարդ՝ կոմունիզմի ակտիվ կառուցող, հայրենասեր և ինտերնացիոնալիստ: Այդ հսկայական նվաճումները վավերագրված են ՍՍՀՄ նոր Սահմանադրության մեջ:

Այսօր սովետական մարդիկ իրենց ուժերը, գիտելիքները, խանդավառությունը նվիրաբերում են ՍՄԿԿ XXV համագումարի որոշումներով սահմանված տնտեսական շինարարության ու սոցիալական առաջընթացի բնագավառի գործողությունների կոնկրետ ծրագրի՝ հոքելյանական տասներորդ հնգամյակի առաջադրանքների կատարմանը:

**Ժողովրդական տնտեսության զարգացման պլանավորումը XX դարի և հասարակական կյանքի վերակերտման հեղափոխական պրակտիկայի գիտական ու սոցիալական կարևորագույն նվաճումներից մեկն է:** Վ. Ի. Լենինը պլանավորումը համարում էր ժողովրդական տնտեսության կառավարման ողն ու ծուծը: Նա շեշտում էր, որ «...չի կարելի աշխատել առանց տևական ժամանակաշրջանի համար կազմված և լուրջ հաջողություն խոստացող պլանի», նշում էր երկրի մասշտաբով հեռանկարային միասնական տնտեսական պլան ունենալու անհրաժեշտությունը (Վ. Ի. Լենին, **Երկեր**, հ. 31, էջ 647):

Կուսակցության XV համագումարի դիրեկտիվներով կազմված առաջին հնգամյա պլանն էլ հենց հանդիսացավ այդպիսի տնտեսական, քաղաքական ուղեցույց փաստաթուղթ, օրենք՝ արտադրական գործունեության բոլոր օղակների համար:

Առաջին հնգամյա պլանի պատմական ակնառու նշանակությունը նաև այն է, որ նա դրեց հնգամյա առաջադրանքների՝ որպես էկոնոմիկայի պլանավորման հիմնական ձևի, կիրառման սկիզբը, դրանք դարձրեց կոմունիստական ստեղծարար գործունեության կազմակերպող ու մոբիլիզացնող մեծ ուժ, գործնականում ապացուցեց տնտեսավարման սոցիալիստական մեթոդների գերազանցությունը կապիտալիստականի նկատմամբ: Ինչպես նշվեց ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի նոյեմբերյան պլենումում, հիսուն տարում կուտակվել է ժողովրդական տնտեսության պլանային զարգացման, տնտեսական, գիտատեխնիկական, սոցիալական պրոբլեմների լուծման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման հսկայական, շատ տեսակետներից եզակի փորձ: Դրա հիման վրա են այժմ մշակվում 11-րդ հնգամյակի և մինչև 1990 թվականն ընդգրկող հեռանկարային պլանների նախագծերը, որոնք կոչված են խոշոր ուղենիշ դառնալու կոմունիստական հասարակության ստեղծման ճանապարհին:

Խնդիրն այժմ այն է, որպեսզի որակապես նոր մակարդակի բարձրացվեն մեր ամբողջ պլանային աշխատանքը, պլանավորման բուն բովանդակությունը, ավելի խոր իմաստավորվեն այն տնտեսական պրոբլեմները, որ ծնում է կյանքը, լիակատար պատասխանատվությամբ և նախաձեռնությամբ վարվի դրանց լուծման նպատակահարմար ուղիների ստեղծագործական որոնումը:

**Մեր պլանները դարձել են կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականության կենսագործման գլխավոր գործիքը: Դրանք իրագործվում են հանուն սոցիալիստական հասարակարգի ամրապնդման ու զարգացման, արտադրաուժերի հետևողական մեծացման, հասարակական հարաբերությունների կատարելագործման, ժողովրդի նյութական ու կուլտուրական բարեկեցության սիստեմատիկ բարձրացման:**

Ձեռնամուխ լինելով ըստ հնգամյակների հեռանկարային պլանավորմանը, սովետական պետությունը ուժերն ու ռեսուրսները կենտրոնացրեց կոմունիստական կուսակցության առաջադրած պատմական կարևորություն ունեցող խնդիրը լուծելու՝ շատ կարճ ժամկետում սոցիալիզմ կառուցելու և ՍՍՀՄ-ը աշխարհի արդյունաբերական տեսակետից առավել զարգացած երկրների շարքը դուրս բերելու վրա:

Նախապատերազմյան երեք ոչ լրիվ հնգամյակների ընթացքում մեր ժողովուրդը կատարեց երկրի ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման սխրանքը, ապահովեց նրա պաշտպանունակությունը, դնելով Հայրենական մեծ պատերազմում մեր հաղթանակի նյութատեխնիկական ամուր հիմքը: Հետպատերազմյան վերածնության և ժողովրդական տնտեսության



զարգացման էտապեան բազմապատկեց այդ սխրանքը: Ստեղծվեց հասուն սոցիալիզմի տնտեսական ու գիտատեխնիկական հզոր պոտենցիալ:

Այժմ մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ծավալը 128 անգամ գերազանցում է 1928 թվականի մակարդակը:

Առաջին հնգամյակի նախօրյակին երկրում կային 24 միլիոն մասնատված գյուղացիական տնտեսություններ՝ պրիմիտիվ գործիքներով: Ներկայումս ՍՍՀՄ գյուղատնտեսությունը մեքենայացված խոշոր արտադրություն է, որտեղ միջտնտեսային կոոպերացմամբ և ագրոարդյունաբերական ինտեգրացմամբ ակտիվորեն ընթանում են մասնագիտացման ու համակենտրոնացման պրոցեսները:

Առաջին հնգամյակը շատ լայն ասպարեզ բացեց կուլտուրական հեղափոխության իրականացման համար: Հնգամյակի տարիներին հսկայական հաջողություններ ձեռք բերվեցին անգրագիտության վերացման, ընդհանուր տարրական կրթության ապահովման, հանրակրթական դպրոցների և ֆաբրիկագործարանային ուսուցման դպրոցների, գրադարանների, բանֆակների, տեխնիկումների, բուհերի, գիտական ու կուլտուր-լուսավորական հիմնարկությունների զարգացած ցանցի ստեղծման ասպարեզում: Առանց այդ մեծագործությունների անհնար կլիներ սովետական գիտության ու մշակույթի ներկայիս թռիչքը, որոնք ընթանում են համաշխարհային գիտատեխնիկական առաջընթացի և համաշխարհային մշակույթի ավանգարդում: Այսօր մեզանում իրականացվում է երիտասարդության լրիվ միջնակարգ կրթությունը: Մեր մոլորակի չորս գիտաշխատողից մեկը և երեք բժշկից մեկը սովետների երկրի քաղաքացի է: Աշխարհում առաջինը սովետական մարդը սլացավ դեպի տիեզերք:

Հնգամյակները հանգեցրին բոլոր միութենական և ինքնավար հանրապետությունների տնտեսական ու սոցիալական զարգացման մակարդակի հավասարեցմանը, նրանց ընդհանուր վերելքին ու բարգավաճմանը տնտեսության, ժողովրդական կրթության և կուլտուրայի ոլորտում: Ընկ. Լ. Ի. Բրեժնևի պատկերավոր արտահայտությամբ, մեր հնգամյակները ժողովուրդների լենինյան բարեկամությունն են՝ թարգմանված էկոնոմիկայի լեզվով:

Սովետական հնգամյակների պատմությունը ՍՍՀ Միության բոլոր հանրապետություններում արտադրողական հզոր ուժերի ստեղծման, բանվոր դասակարգի ստեղծման, տնտեսության բոլոր ճյուղերում, պետական կառավարման օղակներում, գիտության ու կուլտուրայի բնագավառում որակյալ կադրերի ստեղծման պատմությունն է:

ՍՍՀՄ արդի էկոնոմիկան վիթխարի միասնական ժողովրդատնտեսական կոմպլեքս է, իսկ յուրաքանչյուր հանրապետության էկոնոմիկան՝ այդ ընդհանուր միութենական կոմպլեքսի անկապտելի մասը:

**Սովետական հնգամյա պլանները ոչ միայն տնտեսական շինարարության, այլև սոցիալական պրոգրեսի պլաններ են: Դրանք ծառայում են սոցիալիստական հանրային արտադրության բարձրագույն նպատակի ձեռքբերմանը՝ մարդկանց նյութական ու հոգևոր պահանջմունքների ավելի լիակատար բավարարմանը:**

Ամրապնդվում է հնգամյակների տնտեսական ու սոցիալական ծրագրերի փոխադարձ կապը, դրանց գլխավոր խնդիրներում իրացվում են սովետական մարդկանց կյանքի բոլոր կողմերը բարելավելու կուսակցության դրույթները:

Օգտագործելով կենտրոնացված պլանավորման առավելությունները, սոցիալիստական հասարակությունը առաջին իսկ հնգամյակում լուծեց մի այնպիսի կարևորագույն սոցիալական պրոբլեմ, ինչպիսին գործազրկության վերացումն է, որը շարունակում է տառապանքներ պատճառել կապիտալիստական երկրների տասնյակ միլիոնավոր աշխատավորների և որը հաղթահարել անզոր է շահագործողական կարգը: Սովետական մարդիկ իրենց երկրի, իրենց բախտի տերն են:

Հնգամյակից հնգամյակ աճում են բնակչության ռեալ եկամուտները, հանրային ֆոնդերից կատարվող վճարումներն ու հատկացվող արտոնությունները, պետական ու կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառու-

թյունը, անընդհատ զարգանում են ժողովրդական լուսավորությունն ու առողջապահությունը, բարելավվում սովետական մարդկանց աշխատանքի ու կենցաղի պայմանները:

Հաջողությամբ է լուծվում սոցիալական կարևորագույն պրոբլեմներից մեկը՝ բնակարանային պրոբլեմը: Սովետական մարդու բնակարանի իրավունքը բարձրացված է սահմանադրական նորմի մակարդակի: Երկրում տարեկան շահագործման է հանձնվում մոտ 110 միլիոն քառակուսի մետր բնակարան, 11 միլիոն քաղաքացիներ փոխադրվում են նոր բնակարաններ կամ բարելավում իրենց բնակարանային պայմանները: Կես դար շարունակ անփոփոխ է մնում բնակվարձը:

Ապահովվում է Հոկտեմբերի հայրենիքի բոլոր ժողովուրդների նյութական բարեկեցության հետագա աճը, հոգևոր կյանքի ծաղկումը տասներորդ հնգամյակում, որի սոցիալական ծրագիրը լիովին համապատասխանում է աշխատավորների բարեկեցությունը անշեղորեն բարձրացնելու կուսակցության կուրսին:

**Իրականության հեղափոխական վերակերտումները, աշխատանքի սոցիալական բնույթի փոփոխությունները կյանքի կոչեցին մի այնպիսի նոր հասարակական երևույթ, ինչպիսին սոցիալիստական մրցությունն է՝ մասսաների պատմական ստեղծագործությամբ ծնված և կոմունիստական կուսակցության կողմից գիտականորեն կազմակերպված աշխատանքային մրցակցության և ընկերական փոխօգնության հարաբերությունները:**

Սոցիալիստական մրցությունը և հնգամյակները անխզելիորեն կապված են միմյանց հետ:

Հիսուն տարի առաջ XVI կուսակցական կոնֆերանսն ընդունեց դիմում «Սովետական Միության բոլոր բանվորներին և աշխատավոր գյուղացիներին»՝ մասսայական սոցիալիստական մրցություն ծավալելու մասին: Մեծ նախաձեռնության կայծերից՝ առաջին կոմունիստական շաբաթօրյակներից, որոնց վաթսունամյակը նույնպես լրանում է այս տարի, սոցիալիստական շինարարության հարվածայիններից և առաջին հնգամյակի հարվածային բրիգադներից, առաջին հանդիպական պլաններից է զարգացել մեր մրցությունը: Այն հետագայում դրսևորվեց նախապատերազմյան հնգամյակների հերոսների՝ Ստախանովի և Բուսիգինի, Դեմչենկոյի և Կրիվոնոսի, Անգելինայի ու Վինոգրադովաների և աշխատանքային փառքի էստաֆետը նրանցից ընդունած հազարավորների՝ Գագանովայի և Մամայի, Զլոբինի և Կույիկովայի, Սմիռնովի և Մուրզենկոյի, Գիտալովի ու Կլեպիկովի և շատ ուրիշների աշխատանքային սխրանքներում:

Այսօր դրանք մարմնավորված են աշխատանքի արդյունավետությունն ու որակը բարձրացնելու՝ միլիոնավոր աշխատավորների մասսայական շարժման մեջ: Հայրենիքը բարձր է գնահատում մրցության ներկայիս փուլի մասնակիցների ստեղծարար մեծագործությունները: Փա՛ռք ու պատի՛վ կոմունիստական շինարարության աջթևայիններին:

Հասուն սոցիալիզմի պայմաններում մրցությունը դարձել է սովետական հասարակության ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական առաջադիմության, հոգևոր, բարոյական ծաղկման հզոր շարժիչը: Զարգանում է աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժումը, որն իր բարենպաստ հունի մեջ է առնում նորանոր միլիոնավոր աշխատավորների, նրանց տոգորելով բարձր գիտակցականությամբ ու կուլտուրայով, նրանց ակտիվորեն մասնակից դարձնելով հասարակության և պետության գործերի կառավարմանը:

Ժողովրդական տնտեսության պլանային զարգացման՝ Սովետական Միության կուտակած հսկայական փորձը համաշխարհային ճանաչում է ստացել: Այն դարձել է շատ այլ պետությունների սեփականությունը: Զարգանում և խորանում են ՏՓԽ-ի անդամ երկրների համագործակցությունը և սոցիալիստական տնտեսական ինտեգրացումը պլանային հիմքի վրա: Նրանց ժողովրդատնտեսական պլանների կոորդինացումը աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման հնարավորությունների և առավելություն-



ների առավելագույն օգտագործման հզոր գործիք է: Մշտապես կատարելագործվում և հարստանում է ՏՓԽ-ի անդամ երկրների համագործակցությունը պլանային գործունեության բնագավառում:

Այսօր պլանային տնտեսավարման սովետական փորձը ավելի ու ավելի շատ է արժանանում զարգացող երկրների ուշադրությանը, կապիտալիստական պետությունների բազմաթիվ տնտեսագետների ճանաչմանը: Դրանում իր հաստատումն է գտնում այն փաստը, որ հասարակական զարգացման բոլոր բնագավառներում մեր հայրենիքի ձեռք բերած տպավորիչ արդյունքները իրավամբ կապվում են հասարակության պլանային ղեկավարման հետ:

Այժմ մեր երկիրը գտնվում է զարգացման բարձր մակարդակի վրա՝ հասուն սոցիալիզմի փուլում: Նա ունի հզոր էկոնոմիկա, գիտատեխնիկական վիթխարի պոտենցիալ, քաղաքականապես հասուն, բարձրորակ կադրեր, որոնք պետական շինարարության հարուստ փորձ են կուտակել: Նա անհրաժեշտ ամեն ինչ ունի դեպի կոմունիզմ հետագա առաջընթացի համար:

Այսօր խնդիրն այն է, որ լիովին, առավելագույն արդյունավետությամբ իրացվեն զարգացած սոցիալիստական հասարակության, նրա տնտեսական պոտենցիալի, այն ամենի ընձեռած հնարավորությունները, ինչ ունի մեր ժողովրդական տնտեսությունը: Իսկ դա կախված է բոլորից, սովետական մարդկանցից, մեր կազմակերպվածությունից, կարգապահությունից, ներդաշնակ, հստակ աշխատանքից:

ՍՍՀՄ Գերագույն սովետի մարտի 4-ին կայացած ընտրությունները, այս տարվա ամբողջ ընտրական կամպանիան ցուցադրեցին աշխատավորների ստեղծագործական ակտիվության, նախաձեռնության հետագա բարձրացումը ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների, տասներորդ հնգամյա պլանի կատարման պայքարում: Կրկին հսկայական ուժով դրսևորվեցին սովետական ժողովրդի կուռ միասնությունը, նրա սերտ համախմբվածությունը կոմունիստական կուսակցության, ՍՄԿԿ լենինյան Կենտրոնական կոմիտեի, ընկ. Լ. Ի. Բրեժնևի գլխավորած Կենտկոմի քաղբյուրոյի շուրջը:

Մեր ամբողջ ժողովուրդը խոր գոհունակությամբ ընդունեց մայրաքաղաքի Բաումանյան ընտրական օկրուգի աշխատավորների նախընտրական ժողովում ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևի արտասանած ճառը: Սովետական մարդիկ միահամուռ պաշտպանում են կուսակցության քաղաքականությունը՝ կոմունիզմի կառուցման և խաղաղության քաղաքականությունը: Դա է մեր հաղթանակների գլխավոր, վճռական պայմանը: «Ժողովրդի կողմից մեր լենինյան կուսակցության քաղաքական կուրսի միահամուռ հաստատակամ պաշտպանությունն է առաջընթացի հուսալի հիմքը, այն բանի երաշխիքը, որ նշված պլանները կկենսագործվեն,— նշել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը:— Դրանք կկենսագործվեն կուսակցության կամքով, սովետական մարդկանց աշխատանքով՝ հանուն նրանց բարօրության ու երջանկության»:

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն որոշում է՝

Նկատի առնելով ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի ընդունման 50-րդ տարեդարձի ակնառու նշանակությունը, լայնորեն նշել այդ հիշարժան տարելիցը, կուսակցական, արհմիութենական ու կոմերիտական կազմակերպությունների, սովետական և տնտեսական մարմինների կազմակերպական-քաղաքական ու գաղափարադաստիարակչական աշխատանքը նպատակամղելով աշխատավորների ստեղծագործական եռանդի հետագա ակտիվացմանը՝ նպատակ ունենալով հաջողությամբ իրականացնել տասներորդ հնգամյակի առաջադրանքները, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումները, ապահովել մեր հայրենիքի տնտեսական, գիտատեխնիկական ու պաշտպանական պոտենցիալի, սովետական մարդկանց կուլտուրայի ու բարեկեցության հզոր աճը:

Միութենական հանրապետությունների կոմկուսների կենտկոմներին, կուսակցության երկրկոմներին ու մարզկոմներին, ՍՍՀՄ պետպլանին, մինիստրություններին ու գերատեսչություններին, ՀԱՄԿԽ-ին և ՀամԼԿԵՄ

Կենտկոմին հանձնարարվում է պանծալի հոբելյանը նախապատրաստելիս և անցկացնելիս՝

— աշխատավորական կոլեկտիվների՝ սոցիալիստական մրցության մասնակիցների, ջանքերը կենտրոնացնել 1979 թվականի և ամբողջ հնգամյակի պլանային առաջադրանքների կատարման ու գերակատարման, աշխատանքի արդյունավետության և որակի բարձրացման, գիտատեխնիկական առաջընթացի տեմպերի արագացման, արտադրության ռեզերվների մոբիլիզացման, խնայողության ռեժիմի խստիվ կիրառման վրա՝ վերջնական բարձր արդյունքների հասնելու համար.

— պրոպագանդել տնտեսության պլանային սոցիալիստական սիստեմի առավելությունները կապիտալիստականի հանդեպ, որին բնորոշ է արտադրության անարխիան, հասնել տնտեսական մեխանիզմի՝ էկոնոմիկայի պլանային կառավարման հետագա կատարելագործման, պլանավորման է՛լ ավելի սերտ շաղկապման սոցիալիստական մրցության կազմակերպման հետ.

— մշտապես բարձրացնել սոցիալիստական մրցության ներգործունությունը, ուժեղացնել նրա ազդեցությունը տնտեսական և ամբողջ հասարակական կյանքի վրա, առավել լրիվ օգտագործել նրա հնարավորությունները աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում. ավելի ակտիվորեն տարածել այն ամեն նորը, առաջադիմականը, որը մասսաների ստեղծագործական նախաձեռնության ծնունդն է:

Կենտրոնական թերթերն ու հանդեսները, ՏԱՍՍ-ը, հեռուստատեսության ու ռադիոհաղորդումների պետական կոմիտեն, ԱՊՆ-ը պետք է լայնորեն լուսաբանեն առաջին հնգամյա պլանի 50-ամյակը:

ՍՍՀՄ պետպլանին, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային, ՍՄԿԿ Կենտկոմին առընթեր հասարակական գիտությունների ակադեմիային, ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության ակադեմիային հանձնարարված է անցկացնել գիտագործնական կոնֆերանս՝ նվիրված ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության զարգացման առաջին հնգամյա պլանի ընդունման 50-ամյակին և էկոնոմիկայի պլանային կառավարման հետագա կատարելագործման պրոբլեմներին, արտադրության պլանավորման ու կառավարման գործում աշխատավորական կոլեկտիվների դերին:

ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսի դիրեկցիային, ՍՍՀՄ պետպլանին, ՍՍՀՄ գիտության ու տեխնիկայի պետական կոմիտեին, ՍՍՀՄ գիտությունների ակադեմիային հանձնարարված է Տնտեսական փոխօգնության խորհրդում ՍՍՀՄ մշտական ներկայացուցչության մասնակցությամբ ԺՏՆՑ-ի տաղավարներում և ՏՓԽ-ի քարտուղարությունում կազմակերպել թեմատիկ ցուցահանդեսներ՝ «Առաջին հնգամյա պլանից մինչև մեր օրերը. ստեղծարար աշխատանքի պաթոսը» նշանաբանով:



ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն հաստատ վստահություն է հայտնում, որ պլանային ու տնտեսական մարմինների աշխատողները, հենվելով կուտակված փորձի վրա և հաշվի առնելով ժամանակակից պահանջները՝ կուսակցության XXV համագումարի և ՍՄԿԿ Կենտկոմի հաջորդ պլենումների որոշումներին համապատասխան, իրենց բոլոր ուժերն ու գիտելիքները կգործադրեն, որպեսզի արժանի ավանդ ներդնեն պլանավորման պրակտիկայի, տնտեսական մեխանիզմի գործողության հետագա կատարելագործման ասպարեզում:

Անտարակույս, Սովետական Միության աշխատավորները առաջին հնգամյա պլանի ընդունման 50-ամյակը կնշանավորեն աշխատանքային նոր հաջողություններով, առավել լիովին կօգտագործեն և կբազմապատկեն այն հերոսական փորձը, որը կուտակել են մեր երկրում սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման մարտիկների սերունդները:

# ԱՄՐԱՊՆԴՎՈՒՄ Է ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ՀԱՄԱԳՈՐԾԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ

(ՏՓԽ-Ի 30-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Վ. Ի. ՄՈՐՈԶՈՎ**
ՏՓԽ-ի քարտուղարության պատասխանատու աշխատող

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ, ամբողջ սոցիալիստական համագործակցությունը և համաշխարհային առաջադեմ հասարակայնությունը լայնորեն նշում են Տնտեսական փոխօգնության խորհրդի՝ սոցիալիստական երկրների առաջին միջազգային տնտեսական կազմակերպության, ստեղծման 30-րդ տարեդարձը, մի կազմակերպության, որը հաջողությամբ իրականացնում է իրավահավասար համագործակցությունն ու փոխօգնությունը, ազգային և ինտերնացիոնալ շահերի ներդաշնակ զուգակցումը, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքները: ՏՓԽ-ի ողջ գործունեությունն անխզելիորեն կապված է սոցիալիզմի համաշխարհային սիստեմի վերընթաց զարգացման և սոցիալիստական համագործակցության ամրապնդման հետ: ՏՓԽ-ն կամավոր պրոլետարական համերաշխության և եղբայրական փոխադարձ օգնության հիման վրա սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ուղիով աշխարհի մի խումբ երկրների պատմական առաջընթաց շարժման կոնկրետ, կենդանի մարմնավորումն է: Դարավոր սոցիալական ճնշման շղթաները թոթափած երկրների միջազգային հարաբերությունների այդ սկզբունքը մեզ կտակել է մեծ Լենինը, երբ կոմունիստներին կոչ էր անում պայքարել ժողովուրդների այնպիսի հարաբերությունների ստեղծման համար, որոնք հիմնված լինեն լիակատար վստահության, եղբայրական միասնության պարզ գիտակցության, միանգամայն կամավոր համաձայնության վրա:*

*Սոցիալիստական համագործակցությունը զարգանում է առաջընթաց գծով: Այսօր սոցիալիստական համագործակցության երկրների փոխադարձ տնտեսական կապերը, որոնք հիմնված են նրանց տնտեսությունների կոմպլեքսային ինտեգրացման վրա, հասել են բարձր մակարդակի և բնութագրվում են խոշոր մասշտաբներով և լայն դիապազոնով: Դրանք նյութական հուսալի հիմք են ստեղծում սոցիալիզմի հետագա հաջողությունների համար՝ կապիտալիզմի հետ նրա պատմական մրցության մեջ: Այսօր ՏՓԽ-ի երկրների ռեգիոնը բնութագրվում է բարձր դինամիզմով: 1977 թվականին, 1970 թվականի համեմատությամբ, նրանց ազգային եկամուտն ընդհանուր առմամբ մեծացել է 1,5, իսկ արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը՝ 1,6 անգամ, այդ թվում՝ մեքենաշինության մեջ ավելի քան 2 անգամ: ՏՓԽ-ի երկրների արտաքին առևտրական փոխադարձ շրջանառությունը 1977 թվականին 1970 թվականի մակարդակը գերազանցեց ավելի քան 2 անգամ: Այդ նույն ժամանակ ազգային եկամտի և արդյունաբերական արտադրության աճի տեմպերը «ընդհանուր շուկայի» երկրներում եղել են 2—3 անգամ ավելի ցածր: Եթե սոցիալիստական համագործակցությունը համեմատենք զարգացած կապիտալիստական պետությունների հետ, իբրև հաշվարկման ելակետ վերցնե-*

լով էկոնոմիկայի մինչճգնաժամային մակարդակը (1973 թ.), ապա կստացվի, որ ՏՓԽ-ի մեջ մտնող երկրների արդյունաբերական արտադրության ծավալը մեծացել է 32, իսկ կապիտալիստական երկրներինը՝ միայն 7 տոկոսով։

Արդի համաշխարհային տնտեսության մեջ ՏՓԽ-ի երկրներն աչքի ընկնող տեղ են գրավում։ Ունենալով մոտ 430 մլն բնակիչ (երկրագնդի բնակչության մոտավորապես 10 տոկոսը), նրանք տալիս են աշխարհում արտադրվող արդյունաբերական արտադրանքի $1/3$-ը։ Մինչև 1978 թվականի սկիզբը նրանց ազգային եկամուտը 1948 թվականի համեմատությամբ մեծացել էր գրեթե 10 անգամ։ Խորհրդի գոյության ժամանակամիջոցում նրա մեջ մտնող երկրների բաժինը արդյունաբերական արտադրանքի կարևորագույն տեսակների համաշխարհային արտադրության մեջ բարձրացել է (տոկոսներով). էլեկտրաէներգիայինը՝ 13,7-ից մինչև 21,6, ածխինը՝ 22,9-ից մինչև 30,9, պողպատինը՝ 18,7-ից մինչև 29, ցեմենտինը՝ 13,8-ից մինչև 27։ Շարունակ աճում է նրանց փոխադարձ ապրանքաշրջանառությունը։ 1976—1980 թթ. այն կավելանա առնվազն 1,5 անգամ և արժեքային արտահայտությամբ կկազմի մոտավորապես 300 մլրդ ռուբլի։ ՏՓԽ-ի բոլոր երկրներում տիրապետում են սոցիալիստական արտադրահարաբերությունները, որոնք հիմնված են արտադրության միջոցների հանրային սեփականության վրա։ Վերացված են շահագործող դասակարգերը, վաղուց վերջ է տրված գործազրկությանը, տնտեսական ճգնաժամերին ու կապիտալիզմի մյուս խոցերին։

ՏՓԽ-ի երկրների սոցիալ-տնտեսական առաջընթացի անբաժանելի տարրն է էկոնոմիկայի զարգացման մակարդակների աստիճանական հավասարեցումը։ Եթե ՏՓԽ-ի հիմնադրման պահին բնակչության մեկ շնչի հաշվով ազգային եկամտի ամենաբարձր և ամենացածր մակարդակների միջև հարաբերակցությունը խորհրդի անդամ եվրոպական երկրներում եղել է 3 : 1, ապա այժմ այն կազմում է 1,5 : 1։

Համակողմանի համագործակցության հարուստ և արժեքավոր փորձ են կուտակել ՏՓԽ-ի երկրները՝ այդ կազմակերպության 30-ամյա գործունեության ընթացքում։ Սոցիալիստական տնտեսական ինտեգրացման կոմպլեքսային ծրագրի հիման վրա նրանք ավելի ու ավելի լայնորեն ու խոր են զարգացնում արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը, ժողովրդատնտեսական կարևոր օբյեկտների համատեղ շինարարությունը, համատեղ պլանային գործունեությունը։

Սովորական համագործակցությունից կոմպլեքսային ու ծավալուն ինտեգրացման անցնելն է՛լ ավելի համախմբեց ու ամրապնդեց սոցիալիզմի երկրների եղբայրական բարեկամությունը, առավել մերձեցրեց նրանց ժողովուրդներին։ Ինչպես մեր կուսակցության XXV համագումարում շեշտեց ընկեր Լ. Ի. Բրեժնևը, «Խոսքը վերաբերում է ոչ միայն տնտեսական մեծ փոխադարձ շահավետությանը, այլև քաղաքական հսկայական նշանակություն ունեցող խնդրի։ Խոսքը վերաբերում է մեր համագործակցության նյութական հիմքի ամրապնդմանը»։ Այսպիսով, սոցիալիստական ինտեգրացումը ո՛չ միայն միջազգային տնտեսական հարաբերությունների նոր ձև է, այլև ընդհանրապես սոցիալիզմի երկրների փոխադարձ հարաբերությունների նոր հիմք։

Այդ զարգացման առավելություններն առանձնապես նկատելի են կապիտալիզմի երկրների երկպառակությունների ֆոնի վրա, երկրներ, որոնց համար բնորոշ են արդյունաբերական զարգացման ավելի դանդաղ տեմպերը, ինֆլյացիան, գների ու գործազրկության աճը։

Այն փաստը, որ այսօր աշխարհի զանազան երկրներ ավելի ու ավելի մեծ հետաքրքրություն են ցուցաբերում սոցիալիզմի երկրների համագործակցության ձևերի, մասնավորապես՝ ՏՓԽ-ի գործունեության նկատմամբ, համոզիչ վկայում է սոցիալիստական համագործակցության ու նրա հիմնական տնտեսական կազմակերպության՝ Տնտեսական փոխօգնության խորհրդի միջազգային հեղինակության ու կշռի աճի մասին։ Այսպես, օրինակ, 1973 թվականին համագործակցության վերաբերյալ համաձայնագիր ստորագրվեց Ֆինլանդիայի հետ։ Դա սոցիալիստական պետություններից տարբեր հասարակական



կարգ ունեցող երկրի հետ ՏՓԽ-ի՝ իրավականորեն ձևակերպված համագործակցության առաջին դեպքն էր։ 1975 թվականին ՏՓԽ-ն համանման համաձայնագրեր կնքեց Իրաքի և Մեքսիկայի հետ։ 1974 թվականին ՄԱԿ-ի Գլխավոր ասամբլեան ՏՓԽ-ին տվեց դիտորդի ստատուս, և այժմ այն կանոնավոր կապեր է պահպանում մոտավորապես 30 միջազգային կազմակերպությունների հետ, որոնց մասնակցում են սոցիալ-տնտեսական տարբեր սիստեմ ունեցող պետություններ։

ՏՓԽ-ն ստեղծվել է 1949 թվականին՝ Բուլղարիայի, Հունգարիայի, Լեհաստանի, Ռումինիայի, Սովետական Միության և Չեխոսլովակիայի տնտեսական խորհրդակցությունում։ Երեսուն տարվա ընթացքում այն դարձել է աշխարհի տնտեսական կարևորագույն կազմակերպություններից մեկը։

ՏՓԽ-ի բազմամյա գործունեությունը համոզիչ ապացուցել է արտադրության սոցիալիստական եղանակի առավելությունները ո՛չ միայն առանձին երկրների, այլև ամբողջ համաշխարհային սոցիալիստական տնտեսության մասշտաբներով։

ՏՓԽ-ի ստեղծումը հանդիսացավ արտադրության սոցիալիստական եղանակի ինտերնացիոնալացման, սոցիալիզմի երկրների քաղաքական-տնտեսական համախմբման օբյեկտիվ միտումի կոնկրետ դրսևորումը։ Դրա հետ մեկտեղ այն նաև մի պաշտպանական միջոցառում է սոցիալիստական երկրների նկատմամբ կապիտալիստական տերությունների կիրառած խտրական տնտեսական քաղաքականության դեմ։ Սկզբնական շրջանում խորհրդի գործունեությունը գլխավորապես ուղղված էր նրա անդամ երկրների առևտրական-տնտեսական կապերի ընդլայնմանն ու խորացմանը, գիտատեխնիկական համագործակցությունը զարգացնելու, փոխադարձ տեխնիկական և նյութական օգնություն ցույց տալու նպատակին։ Այնուհետև սոցիալիստական երկրների քաղաքական և տնտեսական պլանաչափ զարգացման գործում կատարված քանակական ու որակական տեղաշարժերին զուգընթաց, ՏՓԽ-ն սկսեց ավելի ու ավելի մեծ չափով ուշադրություն հատկացնել խորհրդի անդամ երկրների ժողովրդատնտեսական պլանների կոորդինացմանն աջակցելու գործին, նրանց միջև աշխատանքի սոցիալիստական բաժանմանն ու կազմակերպված ինտեգրացիայի անմիջական իրականացմանը։

Սոցիալիստական երկրների տնտեսական փոխգործողության նոր խնդիրներն ու դրանց համապատասխանող մեթոդներն ու ձևերը կոնկրետ արտահայտություն և իրավական ձևակերպում ստացան սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի զարգացման կոմպլեքսային ծրագրում, որն ընդունվեց 1971 թվականին՝ ՏՓԽ-ի XXV նստաշրջանի կողմից։ Այդ ծրագիրը որոշեց սոցիալիստական համագործակցության երկրների տնտեսական փոխգործողության զարգացման հիմնական ուղղությունները, ուղիները, մեթոդներն ու ձևերը հեռանկարային ժամանակաշրջանի համար։ Այդ ծրագիրը ՏՓԽ-ի անդամ երկրների էկոնոմիկաների համակողմանի մերձեցման բնագավառում ձեռնարկվող նպատակամետ միջոցառումների մի երկարաժամկետ սիստեմ է՝ հօգուտ այդ երկրներում սոցիալիզմի ու կոմունիզմի կառուցման ընդհանուր գործի։ Կոմպլեքսային ծրագրում շեշտվում է ՏՓԽ-ի առանձնահատուկ դերը դրա կենսագործման և ընդհանրապես սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի զարգացման գործում։

ՏՓԽ-ն կազմավորվել է որպես իրենց փոխհարաբերություններում պրոլետարական ինտերնացիոնալիզմի վեհ սկզբունքով ղեկավարվող սուվերեն և իրավահավասար պետությունների միջպետական տնտեսական միավորում։ Նրա մեջ մտնող պետությունները մեկ կենտրոնից կառավարվող ամբողջի բաղադրամասերը չեն։ Դա իրենց ռեսուրսների տեր հանդիսացող և դրանք սեփական հայեցողությամբ տնօրինող անկախ սոցիալիստական պետությունների ազգային տնտեսությունների պլանաչափ փոխգործողության դեմոկրատական ձև է։ Նրանց փոխադարձ կապերը պայմանավորված են աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանմամբ, եղբայրական համագործակցությամբ և փոխօգնությամբ։ ՏՓԽ-ի երկրները ինքնուրույն կերպով պլանավո-

րում ու զարգացնում են իրենց ժողովրդական տնտեսությունը։ Խորհրդի գործունեության հիմքում դրված են բոլոր կամ մի քանի երկրների համար հետաքրքրություն ներկայացնող ամենաբազմազան տնտեսական ու գիտատեխնիկական պրոբլեմների վերաբերյալ հանձնարարականների կոլեկտիվ մշակումն ու ընդունումը (շահագրգռված անդամ երկրների միաձայնության դեպքում)։ Այդպիսի հանձնարարականները կենսագործվում են շահագրգռված երկրների կողմից՝ իրենց օրենսդրությանը համապատասխան, այսինքն՝ լիովին պահպանելով նրանց սուվերեն իրավունքները։

ՏՓԽ-ի կանոնադրությունում 1962 թվականին կատարված ուղղումների շնորհիվ հնարավոր դարձավ, որ այդ կազմակերպության մեջ մտնի ցանկացած մայրցամաքի ամեն մի երկիր։ 1962 թվականին խորհրդի անդամ դարձավ Մոնղոլական Ժողովրդական Հանրապետությունը, 1972 թվականին՝ Կուբայի Հանրապետությունը, 1978 թվականին՝ Վիետնամի Սոցիալիստական Հանրապետությունը։ Այսպիսով, խորհուրդն այժմ իր կազմում ունի 10 երկիր, որոնք ընկած են երեք մայրցամաքներում՝ Եվրոպայում, Ասիայում և Ամերիկայում։

ՏՓԽ-ի նպատակները լրիվ համընկնում են սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի կոմպլեքսային ծրագրի խնդիրներին։ Այդ խնդիրներն են՝ խորհրդի մեջ մտնող երկրների ջանքերի միավորման ու կոորդինացման միջոցով ակտիվորեն աջակցել նրանց համագործակցության խորացմանն ու կատարելագործմանը, նրանց էկոնոմիկաների, գիտության ու տեխնիկայի առաջընթացին, բոլոր անդամ երկրների տնտեսական զարգացման մակարդակների աստիճանական մերձեցմանն ու հավասարեցմանը, նրանց բնակչության բարեկեցության անշեղ բարձրացմանը։ Լինելով սոցիալիստական երկրների միջպետական կազմակերպություն, ՏՓԽ-ն, բնականաբար, հիմնվում է նրանց միջպետական հարաբերություններին հատուկ սկզբունքների վրա։ Այդ սկզբունքները, ինչպես և նպատակները, հստակորեն արտահայտված ու վավերագրված են ՏՓԽ-ի կանոնադրության 1-ին հոդվածում, որտեղ ասված է, որ ՏՓԽ-ն «հիմնված է բոլոր անդամ երկրների սուվերեն հավասարության սկզբունքների վրա» և որ նրանց համագործակցությունը ՏՓԽ-ի շրջանակներում «իրականացվում է սոցիալիստական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին համապատասխան, պետական սուվերենությունը, անկախությունն ու ազգային շահերը հարգելու, երկրների ներքին գործերին չմիջամտելու, լիակատար իրավահավասարության, փոխադարձ շահավետության և ընկերական փոխօգնության հիման վրա»։

Այդ սկզբունքների կիրառման ռեալությունն ակնբախ կերպով հաստատվում է այն բանով, որ խորհրդի անդամ երկրներն այստեղ ունեն ներկայացուցչության միատեսակ մակարդակ՝ անկախ նրանց տնտեսական պոտենցիալից, բնակչության թվից, կազմակերպության բյուջեի համար մուծվող անդամավճարների չափերից։ Յուրաքանչյուր երկիր ՏՓԽ-ի մարմիններում ունի մեկ ձայն, ըստ որում սեփական հայեցողությամբ ինքն է որոշում այդ մարմինների գործունեության մեջ իր շահագրգռվածության շրջանակներն ու աստիճանը։ Լիակատար իրավահավասարության և կամավորության հիման վրա ՏՓԽ-ում գործող շահագրգռվածության սկզբունքը հնարավորություն է ընձեռում զուգակցել համագործակցության յուրաքանչյուր մասնակցի շահերը՝ առանց մյուսների շահերին վնաս հասցնելու։

Ներկայումս ՏՓԽ-ի աշխատանքներին որպես լիիրավ անդամներ մասնակցում են սոցիալիստական երկրները՝ Բուլղարիան, Հունգարիան, Վիետնամը, ԳԴՀ-ն, Կուբան, Մոնղոլիան, Լեհաստանը, Ռումինիան, Սովետական Միությունը և Չեխոսլովակիան։ 1964 թվականին ՏՓԽ-ի և Հարավսլավիայի միջև կնքվեց համաձայնագիր, ըստ որի Հարավսլավիան ՏՓԽ-ի անդամ երկրների հետ հավասար հիմունքներով մասնակցում է Հարավսլավիայի և ՏՓԽ-ի անդամ երկրների համար փոխադարձ հետաքրքրություն ներկայացնող հարցերով զբաղվող նրա մարմինների աշխատանքին։ Հարավսլավացի ներկայացուցիչները կարող են նաև ՏՓԽ-ի մարինների նիստերին ներկա գտնվել որպես դիտորդներ։ Նույն կերպ էլ ՏՓԽ-ի որոշ մարմինների նիստերին ներկա են լինում



այլ երկրների (Կորեական Ժողովրդադեմոկրատական Հանրապետության, Լաոսի Ժողովրդադեմոկրատական Հանրապետության, Անգոլայի Ժողովրդական Հանրապետության, Սոցիալիստական Եթովպիայի) ներկայացուցիչներ։

ՏՓԽ-ի անդամ երկրների բազմակողմանի միջոցառումների խոշոր մասշտաբայնությունը կոնկրետ արտացոլվել է բազմակողմանի ինտեգրացիոն միջոցառումների 1976—1980 թթ. համաձայնեցված պլանում, որն ընդունվել է ՏՓԽ-ի XXIX նստաշրջանում, 1975 թվականին։ Բավական է ասել, որ պլանի մեջ մտցված օբյեկտների ընդհանուր արժեքը կազմում է մոտավորապես 9 մլրդ, իսկ գիտատեխնիկական պրոբլեմների մշակման ու լուծման ծախսերը՝ մոտ 600 մլն փոխարկվող ռուբլի։

Այդ պլանին համապատասխան տարբեր երկրներում հաջողությամբ իրականացվում են համատեղ ինտեգրացիոն միջոցառումներ։ Շինարարների ինտերնացիոնալ մեծ կոլեկտիվի նշանակալի հաղթանակը եղավ Օրենբուրգ քաղաքից մինչև ՍՍՀՄ Արևմտյան սահմանը «Սոյուզ» գազամուղի կառուցման շինարարական-մոնտաժային աշխատանքների ավարտումը։ Հաջողությամբ ավարտվում են նաև եղբայրական երկրների մի այլ համատեղ կառույցի՝ Սովետական Միության Վինիցա քաղաքի և ՀԺՀ-ի Ալբերտիրշեի միջև բարձրավոլտ էլեկտրահաղորդման գծի անցկացման աշխատանքները։ 1978 թվականին գործարկվեցին սովետա-ռումինական համատեղ հիդրոէներգետիկ կոմպլեքսը Պրուտ գետի վրա և բարեկամության կամուրջը ՍՍՀՄ-ի և Բուլղարիայի միջև՝ Իլյիչևսկ—Վառնա ծովային լաստանավային անցարանը, որը բացեց ամենակարճ ճանապարհը՝ Սև ծովի վրայով երկու եղբայրական երկրների բեռնափոխադրումների համար։

Այդպիսի կառույցները շահավետ են դրանց բոլոր մասնակիցների համար։ Այսպես, «Սոյուզ» գազամուղով ամեն տարի ՍՍՀՄ-ից եղբայրական երկրներին է մատակարարվելու 15,5 մլրդ խմ բնական գազ, որը շատ ավելին է, քան արտադրվում է Բուլղարիայում, Հունգարիայում, ԳԴՀ-ում, Լեհաստանում, Չեխոսլովակիայում միասին վերցրած։

Ուստ-Իլիմսկը արդեն ճանաչում գտած սիբիրյան երիտասարդ քաղաք է, որտեղ իրականացվում է ինտերնացիոնալ կառույց. խորհրդի երկրների կոլեկտիվ ջանքերով կառուցվում է ցելյուլոզի գործարան։ Եղբայրական երկրները մասնակցում են ցելյուլոզի արդյունաբերության հսկայի կառուցմանը։ Սովետական շինարարների հետ մեկտեղ այստեղ ոգևորությամբ աշխատում են երիտասարդ մասնագետներ Բուլղարիայից, Հունգարիայից։ Ինտերնացիոնալ կառույցը Սիբիրում դարձել է վարպետության դպրոց, սոցիալիզմի երկրների երիտասարդության ինտերնացիոնալ համերաշխության և բարեկամության խորհրդանիշ։

Խորանում և ընդլայնվում է ՏՓԽ-ի երկրների գիտատեխնիկական համագործակցությունը։ Համատեղ ջանքերով նրանք ստեղծել են ավելի քան 1.500 նոր կոնստրուկցիաներ, մեքենաներ, մեխանիզմներ ու սարքեր, նյութերի, արտադրանքների, պրեպարատների ավելի քան 1.300 նոր տեսակներ։ Ընդլայնվում է այդ երկրների բազմակողմանի համագործակցությունը տիեզերական տարածության հետազոտման և օգտագործման բնագավառում։

Ներկայումս ՏՓԽ-ի անդամ երկրների առաջնահերթ խնդիրն է համագործակցության տևական նպատակային ծրագրերի ակտիվ կենսագործումը նյութական արտադրության կարևորագույն բնագավառներում։ Այդ ծրագրերը, լինելով կոմպլեքսային ծրագրի կոնկրետացումն ու հետագա զարգացումը, արտացոլում են սոցիալիզմի երկրների ստրատեգիան տնտեսական ինտեգրացիայի հրատապ հարցերի լուծման գործում։ Նպատակային ծրագրերը կոչված են խորհրդի անդամ երկրների տնտեսական փոխգործողությունը հասցնելու ավելի լայն բնագծերի, ավելի ամուր ու տևական պլանային հիմք ստեղծելու դրա համար։

1978 թվականի հունիսին Բուխարեստում կայացած ՏՓԽ-ի XXXII նստաշրջանում հավանություն ստացան էներգիայի, վառելիքի ու հումքի, գյուղատնտեսության, սննդի արդյունաբերության և մեքենաշինության բնագավառում

ՏՓԽ-ի անդամ երկրների աճող պահանջմունքների ապահովման նպատակով համագործակցության երկարաժամկետ նպատակային ծրագրերը։ Նստաշրջանը նշեց, որ այդ ծրագրերը, համապատասխանելով ՏՓԽ-ի երկրների շահերին, միաժամանակ լրիվ համապատասխանում են բոլոր երկրների հետ (անկախ սոցիալական կարգից) փոխադարձ շահավետության և իրավահավասարության սկզբունքներով համագործակցությունը զարգացնելու նրանց անփոփոխ կուրսին, այդ թվում և էներգետիկայի, արդյունաբերության, տրանսպորտի, շրջակա միջավայրի պահպանության ու այլ բնագավառներում միջազգային լայն հիմքի վրա խոշոր նախագծերի իրականացման գործում։ ՏՓԽ-ի՝ այս տարի կայանալիք նստաշրջանում ընդունվելու են երկարաժամկետ նպատակային ծրագրեր՝ ժողովրդական սպառման արդյունաբերական ապրանքների նկատմամբ խորհրդի անդամ երկրների պահանջմունքների բավարարման և նրանց տրանսպորտային կապերի զարգացման բնագավառում համագործակցելու վերաբերյալ։ Երկարաժամկետ նպատակային ծրագրերը պրակտիկ գործողության մեջ արտացոլում են սոցիալիստական համագործակցության զարգացման որակապես նոր պրոցես, որն արտահայտվում է սոցիալիզմի երկրների աստիճանական ու համակողմանի մերձեցման մեջ։

ՏՓԽ-ի երկրների տնտեսական համագործակցության հաջողությունը, նրանց էկոնոմիկայի արդյունավետության բարձրացումը զգալի չափով պայմանավորված են արտադրության ամենաբազմապիսի ճյուղերում միջպետական մասնագիտացման ու կոոպերացման ըստ ամենայնի զարգացմամբ։ Լայն մասնագիտացում և կոոպերացում, գիտատեխնիկական հեղափոխության նորագույն նվաճումների լավագույն օգտագործում— ահա սոցիալիզմի երկրների տնտեսական ու տեխնիկական առաջընթացի գլխավոր աղբյուրն արդի փուլում։ Բնականաբար, ՏՓԽ-ի երկրներն իրենց համատեղ տնտեսական գործունեության մեջ առանձնահատուկ նշանակություն են տալիս այդ ուղղություններին։ Ներկայումս նրանք կոոպերատիվ հիմունքներով և կոլեկտիվ ջանքերով կառուցում են վառելիքաէներգետիկական, մետալուրգիական և արդյունաբերության այլ ճյուղերի մոտ 30 կարևոր օբյեկտ։ Միայն մեքենաշինության բնագավառում նրանք կնքել են մոտավորապես 60 բազմակողմ համաձայնագրեր արտադրության մասնագիտացման ու կոոպերացման վերաբերյալ, որոնք ընդգրկում են ավելի քան 6 հազար անուն արտադրատեսակ։ ՏՓԽ-ի երկրները երկկողմ հիմքի վրա հարյուրավոր համաձայնագրեր են կնքել մասնագիտացման ու կոոպերացման և գիտատեխնիկական հետազոտությունների մասին։ Այդ երկրների միջև մասնագիտացում իրականացնելու շնորհիվ այժմ Լեհաստանում է կենտրոնացվում հաստոցային էլեկտրամագնիսական կցորդիչների արտադրությունը խորհրդի անդամ բոլոր երկրների համար։ Տոլյատիի ավտոգործարանը ՍՍՀՄ-ում կոոպերացման կարգով տասնյակ անուն դետալներ ու հանգույցներ է ստանում ՏՓԽ-ի երկրների և Հարավսլավիայի ձեռնարկություններից, դրանց արժեքը հատուցելով պատրաստի մեքենաներով։ Բուլղարական Շումեն քաղաքի գործարանը Սովետական Միության Գորկի քաղաքի ավտոգործարանի առաքած դետալների կոմպլեկտներից հավաքում է ԳԱԶ—53Ա բեռնատար ավտոմոբիլներ։ Իր հերթին բուլղարական գործարանը պահեստամասեր է մատակարարում մեր ԳԱԶ—51 ավտոմոբիլի համար։ Միաժամանակ Գորկու գործարանը կոոպերացված է չեխոսլովակյան «Շկոդա» ձեռնարկության հետ։

ՏՓԽ-ի երկրների միջև աշխատանքի արդյունավետ ու ռացիոնալ բաժանման համոզիչ օրինակ է «Իկարուս» ավտոբուսներ արտադրող հունգարական խոշորագույն ձեռնարկության զարգացումը։ Աշխարհի շատ երկրներ այդ ավտոբուսները գնում են մեծ սիրով, քանի որ դրանք աչքի են ընկնում հարմարավետությամբ, գեղեցկությամբ, արագությամբ և հուսալիությամբ։ Ժամանակին Հունգարիան ՏՓԽ-ի շրջանակներում ձեռք բերված պայմանավորվածության համաձայն հրաժարվեց մարդատար թեթև ավտոմոբիլների արտադրությունից և իր ջանքերը կենտրոնացրեց ավտոբուսների մասսայական թողարկման վրա՝ ապահովելով դրանց նկատմամբ մյուս եղբայրական



երկրների պահանջմունքները։ Օրինակ, ՍՍՀՄ-ը ստանում է յուրաքանչյուր երկրորդ «Իկարուս» ավտոբուսը։ Այդ առաքումների արժեքը տարեկան կազմում է ավելի քան 200 մլն ռուբլի։

Սովետական Միությունը ՏՓԽ-ի երկրների հետ արտադրության մասնագիտացումն ու կոոպերացումը զարգացնում է ինչպես բազմակողմ, այնպես և երկկողմ հիմքի վրա։ Մինչև 1977 թվականը ՍՍՀՄ-ը սոցիալիստական համագործակցության մյուս երկրների հետ ուներ մոտ 70 բազմակողմ և ավելի քան 100 երկկողմ համաձայնագրեր, որոնց հիման վրա ՍՍՀՄ-ը զարգացնում է համագործակցությունը մասնագիտացման ու կոոպերացման նպատակով, ընդգրկելով արտադրատեսակների ընդարձակ անվանացուցակ նավերի սարքավորումների, մետաղահատ հաստոցների, ավտոմատ գծերի, մանածագործական հաստոցների, գյուղատնտեսական մեքենաների, սարքավորումների և այլ բնագավառներում։

ՏՓԽ-ի երկրներն ակտիվորեն համագործակցում են էկոնոմիկայի այնպիսի կարևորագույն ճյուղում, ինչպիսին է գյուղատնտեսությունը։ Չնայած վերջին երկու տարում ՏՓԽ-ի մի շարք երկրների եղանակային անբարենպաստ պայմաններին, գյուղատնտեսության համախառն արտադրանքի արտադրությունը 1975 թվականի դիմաց ավելացել է 8 տոկոսով։ Խորհրդի անդամ երկրները տարեցտարի ամրապնդում ու զարգացնում են գյուղատնտեսության մեքենայացումը, նրան մատակարարելով ավելի հզոր ու ժամանակակից տեխնիկա, հատկապես տրակտորներ ու կոմբայններ։ Միայն 1977 թվականին ՏՓԽ-ի երկրների գյուղատնտեսությունն ստացել է ավելի քան 450 հազար տրակտոր և ավելի քան հարյուր հազար հացահատիկահավաք կոմբայն։ Այժմ այդ երկրներում գործնականորեն լուծվել է հացահատիկային կուլտուրաների մեքենայացված մշակման խնդիրը, զգալիորեն բարձրացել է կարտոֆիլի, շաքարի ճակնդեղի, բամբակի և այլ կուլտուրաների բերքահավաքի մեքենայացման մակարդակը։

Ընդլայնելով գյուղատնտեսական արտադրության մեքենայացումը, ՏՓԽ-ի երկրները, բնականաբար, ձգտում են ավելի ինտենսիվորեն զարգացնել համագործակցությունը գյուղատնտեսական աշխատանքների համար նախատեսված մեքենաների ու սարքավորումների արտադրության ու շահագործման բնագավառում։ Այստեղ կարևոր տեղ է հատկացվում միջպետական մասնագիտացմանն ու կոոպերացմանը։

Խորհրդի անդամ երկրները ոչ պակաս օգուտներ են ստանում սերմացուի և գյուղատնտեսական կուլտուրաների տնկանյութի արտադրության բազմակողմանի մասնագիտացման իրականացումից։ Նրանց կոլեկտիվ ջանքերը լավ արդյունք են տալիս սելեկցիայի և առավել բերքատու սորտերն ու հիբրիդները գյուղատնտեսական արտադրության մեջ արմատավորելու, լավագույն սորտերի սերմացուի փոխանակման բնագավառում։ Այդ երկրները հաջողությամբ համագործակցում են մսի, կաթի արտադրության, ցեղային անասունների աճեցման, կերի պատրաստման մասնագիտացված ժամանակակից ձեռնարկությունների ստեղծման գործում։ ՏՓԽ-ի երկրների համագործակցությունը գյուղատնտեսության բնագավառում դառնում է ավելի ու ավելի կոմպլեքսային և ընդգրկում է գյուղատնտեսական արտադրության բոլոր ճյուղերը, խթանելով գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվությունն ու անասնապահության մթերատվությունը և դրանով նպաստելով այդ երկրների բնակչության համար սննդամթերքների և արդյունաբերության համար հումքի արտադրության ավելացմանը։

Արդեն ՏՓԽ-ի ստեղծման շրջանում՝ 1949 թվականին, որոշված էր նրա բաց բնույթը։ Այդ բանը հստակորեն վավերագրված էր խորհրդի կանոնադրության մեջ և հաստատվել է նրա բազմամյա պրակտիկայով։

Խորհրդի երկրներն արդյունավետ համագործակցում են Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի զարգացող ավելի քան 80 պետությունների հետ, ընդհանուր առմամբ նրանց աջակցություն ցույց տալով ավելի քան 3.500 զանազան օբյեկտների շինարարության գործում։ Երիտասարդ պետություննե-

րին նրանք տրամադրել են ավելի քան 15 մլրդ ռուբլու վարկեր։ Մեծ նշանակություն է ստանում համագործակցության բազմակողմ ձևը։ Դրա արտահայտությունն են Իրաքի ու Մեքսիկայի հետ ՏՓԽ-ի կնքած համաձայնագրերը, որոնց շրջանակներում գործում են համագործակցության բազմակողմ համատեղ (խառը) հանձնաժողովներ (ՏՓԽ—Իրաք, ՏՓԽ—Մեքսիկա), ինչպես նաև այն, որ Հնդկական ազգային նավատիրական կազմակերպությունը 1974 թվականին մտավ նավատերերի միջազգային ասոցիացիայի մեջ, որը 1970 թվականին ստեղծել էին ՏՓԽ-ի անդամ շահագրգռված երկրների ու Հարավսլավիայի նավագնացության ձեռնարկությունները։ Դա առաջին դեպքն էր, երբ զարգացող երկիրը որպես լիիրավ անդամ մտնում էր սոցիալիստական երկրների միջազգային կազմակերպության մեջ։ ՏՓԽ-ի երկրների կողմից ստեղծված միջազգային ինվեստիցիոն բանկում 1973 թվականին ստեղծվեց հատուկ վարկային ֆոնդ 1 մլրդ ռուբլի գումարով՝ զարգացող պետություններին տնտեսական ու տեխնիկական օգնություն ցույց տալու նպատակին ուղղված միջոցառումները վարկավորելու համար։ Խորհրդի նստաշրջանի որոշմամբ ստեղծված ՏՓԽ-ի կրթաթոշակային ֆոնդն օգնում է այդ երկրներին՝ խորհրդի անդամ երկրների ուսումնական հաստատություններում ազգային կադրեր պատրաստելու գործում։

Ելնելով Եվրոպայի անվտանգության և համագործակցության խորհրդակցության Եզրափակիչ ակտի դրույթներից և ձգտելով ընդլայնել ու ակտիվացնել բազմակողմանի գործարար համագործակցությունը միջազգային լայն հիմքի վրա, ՏՓԽ-ն ու նրա մեջ մտնող երկրները հանդես են գալիս զանազան միջազգային կազմակերպությունների հետ ակտիվ կապեր հաստատելու օգտին։ Մասնավորապես, ՏՓԽ-ն նախաձեռնություն հանդես բերեց «ընդհանուր շուկայի» ու նրա մեջ մտնող երկրների հետ կնքել պաշտոնական համաձայնագիր՝ ստեղծելու անհրաժեշտ նախադրյալներ դրանց մեջ մտնող երկրների միջև իրավահավասար ու փոխշահավետ առևտրատնտեսական հարաբերությունների հետագա զարգացման համար։

Ներկայումս ՏՓԽ-ի քարտուղարության ներկայացուցիչները գործարար կոնտակտներ ու հանդիպումներ են ունենում «ընդհանուր շուկայի» ներկայացուցիչների և հանձնաժողովի փորձագետների հետ։ Դրանք գործնական քայլեր են երկու կազմակերպությունների միջև փոխադարձաբար ընդունելի համաձայնություն նախապատրաստելու և համաձայնեցնելու ուղղությամբ։ ՏՓԽ-ի ու նրա մեջ մտնող երկրների ակտիվ ձգտումը՝ նորմալացնել հարաբերությունները արևմտաեվրոպական տնտեսական խմբավորման՝ «ընդհանուր շուկայի» հետ, ամուր իրավական հիմք ստեղծել այդ հարաբերությունների համար, սոցիալիստական համագործակցության երկրների քաղաքականության ու պրակտիկայի օրգանական բաղկացուցիչ մասն է, որոնք ուղղված են լարվածության թուլացումը նյութականացնելու, այն կոնկրետ գործերով հագեցնելու, բոլոր երկրների միջև գործարար համագործակցությունը զարգացնելու նպատակին։

ՏՓԽ-ի գործունեության 30-ամյա փորձը ցույց է տվել, որ խորհրդի նպատակներն ու սկզբունքները լիովին համապատասխանում են կազմակերպության բոլոր անդամ երկրների շահերին, նպաստում բոլոր ժողովուրդների հետ միջազգային լայն համագործակցության ու բարեկամության զարգացմանը։ ՏՓԽ-ի գործունեության, սոցիալիստական ինտեգրացիայի պատմական նշանակությունը նրանում է, որ այն, աշխատանքի միջազգային սոցիալիստական բաժանման ուղեծրի մեջ ներգրավելով անցյալում տնտեսապես հետամնաց երկրներին, էականորեն արագացնում է նրանց առաջընթացը, խթանում առանձին երկրների զարգացման մակարդակների հավասարեցման՝ սոցիալիզմի համար օրինաչափ պրոցեսի իրականացումը, որն իր հերթին նպաստում է սոցիալիստական համագործակցության հասարակական կյանքի հետագա ինտերնացիոնալացմանը և նրա մեջ մտնող բոլոր երկրների աստիճանական անցմանը կոմունիզմի։

---



# ԼԵՆԻՆԸ ՄԵՐ ԿՅԱՆՔՈՒՄ

**Ա. Ս. ՍԻՄՈՆՅԱՆ**

ՎԼԱԴԻՄԻՐ ԻԼՅԻՉ ԼԵՆԻՆԻ կյանքն ու գործունեությունը, նրա տեսական հարուստ ժառանգությունն անջնջելի հետք են թողել մեր դարի նկարագրի վրա, դարձել սոցիալական առաջընթացի գաղափարական դրոշը։ Լենինիզմը՝ քսաներորդ դարի մարքսիզմը, արդիականության ամենահզոր ուսմունքն է, որի ներգործությունը ժամանակակից աշխարհի վրա դժվար է գերագնահատել։ Այն աշխատավոր զանգվածների սոցիալական ու ազգային-ազատագրական պայքարի վառ փարոսն է, որի սփռած լույսը ցույց է տալիս մարդկության զարգացման հեռանկարը, կոմունիստական ապագան։ «Սովետական ժողովրդի այսօրվա մեծագործությունները,— ասում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— Հոկտեմբերի գործի ուղղակի շարունակությունն են։ Դրանք մեծ Լենինի գաղափարների գործնական մարմնավորումն են» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութեր, էջ 6)։

Պատմության մեջ եղակի են Վլադիմիր Իլյիչի նման գործիչները, որոնց կյանքը, հասարակական գործունեությունն արժանացել են միլիոնների համընդհանուր ճանաչմանը։

Լենինն իր ողջ կյանքը նվիրաբերեց պրոլետարիատին, աշխատավորական զանգվածներին, աշխարհի հեղափոխական նորացմանը ծառայելու վեհ գործին։ Այո՛, Լենինի կյանքը սխրանք է, որն անցել է մտքի, ստեղծագործական աշխատանքի և անդուլ հեղափոխական գործունեության մեջ, գաղափարական ու քաղաքական ճակատամարտերում։ Լենինն իր մեջ մարմնավորել է պրոլետարական հեղափոխականի ամենաակնառու գծերը՝ հզոր միտք, ամեն ինչ հաղթահարող կամք, բուռն ատելություն ստրկության ու կեղեքման նկատմամբ, հեղափոխական կրքոտություն, հետևողական ինտերնացիոնալիզմ, անսահման հավատ մասսաների ստեղծագործական ուժերի նկատմամբ, կազմակերպչական վիթխարի հանճար։ Լենինի կյանքն ու գործունեությունը միաձուլվել են բանվոր դասակարգի և կոմունիստական կուսակցության պայքարին։ Նա արտահայտել է բանվոր դասակարգի, աշխատավոր ժողովրդի իղձերն ու հույսերը, պատասխանել այն արմատական հարցերին, որոնք հրամայաբար առաջադրում էր կյանքը։

Լենինը մեր դարի ամենահեղինակավոր մտածողն է. նրա անձնական օրինակը, բարոյական կերպարը կատարելություն է, հասարակական վսեմ իդեալների մարմնացում։ Մեր իրականության ու գալիքի գեղեցիկ ներդաշնակությունն է նա, մարդկային լավագույն սխրանքների ոգեշնչողն ու ձգտումների իրականացնողը, անձնականը հասարակական վեհ մղումներով հարստացնողը, ապագայի հանդեպ լավատեսություն ներշնչող ուժը, խոսքի ու գործի միասնության բացառիկ արտահայտիչը։

Լենինը հավերժ կենդանի է մեր գործերում, հերոսապատումներով հարուստ

մեր առօրյայում։ Նա վաղուց դարձել է հավերժություն, մարմնավորվել իրականացված իր սոցիալական ծրագրերում, բարոյական ու գեղագիտական նորմերում, հարստացրել արդարության ու հավասարության համար պայքարող ուժերի գաղափարական զինանոցը։ Յուրաքանչյուր սովետական մարդ, ազատության համար պայքարող յուրաքանչյուր մարտիկ Լենինի կերպարը պահում է իր սրտում, ձգտում ընթանալ նրա ճանապարհով։ Այս ազնիվ գիտակցումը մեզ անվերապահորեն իրավունք է ընձեռում ասելու, որ Լենինը մեզ հետ է։ Մեր առաջնորդը նման համընդհանուր ճանաչման արժանացել է իր ողջ էությամբ, մարդկանց երջանկացնելու համար ծավալած տիտանական գործունեության շնորհիվ։ Լինելով գաղափարի մարդ՝ նա երբեք չի դավաճանել ռեալության իր զգացումին, զգաստ հետևել է կյանքի մեծ ու փոքր, էական և աննշմարելի տեղաշարժերին, նկատելով, հար խրախուսելով ծնվող նորը։

Լենինի կյանքն ու գործը, ստեղծագործական ժառանգությունը համահընչուն են մեր օրերին, օգնում են մեզ տանը, աշխատանքում, հասարակական երևույթները գնահատելիս, սեփական արարքները վերլուծելիս։ Մեր հոգևոր դաստիարակն այնքան մտերիմ է ու անմիջական, որ մտովի հայտնվում է մեզ, թափանցում մեր ներաշխարհը։ Լենինի սոցիալական օպտիմիզմը հիմնված է գիտության, ժամանակի սոցիալ-քաղաքական տեղաշարժերի ճշգրիտ հաշվառման վրա։ Հասարակական երևույթների հանդեպ նա երբեք չի դրսևորել կանխակալ մոտեցում, չի կառչել տառից, խախուտ դրույթից, իր դարն ապրած բանաձևերից։

Լենինի տարերքը հեղափոխությունն էր կյանքի բոլոր բնագավառներում։ Նա երբեք չի վհատվել, նրան խորթ են եղել հոռետեսությունը, հիվանդագին ինքնամտրակումը, մտքի ծուլությունը։ Մտքի այդ տիտանը լավ գիտեր ժամանակաշրջանը, մարդկանց հուզող պրոբլեմները։ Խորաթափանց, ամենատես մտածողը գիտական հետազոտությունների նյութը հիմնականում քաղում էր ռեալ իրականությունից, կենդանի կյանքից։ Դրվատելով Կ. Կաուցկուն, որն անգիր գիտեր Մարքսի մի շարք աշխատություններ, Իլյիչը միաժամանակ քննադատում էր նրան ռեալ կյանքի թերիմացության համար։ Հեղափոխական մտածողը կաբինետային գիտնականից առաջին հերթին տարբերվում էր նրանով, որ նրա համար գիտական եզրակացությունն ուներ շեշտված գործնական նշանակություն։ Կարդալով Լենինին, մենք ո՛չ միայն աշխատում ենք մտապահել թղթին հանձնած նրա խոհերը, մտքերը, դատողությունները, այլև ստեղծագործաբար յուրացնել, աշխատել ու խիզախել լենինաբար։ Լենինն ամենատարածված հեղինակն է. գիր ունեցող բոլոր ժողովուրդները թարգմանել են Իլյիչի գործերից։ Այս փաստը պերճախոս վկայում է, որ բազմալեզու ազգերն ուսումնասիրում են Լենինին՝ հանուն որոշակի նպատակների իրականացման, նոր կյանքի կերտման։

Վ. Ի. Լենինը՝ Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի ամենահաղթ ուսմունքի հանճարեղ շարունակողը, ապրեց երջանիկ դարաշրջան, որպիսին չվիճակվեց իր մեծ ուսուցիչներին։ Լենինը հեղափոխական ուսմունքը կիրառեց կյանքում, այն հարստացրեց նոր դրույթներով, գործնականում հաստատեց, որ մարքսիզմը դոգմա չէ, այլ գործողության ուղեցույց։ Նա շատ էր սիրում կրկնել Չերնիշևսկու թևավոր խոսքը՝ պատմությունը Նևսկի պողոտան չէ։ Իրոք, հասարակական կյանքը դիալեկտիկական մակընթացությունների և տեղատվությունների բարդ ու հակասական պրոցես է, որի դրսևորումները տարբեր դարաշրջաններում երևան են գալիս յուրովի, հարուցում նոր պրոբլեմներ, խնդիրներ։

Նոր աշխարհի կառուցման դժվարագույն գործում Լենինը դրսևորեց կոմունիստի էությանն ու կոչմանը բնորոշ բարոյական բոլոր վեհ հատկանիշները։ Նա քաջ գիտեր, որ հին աշխարհի հեղաշրջումը չի ավարտվում իշխանության գրավմամբ։ Այն տևական ու բարդ խնդիր է։ Երեկվա նվաստացած ու ընչազուրկ մուժիկին անհնար էր միանգամից վերափոխել, դաստիարակել կոմունիստական ապրելակերպի ոգով։ Հին կյանքի չհաղթահարված ավանդներն ու սովորույթները կենսունակ էին և հարմարվում էին նոր պայմաններին։

Նոր կյանքի կառուցումն իր նախադեպը չուներ պատմության մեջ։ Այն իրականություն էր և փորձ, տեսություն և պրակտիկա։ Սոցիալիստական գո-



յաձևն ստեղծեց մարդկային հարաբերությունների նոր չափանիշներ, որոնք հեշտությամբ չէին արմատավորվում կյանքում։ Հայտնի է, որ այդ տարիներին արևմտյան մի շարք բուրժուական մտավորականներ ու քաղաքագետներ՝ Հերբերտ Ուելսը, Բերտրան Ռասելը, հետագայում՝ Ուինստոն Չերչիլը, կրկնելով անցյալի դասական փիլիսոփայության ավանդույթ դարձած՝ մարդու բնության անփոփոխության մասին դրույթը, անիրականանալի էքսպերիմենտ էին համարում սոցիալիստական հասարակարգի կառուցումը։ Նման և այլ գուշակումներ հօդս ցնդեցին։ Միայն զարմանք են հարուցում բարբաջանքները ժամանակակից հակակոմունիստների, որոնք, մոռանալով իրենց նախորդների սին գուշակումները, կրկին հրապարակ են հանում վաղուց մերժված ու մոռացված գաղափարները։ Իրոք, իր դարն ապրած հասարակարգն անկարող է դասեր քաղել պատմությունից, անցյալի փորձից։ Կապիտալիստական աշխարհի պարագլուխները տենդագին դիմում են ամեն միջոցի՝ լցնելու գաղափարական վակուումը։ Սակայն հինը նոր ձևով մատուցելու նրանց ճիգերն ապարդյուն են։

ՍՄԿԿ-ն վստահորեն երկիրը տանում է լենինյան ուղիով։ Այժմ հաջողությամբ իրականացվում է կուսակցության XXV համագումարի մշակած ծրագիրը— լուծել կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման խնդիրները, ապահովել երկրի տնտեսական ու պաշտպանական հզորության հետագա ամրապնդումը, կատարելագործել սոցիալիստական հասարակական հարաբերությունները, զարգացնել գիտությունն ու կուլտուրան, սովետական ապրելակերպը, բարենպաստ պայմաններ ստեղծել նոր մարդու ձևավորման համար։

Կուսակցության տնտեսական ստրատեգիան արդի պայմաններում սոցիալիստական տնտեսավարման լենինյան սկզբունքների մարմնացումն ու զարգացումն է։ Դրա գերագույն նպատակը ժողովրդի կյանքի նյութական և կուլտուրական մակարդակի անշեղ վերելքն է։ Այժմ մեր երկիրը գտնվում է հանրային արտադրության զարգացման այնպիսի փուլում, երբ նրա աճի և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման տեմպերի արագացման կարելի է հասնել միայն տնտեսական զարգացման ինտենսիվ գործոնների ավելի լայն օգտագործմամբ։ Այդ ենթադրում է արտադրության կառուցվածքի, պլանավորման և կառավարման սիստեմի, աշխատավորների կրթության կատարելագործում և որակավորման բարձրացում, ժողովրդատնտեսական կարևորագույն ծրագրերի կատարման համար ուժերի ու միջոցների համակենտրոնացում։ Լենինը սովորեցնում էր, որ կոմունիստական հասարակարգ կարելի է կառուցել միայն ամենաառաջավոր տնտեսական ու գիտատեխնիկական հիմքի վրա։

Նոր կյանքի արշալույսին լենինյան հանճարը մարգարեաբար կռահեց, որ հին աշխարհի դեմ մղվող պայքարում բախտորոշ նշանակություն ունի աշխատանքի արտադրողականության անշեղ աճը։ Մեր օրերում աշխատանքի արտադրողականության բարձրացման գլխավոր ուղին գիտատեխնիկական առաջընթացի արագացումն է, ժողովրդական տնտեսության մեջ գիտության նվաճումների առավել լրիվ օգտագործումը։ Այժմ առանց գիտության անհնար է առաջ գնալ հասարակական կյանքի որևէ բնագավառում։ Կուսակցությունն ամեն կերպ նպաստում է սովետական գիտության առաջընթացին, գիտնականների ջանքերն ուղղում հիմնարար ու կիրառական գիտությունների հետագա զարգացմանն ու արտադրության մեջ դրանց արդյունքների արագ ներդրմանը։

Հաջողությամբ է իրականացվում տասներորդ հնգամյակի սոցիալական ծրագիրը։ ՀամԼԿԵՄ XVIII համագումարում արտասանած ճառում ընկեր Լ. Ի. Բրեժնևը մասնավորապես նկատեց. «Մենք մերժում ենք ինչպես աղքատության և ճգնավորության քարոզը, այնպես էլ սպառման պաշտամունքը, քաղքենու հոգեբանությունը, որի համար կոպեկը, Գորկու դիպուկ արտահայտությամբ, արև է նրա երկնքում։ Նյութական բարիքները մեզ համար ինքնանպատակ չեն, այլ անհատի համակողմանի զարգացման նախադրյալ։ Ուստի կարևոր է, որ բարեկեցության բարձրացումը ուղեկցվի մարդկանց ներաշխարհի հարստացմամբ, կյանքի նպատակի և իմաստի ճիշտ ըմբռնման ձևավորմամբ»։

Լենինը նշում էր, որ սոցիալիզմի հաջողությունն անհնար է առանց պրոլետարական, գիտակցական կարգապահության հաստատման։ Լենինյան դրույթը հրատապ է և այսօր։ Կարգապահությունը պետականության, կազմակերպ-

վածության, հասարակական գիտակցության բարձրացման անկյունաքարն է, սոցիալական օրգանիզմի նորմալ կենսագործունեության նախապայմանը։

Սոցիալիզմը մարդկայնացրեց սոցիալական պարագաները, անձնավորության ներաշխարհը հարստացրեց կոլեկտիվիստական հույզերով, ձերբազերծեց ինքնօտարման երևույթները։ Սոցիալիստական իրականության պայմաններում մարդը դրսևորում է իր ուժն ու կարողությունը, գործունակությունը, որը կապիտալիզմի օրոք խլված էր նրանից, հակադրված նրա կենսապրոցեսին, գոյությանը։ Այդ էական ուժերն այստեղ հանդես են գալիս ոչ թե նրա համար խորթ ու անհասկանալի ապրանքաշուկայական հարաբերություններով քողարկված իշխող իրային ուժերի ձևով, այլ որպես նրա ճակատագրի, նրա իսկական ազատության, պահանջմունքների բավարարման միջոց։ Սոցիալիզմի օրոք անձնավորության ինքնությունը պայմանավորված է սեփական գործունեության բովանդակությամբ, նրա հասարակական պահանջմունքների աստիճանով ու որակով, ինչպես և առկա հնարավորությունների օգտագործման չափով։

Հասուն սոցիալիստական հասարակարգը կոմունիստական ֆորմացիայի կազմավորման օրինաչափ փուլն է։ Այս էտապում սոցիալիզմը, զարգանալով արդեն սեփական հիմքի վրա, առավելապես լրիվ է ցուցահանում իր ստեղծագործական հնարավորությունները, խորապես հումանիստական էությունը։

Այժմ, երբ հետևողականորեն ընդլայնվում են հասարակական պրոցեսների վրա գաղափարական-գիտակցական ներգործության մասշտաբները, ավելի է մեծանում կոմունիստական կուսակցության դերը՝ որպես մեր հասարակության ղեկավար և ուղղություն տվող ուժի։ Կուսակցության քաղաքականությունը գիտականորեն հիմնավորված է, այն համակողմանիորեն հաշվի է առնում հասարակության զարգացման օրինաչափությունները, պահանջմունքներն ու հնարավորությունները, արտահայտում նրա բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի, բոլոր ազգերի և ազգությունների, բոլոր սերունդների շահերը։ Մեր կուսակցությանը հատուկ է տեսության ու պրակտիկայի օրգանական զուգակցումը, կյանքի խոր ծալքերի գիտական մեկնաբանումը։ Մարքս-լենինյան գիտության ստեղծագործական զարգացումը հնարավորություն է ընձեռում՝ արդյունավետ լուծելու ընթացիկ և հեռանկարային խնդիրները, առավել լիովին բացահայտելու և օգտագործելու հասուն սոցիալիզմի հնարավորություններն ու առավելությունները։ Կուսակցությունն աշխատավորներին ակտիվորեն մոբիլիզացնում է՝ վճռելու չլուծված պրոբլեմները։ Իր նկրտումները, ստեղծագործական պոտենցիալը կուսակցությունը նպատակաուղղում է ժողովրդի բարեկեցության բարձրացմանը։ Նա նվաճել է ժողովրդի անկեղծ վստահությունը։ Սակայն այդ վստահությունը, ինչպես շեշտել է ընկեր Բրեժնևը, պահանջկոտ վստահություն է։

Կուսակցության ողջ գործունեությունը տոգորված է աշխատանքի լենինյան, ստեղծագործական, գիտական ոճով, որն օրգանապես զուգակցում է բարձր գաղափարայնությունը, գործարարությունը և ձեռնհասությունը, բացառում որևէ սուբյեկտիվիզմ և ինքնագոհություն։ Իր էությամբ ՍՄԿԿ-ն եղել և մնում է բանվոր դասակարգի կուսակցությունը։ Սովետական մարդիկ իրավամբ հպարտանում են լենինյան կուսակցությամբ, անսահման հավատում, միահամուռ ու լիովին պաշտպանում նրա քաղաքականությունը։

Սովետական իշխանությունն աշխատավոր զանգվածների պետությունն է, ժողովրդի կամքի իսկական արտահայտություն։ Լենինը վստահ էր, որ միայն ժողովրդական մասսաների գործուն մասնակցությամբ հնարավոր է կառավարել երկիրը, բարձրացնել բնակչության քաղաքական ակտիվությունը։

Կոմունիստական շինարարության արդի փուլում հետևողականորեն ամրապնդվում ու կատարելագործվում է մեր համաժողովրդական պետությունը, զարգանում սոցիալիստական դեմոկրատիան, ավելի ու ավելի ակտիվ է դառնում սովետների, արհմիությունների, կոմերիտմիության և մյուս հասարակական կազմակերպությունների գործունեությունը։ Կյանքը հաստատում է, որ մեզ մոտ երկրի հասարակական կարևորագույն հարցերը քննարկվում և լուծվում են աշխատավորների ամենալայն և ամենաանմիջական մասնակցու-



թյամբ։ Հիմնական օրենքի նախագծի քննարկման ժամանակ իր խոսքն ասաց ավելի քան 140 միլիոն մարդ՝ երկրի չափահաս բնակչության ավելի քան չորս հինգերորդը։ Արվեց մոտավորապես 400 հազար առաջարկություն։ Այս և բազմաթիվ այլ փաստեր վկայում են, որ միայն սոցիալիստական հասարակարգում է հնարավոր պետական կառավարման հարցերի համաժողովրդական քննարկում։ Հաստատելով աշխատավոր մեծամասնության իշխանությունը՝ սոցիալիզմը դրանով իսկ դեմոկրատիայի համար ստեղծեց սկզբունքորեն այլ, անչափ ավելի կայուն ու կենսունակ սոցիալական բազա։ Սոցիալիզմի զարգացման, հասունության աստիճաններով և նրա վերընթաց շարժման, սոցիալիստական ապրելակերպի հաստատման հետ զուգընթաց անշեղ աճում են դեմոկրատիայի նշանակությունն ու դերը։

Իսկական դեմոկրատիզմը բոլոր քաղաքացիների սահմանադրական իրավունքների իրականացման համար առավելագույն երաշխիքների ստեղծումն է, քաղաքացիական բարձր գիտակցականությունը, յուրաքանչյուր մարդու կարգապահությունն ու պատասխանատվությունն իր արարքների, հասարակական շահերի պահպանման համար։

Երկրի պետական իշխանության բարձրագույն մարմնի՝ ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների ընտրական կամպանիան նշանավորվեց քաղաքական ու աշխատանքային ակտիվության նոր վերելքով։ Այն ցայտունորեն դրսևորեց սովետական մարդկանց սերտ համախմբվածությունը ՍՄԿԿ-ի, նրա լենինյան Կենտրոնական կոմիտեի շուրջը։ Կայացած ընտրություններն առաջինն էին ՍՍՀՄ նոր Սահմանադրության ընդունումից հետո։ Բազմաթիվ նախընտրական ժողովներում աշխատավորներն ազատորեն ու համակողմանիորեն քննարկում էին դեպուտատության թեկնածուների քաղաքական ու գործարար հատկությունները, պատվիրաններ տալիս նրանց, արտահայտում իրենց դիտողություններն ու առաջարկները, որոնք նպատակամղված էին պետական, տնտեսական ու հասարակական կազմակերպությունների աշխատանքի հետագա բարելավմանը։ Ընտրությունները մեկ անգամ ևս ցույց տվեցին աշխարհում առաջին զարգացած սոցիալիզմի հասարակության խոր դեմոկրատիզմը, կոմունիստական շինարարության բոլոր մարզերում նոր հաջողությունների հասնելու՝ աշխատավորների հաստատակամ վճռականությունը։

Սոցիալիստական դեմոկրատիայի բնորոշ առանձնահատկություններից է այն, որ ժողովուրդն իշխանության իրականացմանը մասնակցում է ո՛չ միայն պետական մարմինների, այլև մասսայական հասարակական կազմակերպությունների, ստեղծագործական միությունների, ինչպես նաև բնակչության հասարակական ինքնագործունեության մարմինների ճյուղավորված ցանցի միջոցով։ Դեմոկրատիան, թափանցելով ժողովրդական տնտեսության բոլոր օղակները, էական ներգործություն է ունենում սոցիալիստական էկոնոմիկայի վրա։

Ընկեր Լ. Ի. Բրեժնևը Լիխաչովի անվան ավտոգործարանի բանվորների հետ ունեցած հանդիպման ժամանակ նշեց, որ քիչ է լինել պարզապես աշխատասեր և կարգապահ, նրանից պահանջվում է նաև ակտիվ, բուռն հետաքրքրություն և հոգատարություն ընդհանուր գործի նկատմամբ, ձգտում, որ այդ գործն առավել լավ ընթանա թե՛ բրիգադում, թե՛ արտադրամասում, թե՛ ամբողջ ձեռնարկությունում։ Սովետական մարդկանց աշխատանքային ու քաղաքական հարաճուն ակտիվությունը մեր իրականության բնորոշ հատկանիշներից է։

«...Մասսաներում,— ասել է Լենինը,— կան շատ ու շատ կենդանի ուժեր, որոնք կարող են ցուցաբերել վիթխարի ընդունակություններ շատ ավելի մեծ չափով, քան կարելի է պատկերացնել» (**Երկեր**, հ. 28, էջ 246)։

Մեր հասարակության դեմոկրատիզմի բարձրագույն դրսևորումներից է սոցիալիստական մրցությունը, որը լայնորեն տարածվել է երկրի աշխատավորական կոլեկտիվներում։ Մրցության ընթացքում միաձուլվում է աշխատանքային ու քաղաքական ակտիվությունը, դրսևորվում սովետական մարդկանց բարձր քաղաքացիականությունը։ ՍՄԿԿ XXV համագումարն առանձնահատուկ կարևորեց աշխատանքի և տնտեսավարության, գիտական կարգապահության

և անձնական պատասխանատվության, կոլեկտիվիստական, ինտերնացիոնալիստական և հայրենասիրական վարքագծի, ինչպես նաև առաջավոր ավանդույթների և հասարակական լայն կարծիքի արմատավորումը սովետական հասարակության կյանքում։ Նոր կյանքի բարոյական նորմերը հասարակական գիտակցության մեջ լայնորեն ամրակայվում են նաև շնորհիվ այն բանի, որ ներդաշնակում են սոցիալիստական իրավագիտակցությանը, նոր Սահմանադրության բովանդակությանը։

Մենք չպետք է մոռանանք, որ մարդու բոլոր արարքները բովանդակում են բարոյական արժույթներ, սոցիալական ամեն մի երևույթ գնահատվում է նաև բարոյական չափանիշներով։ Բարդ ու հակասական մարդկային հարաբերություններում որքան էլ վճռորոշ լինեն տնտեսական-հասարակական կապերը, միևնույն է՝ դրանք դրսևորվում են անձնավորության, նրա վարքագծի միջոցով։ Բարոյական գնահատականը հասարակական կարծիքը ձևավորող նորմերից է։

Այժմ սոցիալիստական հասարակության կյանքում, անձնավորության գիտակցության ու վարքագծի մեջ մեծանում է բարոյական գործոնի դերը։ Կենսական, հրամայական պահանջ է՝ բարձրացնել մասսաների գիտակցության մակարդակը։ Կոմունիստական բարոյականության նորմերի ու սկզբունքների հաստատումն անհնար է առանց մշտական պայքար մղելու հակահասարակական դրսևորումների, հոգեկան աղքատության և դրա անխուսափելի ուղեկիցների՝ հարբեցողության, խուլիգանության, աշխատանքային կարգապահության խախտումների դեմ։ Լուրջ վտանգ են ներկայացնում նաև անբարոյականության ոչ միշտ նկատելի դրսևորումները՝ անտարբերությունը, խնամառությունը, ցինիզմը, հասարակությունից ավելին ստանալու հավակնությունները։

Պահպանողական, հետամնաց բարքերը հաճախ ի հայտ են գալիս նույնիսկ որոշ աշխատանքային կոլեկտիվներում, որտեղ բացակայում են հրապարակայնությունը, առողջ ու ներգործուն հասարակական կարծիքը, խախտվում են դեմոկրատական նորմերը։ Վերապրուկային հայացքների ու սովորույթների առկայության պատճառները տարբեր են և յուրովի են դրսևորվում անձնավորության արտադրական գործունեության, հասարակական վարքագծի կարգավորման ոլորտում։ Նման երևույթներն առավել ակներև են ժողովրդի նյութական բարեկեցության ընդհանուր աճի իրադրության պայմաններում, երբ հասարակության առանձին անդամների կուլտուրայի ցածր մակարդակի, անզուսպ պահանջմունքների հետևանքով հարաճուն նյութական հնարավորությունները կարծես ակտիվացնում են նրանց ընչաքաղցությունը, դառնում հարստություն կուտակելու մոլուցք։ Այս առնչությամբ ուսանելի ու սթափեցնող են ընկեր Լ. Ի. Բրեժնևի խոսքերը. «Մենք քիչ արդյունքների չենք հասել սովետական ժողովրդի նյութական բարեկեցության բարելավման գործում։ Մենք այսուհետ ևս հետևողականորեն կլուծենք այդ խնդիրը։ Սակայն անհրաժեշտ է, որ նյութական հնարավորությունների աճը մշտապես ուղեկցվի մարդկանց գաղափարական-բարոյական և կուլտուրական մակարդակի բարձրացումով։ Հակառակ դեպքում մենք կստանանք քաղքենիական, մանրբուրժուական հոգեբանության ռեցիդիվներ։ Սա չի կարելի աչքաթող անել» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 116)։

Լենինը խորապես համոզված էր, որ սոցիալական վերափոխումները վերակերտում են մարդու սոցիալ-հոգեբանական դիմագիծը, հարստացնում ներաշխարհը, խթանում նրա ստեղծագործական ուժերի և ունակությունների բացահայտմանը։ Զարգացման արդի փուլում գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության գործում տակավին առկա են բարդ խնդիրներ, որոնց լուծումը պահանջում է կոմպլեքսային մոտեցում։ Գաղափարադաստիարակչական ներգործման միջոցներով մենք պետք է յուրաքանչյուր անձնավորության, մասնավորապես երիտասարդի գիտակցության մեջ ամրակայենք այն ճշմարտությունը, որ աշխատանքը ամենաբարձր բարոյական արժույթն է, մարդու կատարելագործման ու ազնվացման կարևոր գրավականը։

Կուսակցությունը, նրա բոլոր կազմակերպություններն իրենց կարևորա-



գույն պարտքն են համարում սովետական մարդու գաղափարական կոփումը, բուրժուական գաղափարախոսության դեմ հարձակողական պայքարի ուժեղացումը։ Այդ դասակարգային պայքար է, երկու հակադիր աշխարհայացքների պայքար, որտեղ չեն կարող տեղ ունենալ չեզոքությունն ու կոմպրոմիսները։ «Այստեղ,— նշում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը,— հարկավոր է քաղաքական բարձր զգոնություն, ակտիվ, օպերատիվ և համոզիչ պրոպագանդիստական աշխատանք, հարկավոր է ժամանակին հակահարված հասցնել թշնամական գաղափարական դիվերսիաներին» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 111)։

Աշխատավորների կոմունիստական աշխարհայացքի ու բարոյական նորմերի ձևավորումը տեղի է ունենում միջազգային ասպարեզում մղվող գաղափարական անզիջում պայքարի պայմաններում։ Դաստիարակության հարցերում անհրաժեշտ է դասակարգային գծի հետևողական կիրառում, գաղափարական դիրքերի հստակություն ու պարզություն, առավել հեղափոխական զգոնություն, հետևողական պայքար ապոլիտիկության, մասնավոր սեփականատիրական վերապրուկների, քաղքենիական տրամադրությունների, ինչպես և սոցիալիզմի նվաճումների նկատմամբ նիհիլիստական վերաբերմունքի դրսևորումների, բուրժուական ու ռևիզիոնիստական հայացքների ներթափանցման դեմ։

ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն, ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը, ՀԱՄԿԽ-ն և ՀամԼԿԵՄ Կենտրոնական կոմիտեն քննարկեցին արտադրության արդյունավետության և աշխատանքի որակի բարձրացման, 1978 թվականի պլանի հաջող կատարման համար համամիութենական սոցիալիստական մրցության արդյունքները։ Երրորդ անգամ անընդմեջ Հայկական ՍՍՀ-ն հաղթող ճանաչվեց և արժանացավ համամիութենական փոխանցիկ կարմիր դրոշին։ Այդ բարձր պարգևն ստացել են նաև Երևան, Լենինական քաղաքները, Արարատի, Հրազդանի շրջանները, քսանմեկ արտադրական, շինարարական, տրանսպորտային ձեռնարկություն, պետական ու կոլեկտիվ տնտեսություն, որոնցից տասնմեկը միաժամանակ գրանցվել են ՍՍՀՄ ժողտնտնվաճումների ցուցահանդեսի համամիութենական պատվո տախտակին։

Ամուր ու անսասան է մեր բազմազգ հայրենիքը՝ ՍՄԿԿ-ի լենինյան ազգային քաղաքականության հաղթանակի մարմնացումը։ Հաստատվել է բոլոր ազգերի ու ազգությունների փաստական հավասարություն հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Լենինյան ազգային քաղաքականության սկզբունքների հետևողական իրականացումն ակտիվորեն նպաստում է բովանդակությամբ սոցիալիստական, ձևով ազգային կուլտուրայի ծաղկմանը։ Հավատարիմ լենինյան ավանդույթներին, կոմունիստական կուսակցությունն անշեղորեն վարում է երկրի բոլոր ազգերի ու ազգությունների համակողմանի զարգացման ու մերձեցման քաղաքականություն, ավելի ու ավելի ամրապնդում եղբայր ժողովուրդների մեծ ու անխախտ բարեկամությունը։

Ժամանակակից աշխարհի բուռն իրադարձությունների մեջ առավել ակներևությամբ է բացահայտվում լենինիզմի հեղափոխական վերափոխիչ վիթխարի ուժը, որը դարձել է մեր մոլորակի հասարակական առաջընթացի հզոր արագացուցիչը։ Հողագնդի վրա չկա այնպիսի մի երկիր կամ ժողովուրդ, որ չկրի լենինյան գաղափարների, ռեալ սոցիալիզմի տեսության ու պրակտիկայի բարերար ազդեցությունը։ Լենինիզմի ներգործությունը մարդկության, համաշխարհային հեղափոխական պրոցեսի վրա խոր է ու բազմակողմանի։ Ժողովուրդների ազատագրական պայքարում, սոցիալիզմի կառուցման գործում ամեն մի նոր քայլ ցուցահանում է լենինյան ուսմունքի աճող ազդեցությունը, հաստատում նրա անանցանելի նշանակությունը։

Լենինյան հանճարի ուժը դրսևորվեց համաշխարհային սոցիալիստական սիստեմի կազմավորման ու զարգացման ոլորտում։ Սոցիալիստական համագործակցության երկրների կոմունիստական ու բանվորական կուսակցություններն այժմ իրականացնում են եղբայրական ազգերի դաշնադրության լենինյան գաղափարները։ Նրանք կոորդինացնում և միավորում են իրենց ջանքերը էկոնոմիկայի կարևորագույն բնագավառներում, զարգացնում քաղաքական ու գաղափարական համագործակցությունը։ Սոցիալիստական ինտերնացիոնա-

լիզմի, իրավահավասարության և սուվերենության հարգման սկզբունքների վրա խարսխված այդ համակողմանի համագործակցությունը բազմապատկում է յուրաքանչյուր երկրի նյութական ու հոգևոր հնարավորությունները սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման ասպարեզում։

Իմպերիալիզմի ու ռեակցիայի դեմ պայքարի փորձված զենքերից է բանվոր դասակարգի, աշխատավորական զանգվածների ինտերնացիոնալիստական համերաշխությունը։ Կոմունիստներն իրենց պայքարում ելնում են հեղափոխության զարգացման, նոր հասարակարգի կառուցման ընդհանուր օրինաչափություններից։ Ինտերնացիոնալիզմը ենթադրում է ընդհանուր օրինաչափությունների խոր ըմբռնումը զուգակցել ստեղծագործական մոտեցման հետ, հաշվի առնելով տվյալ երկրի կոնկրետ պայմանները։ Ինչպես նշվեց կուսակցության XXV համագումարում, պրոլետարական ինտերնացիոնալիզմի հետագա ամրապնդման համար պայքարը կոմունիստական շարժման առաջնահերթ խնդիրներից է, մարքսիստ-լենինյանների սրբազան պարտականությունը։

Պատմությունն անհերքելիորեն վկայում է արդիականության երեք հիմնական հեղափոխական ուժերի՝ համաշխարհային սոցիալիզմի, միջազգային պրոլետարիատի և ազգային-ազատագրական շարժման դաշինքի անհաղթահարելի հզորությունը։ Այսօր ավելի քան երկու միլիարդ մարդ թոթափել է գաղութարարների լուծը, հաստատել պետական անկախություն։ Բացառիկ կարևոր է այն իրողությունը, որ ազատագրված շատ ժողովուրդներ մերժում են զարգացման կապիտալիստական ուղին և ընտրում շահագործումից զերծ հասարակության կառուցման ճանապարհը, կողմնորոշվում են դեպի սոցիալիզմը։

Ամեն անգամ, երբ որևէ երկրում բուն ազգային հողի վրա հեղափոխական վերափոխումներ են կատարվում, իմպերիալիստական շրջաններն աղմկում են «Մոսկվայի ձեռքի» մասին, սքողելով և լռության մատնելով այն փաստը, որ հեղափոխական ցնցումները ժողովրդական զանգվածների պատասխանն են իմպերիալիզմի կողոպտչական քաղաքականությանը, որի նպատակն է նոր ձևերով շարունակել այդ երկրների շահագործումը։

Ազգային ազատագրության և սոցիալական առաջընթացի համար ժողովուրդների պայքարի սատարումը մեր լենինյան արտաքին քաղաքականության սկզբունքն է, որը վավերագրված է ՍՍՀՄ Սահմանադրության մեջ։ Այդ է վկայում այն անշահախնդիր օգնությունը, որ Սովետական Միությունը, սոցիալիստական համագործակցության մյուս երկրները ցույց տվեցին Անգոլայի և Եթովպիայի ժողովուրդներին՝ ագրեսիայի դեմ, իրենց ապագան ինքնուրույնաբար որոշելու պայքարում։ Սովետական մարդկանց մեջ համերաշխության և անկեղծ համակրանքի զգացմունքներ են հարուցում հեղափոխական Աֆղանստանում կատարված պրոգրեսիվ վերափոխությունները։ Մեր կուսակցությունն ու սովետական պետությունը խաղաղության ու սոցիալական առաջընթացի դիրքերից են գնահատում ազատության ու դեմոկրատիայի համար մղվող պայքարը հեռավոր Նիկարագուայում, հարևան Իրանում։ Մենք համերաշխության ձեռք ենք մեկնում ռասիստական ճնշումից ազատագրվելու համար Զիմբաբվեի և Նամիբիայի ժողովուրդների մաքառումին, Հարավ-Աֆրիկյան հանրապետությունում ապարտեիդի սիստեմի վերացման կռվին։ Սովետական Միությունը պաշտպանում է արաբական ժողովուրդների օրինական իրավունքներն իսրայելական ագրեսիայի հետևանքների վերացման համար մղվող պայքարում։ Հատկապես բնութագրական է Իրանում տեղի ունեցած հակաիմպերիալիստական, ազգային-ազատագրական հեղափոխությունը, որը վերջ տվեց բռնակալական, կեղեքիչ վարչակարգին, վարչակարգ, որը երկիրը դարձրել էր շահագործման օբյեկտ և օտարերկրյա իմպերիալիզմի հենակետ։

Հարավ-արևելյան Ասիայում Վիետնամի միավորումը, Լաոսում կատարված սոցիալիստական հեղափոխությունը, Կամպուչիայում սոցիալիզմի և դեմոկրատիայի ուժերի հաղթանակը սոցիալական առաջընթացի արտահայտություն են։ Բոլոր խաղաղասեր ժողովուրդների համար մեծ վտանգ են ներկայացնում Պեկինի տենդագին փորձերը՝ վիժեցնելու լարվածության թուլացումը, թույլ չտալու զինաթափում, անվստահություն ու թշնամանք սերմանելու պե-



տությունների միջև, հրահրելու համաշխարհային պատերազմ։ Սոցիալիստական Վիետնամի վրա աննախադեպ լկտի ավազակային հարձակմամբ չինական վերնախավը ողջ աշխարհի առջև վերջնականապես բացահայտեց իր մեծապետական հեգեմոնիստական քաղաքականության նենգ, ագրեսիվ էությունը։ Չինական ռազմամոլների այս քայլը վերստին հաստատեց ՍՄԿԿ XXV համագումարում ընկեր Բրեժնևի արտահայտած այն միտքը, որ մաոյական գաղափարախոսությունն ու քաղաքականությունը ոչ միայն անհամատեղելի են մարքս-լենինյան ուսմունքի հետ, այլև ուղղակի թշնամական են այդ ուսմունքին։

Ժամանակակից աշխարհում ուժերի հարաբերակցության մեջ կատարված արմատական փոփոխությունների հիման վրա տեղի է ունենում միջազգային հարաբերությունների ողջ համակարգի խոր վերակառուցում։ Կուսակցությունը և սովետական պետությունը հաստատակամորեն ու հաջողությամբ կենսագործում են ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած խաղաղության ծրագիրը և միջազգային համագործակցության, ժողովուրդների ազատության և անկախության համար հետագա պայքարի խնդիրները։

Սովետական Միության կոնստրուկտիվ առաջարկությունների նպատակն է ընդհանուր խաղաղության ամրապնդումը, լարվածության թուլացման խորացումը, սպառազինությունների մրցավազքի դադարեցումն ու զինաթափումը, տարբեր հասարակարգ ունեցող պետությունների խաղաղ գոյակցության լենինյան սկզբունքների հաստատումը։ Վճռական հակահարված տալով սոցիալիզմի հակառակորդների ոտնձգություններին՝ Սովետական Միությունը և սոցիալիստական մյուս երկրները ձգտում են ավելի զարգացնել արդի աշխարհում կատարվող սոցիալական պրոգրեսիվ վերափոխումները, շարունակական, անդառնալի դարձնել լարվածության թուլացումը, գործնական հաջողությունների հասնել զինաթափման և առաջին հերթին միջուկային զինաթափման բնագավառում։ Զինաթափումը, ինչպես նշել է Վ. Ի. Լենինը, «սոցիալիզմի իդեալն է»։

Սովետական մարդկանց ստեղծագործական անձնվեր աշխատանքում վառ մարմնավորված է լենինյան կուսակցության և ժողովրդի անխախտ միասնությունը՝ մեր նոր հաղթանակների գրավականը։ Հիրավի, Լենինը մեր կյանքի ոգին է, գաղափարական դրոշը։

---

# ԼԵՆԻՆՅԱՆ ԴԵԿՐԵՏՆԵՐԻ ԿԵՆՍԱԳՈՐԾՄԱՆ ՈՒՂԻՈՎ

**Վ. Մ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ**
Պատմական հուշարձանների պահպանման հայկական ընկերության նախագահ

*ՄԱՐԴԿՈՒԹՅԱՆ ՍՏԵՂԾԱԾ հոգևոր ու նյութական արժեքներն անցյալի խոսուն վկաներն են։ Դրանք մարմնավորում են ժողովրդի անցած պատմական ուղին, նյութականացնում նրա աշխատանքային, գաղափարական, հեղափոխական և մարտական սխրանքներն ու ջանքերը, գեղարվեստական ըմբռնումները, հոգեկան հարստությունը։ Այդ առումով էլ մեծ է պատմության և մշակույթի հուշարձանների ուսուցողական ու դաստիարակչական նշանակությունը։*

*Մարդկության բազմադարյան կուլտուրայի զարգացման օրինաչափությունների ճշմարիտ ըմբռնման գիտական հիմունքները մշակել են Կ. Մարքսը և Ֆ. Էնգելսը։ Նրանք բարձր են գնահատել անտիկ աշխարհի և վերածնության դարաշրջանի ճարտարապետական-գեղարվեստական գանձերը, նշել դրանց դերը համաշխարհային քաղաքակրթության մեջ։ Բնորոշելով մշակույթը որպես հասարակական երևույթ՝ մարքսիզմի դասականները միշտ էլ հասարակության սոցիալ-քաղաքական ու հոգևոր կյանքի հիմքը համարել են նյութական արտադրությունը և վերարտադրությունը։*

*Դասակարգային հասարակության մեջ հոգևոր մշակույթը դասակարգային է, արտահայտում է իշխող դասակարգերի շահերը, նպաստում նրանց տիրապետության ամրապնդմանը։ Միայն սոցիալիստական հասարակության պայմաններում է մշակույթն ազատագրվում կաշկանդող շրջանակներից, ձեռք բերում համաժողովրդական նշանակություն, ծառայում անդասակարգ հասարակության կառուցմանը։*

*Սակայն ճիշտ չէր լինի անցյալի մշակութային ողջ ժառանգությունը համարել իշխող դասակարգերի սեփականությունը, որովհետև դրա իսկական ստեղծողը ժողովուրդն է եղել։ Լենինը ուսուցանում է՝ յուրաքանչյուր ազգային արվեստի մեջ տարբերել հետադիմականը (բուրժուականը) և առաջադիմականը (ժողովրդականը) և ըստ այդմ գնահատել այն։ Նա բազմիցս նշել է սոցիալիստական մշակույթի ստեղծման ընթացքում նախորդ հասարակությունների մշակութային նվաճումների օգտագործման անհրաժեշտությունը։ «Մենք ինչո՞ւ պետք է երես թեքենք իրոք լավից, հրաժարվենք դրանից,— ասել է նա Կլարա Ցետկինի հետ ունեցած զրույցի ժամանակ,— որպես հետագա զարգացման ելակետից, միմիայն այն բանի համար, որ դա «հին» է»* (Լենինը կուլտուրայի և արվեստի մասին, *Երևան, 1958, էջ 627)։*

*Սովետական Միության ժողովուրդների, այդ թվում և հայ ժողովրդի, մշակութային ժառանգությունը մեծ ներդրում է համամարդկային քաղաքակրթության ոլորտում։ Չնայած դրան, նախասովետական շրջանում այդ արժեքավոր ժառանգությունը զուրկ է եղել բավարար հոգածությունից, պետական պահպանությունից։*

*Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխությունն ընձեռեց ժողովրդին մշակութային ժառանգությանը տեր կանգնելու հնարավորություններ. անցյալի մշակութային ժառանգության նկատմամբ մարքս-լենինյան վերաբերմունքը հիմք ծառայեց դրա պահպանության պատշաճ կազմակերպման համար։ Երիտասարդ սոցիալիստական պետությունը, երբ դեռ պայքարում էր իր հաստատման համար, նորաստեղծ սովետական կառավարությունը, Լենինի գլխավորությամբ, մի շարք միջոցներ ձեռնարկեց հուշարձանների պահպանության նպատակով (տե՛ս* Охрана памятников истории и культуры. Сборник документов, М., 1973 г.*)։*

*1917 թվականի նոյեմբերին լուսավորության ժողովրդական կոմիսար Լունաչարսկին ժողովրդին դիմեց մշակութային ժառանգության պահպանության կոչով։ Հաջորդ տարին մշակվեցին հուշարձանների պահպանության կազմակերպական հիմունքները, հրապարակվեցին առաջին օրենսդրական ակտերը։ Մշակութային ու պատմական արժեքների պահպանման հոգսը հանձնարարվեց լուսավորության ժողովրդական կոմիսարիատին։ Դրան կից ստեղծված թանգարանների, հնության և արվեստի հուշարձանների պահպանման պետրոգրադյան կոլեգիան, ինչպես նաև Մոսկվայի սովետին կից արվեստի և հնության հուշարձանների պահպանման հանձնաժողովն ինքնուրույն գործեցին մինչև 1918 թվականի օգոստոսը. հետո դրանք վերակազմվեցին որպես թանգարանների, արվեստի և հնության հուշարձանների պահպանության համառուսաստանյան կոլեգիա՝ լուսավորության ժողովրդական կոմիսարիատին առընթեր։*

*1917 թվականի դեկտեմբերին ստեղծված պատմական ունեցվածքների կոմիսարիատը և դրան կից 1918 թվականից գործող հուշարձանների պահպանության կոլեգիան, որոնք տնօրինում էին նախկին արքունական մինիստրության հիմնական հուշարձանները, գոյատևեցին մինչև 1918 թվականի օգոստոսը։ Այնուհետև դրանց պարտականությունները հանձնվեցին լուսավորության ժողովրդական կոմիսարիատին, որի ենթաբաժինները կատարեցին հսկայական աշխատանք թանգարանաշինության, պատմագիտական ու մշակութային արժեքների պահպանության ասպարեզում։*

*1918 թ. սեպտեմբերի 19-ին ժողկոմսովետը մի դեկրետ ընդունեց, որով առանց լիազորված պետական օրգանների թույլտվության արգելվում էր արտահանել և արտասահմանում վաճառել արվեստի և հնության առարկաները (տե՛ս* Декреты Советской власти, т. III, стр. 47, 118, М., Политиздат, 1964*)։*

*Հետագա տարիներին զգալիորեն կատարելագործվեց հուշարձանների պահպանության միասնական ղեկավարությունը։ 1922 թվականի սկզբին ՌՍՖՍՀ լուսժողկոմատում հիմնվեց ակադեմիական կենտրոնի գիտական, գեղարվեստական ու թանգարանային հիմնարկությունների գլխավոր վարչություն (*Главнаука*)՝ թանգարանների և հուշարձանների պահպանության բաժնով։ Դրա տնօրինությանը հանձնվեցին հուշարձանների պահպանությամբ, ուսումնասիրությամբ ու պրոպագանդայով զբաղվող բոլոր հիմնարկությունները՝ նյութական մշակույթի ռուսաստանյան ակադեմիան, կենտրոնական պետական վերականգնման արհեստանոցները, գավառագիտական կենտրոնական բյուրոն, Մոսկվայի և Պետրոգրադի թանգարանային էքսկուրսիոն ինստիտուտները և բոլոր թանգարանները։ Միաժամանակ վերակառուցվեցին տեղական օրգանները։ Ժողովրդական լուսավորության նահանգային (մարզային) բաժիններին կից կազմակերպվեցին թանգարանների, արվեստի ու հնության, ժողովրդական կենցաղի ու բնության հուշարձանների պահպանության կոմիտեներ՝ օժտված լայն ֆունկցիաներով և իրավունքներով։ Այդպիսով, համաշխարհային պատմության մեջ առաջին անգամ ստեղծվեց պատմության և մշակույթի հուշարձանների պահպանության կուռ ու համապարփակ պետական համակարգ։*

*1918 թվականի ապրիլին Լենինն ստորագրեց ՌՍՖՍՀ ժողկոմսովետի դեկրետը ցարերի և նրանց ծառաների պատվին կանգնեցված հուշարձանները հանելու և ռուսական սոցիալիստական հեղափոխության մարտիկների հուշարձանների նախագծման մասին։ Ըստ այդ դեկրետի, պատմական և գեղարվեստական արժեք չներկայացնող հուշարձանները պետք է փոխարինվեին աշխատավոր Ռուսաստանի գաղափարները մարմնավորող նոր հուշարձաններով։*

1918 թ. հուլիսի վերջին Լենինը հաստատեց ականավոր գործիչների պատվին հիմնվելիք 50 հուշարձանների ցուցակը։ Մոսկվայում կանգնեցվեցին Մարքսի և Էնգելսի, Ռադիշչևի, Ստ. Խալտուրինի հուշարձանները, կոթողներ Մոսկվայի սովետի շենքի առջև և Ալեքսանդրյան այգում, նաև Ռոբեսպիերի, Շևչենկոյի, Նիկիտինի և Կոլցովի, Պետրոգրադում՝ Պլեխանովի, Գերցենի, Շևչենկոյի, Սոֆյա Պերովսկայայի հուշարձանները, սկսեցին հուշարձաններ կառուցվել Կիևում, Կալուգայում, Սիմբիրսկում և այլ քաղաքներում։

1918 թվականի հուլիսին կառավարությունը որոշեց ազգայնացնել Տրետյակովյան պատկերասրահը։ Նույն թվականի հոկտեմբերի 5-ին հրապարակվեց դեկրետ՝ «Մասնավոր մարդկանց, ընկերությունների և հիմնարկությունների տնօրինության ներքո գտնվող արվեստի ու հնության հուշարձանների ցուցակագրման, հաշվառման վերցնելու և պահպանության մասին» (Декреты Советской власти, т. III, стр. 399, М., Политиздат, 1964)։

Հուշարձանների տեղափոխում, վերանորոգում կամ վերակառուցում կարելի է կատարել միայն թանգարանների, արվեստի և հնության հուշարձանների պահպանության գործերի կոլեգիայի թույլտվությամբ։ Հինգ տարվա ընթացքում հաշվառվեցին 2.850 առանձին հուշարձաններ և 520 դաստակերտներ։ Հետագա տարիներին կառավարության դեկրետներով թանգարանի վերածվեց Տրոիցկո-Սերգեևյան տաճարը, պետական սեփականություն հայտարարվեց Լ. Տոլստոյի տունը Խամովնիկիում, ստեղծվեց Պուշկինյան հուշավայր և այլն։ Կարևոր նշանակություն ունեցան «Հնության և արվեստի առարկաների գրանցման-հաշվառման մասին» (1923 թ. մարտի 8-ի), «Արվեստի, հնության և բնության հուշարձանների պահպանության ու հաշվառման մասին» (1924 թ. հունվարի 7-ի) դեկրետները։

Սովետական կառավարության 1917—24 թթ. ընդունած հուշարձանների պահպանության օրենքների նպատակն էր նաև անցյալի կուլտուրական արժեքների ոչնչացման փորձերի կանխումը։ Պետք է ասել, որ այդպիսի փորձերը հետևանք էին մշակութային ժառանգության նկատմամբ որոշ գործիչների նիհիլիստական վերաբերմունքի։ Այդ ուլտրաձախ գործիչներն իրենց համարում էին «պրոլետկուլտականներ» և անցյալի մնացուկների դեմ պայքարի միջոցը հիմնականում համարում էին ճարտարապետության ու արվեստի հուշարձանների՝ հատկապես վանքերի և եկեղեցիների վերացումը։ Նրանք պատրաստ էին «այժմեականության նավից դեն նետելու» այն ամենը, ինչ ստեղծվել էր ժողովրդի կողմից մինչև հեղափոխությունը։

Լենինը բազմիցս հանդես է եկել նման միտումների դեմ։ «Պրոլետարական կուլտուրան,— ասել է նա կոմերիտմիության III համագումարում արտասանած ճառում,— մի ինչ-որ անհայտ տեղից դուրս պրծած, իրենց պրոլետարական կուլտուրայի մասնագետներ համարող մարդկանց հնարած բանը չէ։ Այդ բոլորն ամբողջապես անհեթեթություն է։ Պրոլետարական կուլտուրան պետք է լինի օրինաչափ զարգացումը գիտելիքների այն պաշարի, որը մշակել է մարդկությունը կապիտալիստական հասարակության, կալվածատիրական հասարակության, չինովնիկական հասարակության ճնշման տակ» (Վ. Ի. Լենին, Երկեր, հ. 31, էջ 348—349)։ Իրեն հատուկ խորաթափանցությամբ ու հեռատեսությամբ Վլադիմիր Իլյիչը նշել է, որ անհրաժեշտ է գործադրել բոլոր ճիգերը, որպեսզի չկորչեն մեր մշակույթի հիմնական կոթողները, որովհետև պրոլետարիատը այդ մեզ չի ների։

Հոկտեմբերյան սոցիալիստական հեղափոխության տասնամյա հոբելյանի նախապատրաստման ժամանակ զգալի աշխատանք կատարվեց պատմահեղափոխական հուշարձանների հայտնաբերման առումով, դրանց մի մասը ներառվեց պետական պահպանության ենթակա հուշարձանների ցանկում։

1936 թ. միջգերատեսչական կոմիտեի պարտականություններն ստանձնեց ՍՍՀՄ ժողկոմսովետին կից ստեղծված արվեստի գործերի կոմիտեն։ Ճարտարապետական հուշարձանների նկատմամբ հսկողությունն սկսեց իրականացնել ճարտարապետության ակադեմիան, իսկ հնագիտական հուշարձանների նկատմամբ՝ ՍՍՀՄ գիտությունների ակադեմիան։

1941—1945 թթ. Հայրենական մեծ պատերազմը հանդիսացավ մեր երկրի



համար ծանր փորձության շրջան։ Ֆաշիստները գրաված տերիտորիաներում ոչնչացնում էին առավել կարևոր պատմական հուշարձանները, թալանում արվեստի գանձերը։ ՍՍՀՄ ժողկոմխորհի արվեստի գործերի կոմիտեին կից ստեղծված հուշարձանների հաշվառման ու պահպանման հանձնաժողովն այդ ծանր տարիներին իսկ՝ 1942—43 թթ. անցկացրեց օկուպացված տերիտորիաներում գտնվող հուշարձաններին հասցված վնասի հաշվառում։

Պատերազմի հաղթական ավարտից հետո պետական խոշոր ներդրումների միջոցով, վերականգնվեցին Լենինգրադի արվարձանների ճարտարապետական համալիրներ Պետրոդվորեցը, Պավլովսկի պալատը, Նովգորոդի Սպաս Ներեդիցա և Մոսկվայի մարզի Իստրայի տաճարները, վերականգնվեցին ու վերանորոգվեցին Կիևի Սոֆիայի տաճարը, Կիևյան-Պեչորյան մայրվանքը և բազմաթիվ այլ հուշարձաններ։

Հետպատերազմյան շրջանում կառուցվեցին հասարակական-պետական, արվեստի, գիտության ու կուլտուրայի ականավոր գործիչներին նվիրված բազմաթիվ հուշարձաններ։ Վ. Ի. Լենինի ծննդյան 100-ամյակի առնչությամբ Ուլյանովսկում ու երկրի քանից ավելի քաղաքներում ստեղծվեցին կոմունիստական կուսակցության և սովետական պետության հիմնադրի հիշատակը հավերժացնող հուշահամալիրներ։

1956 թ. դեկտեմբերի 12-ին վավերացվեց Հաագայի կոնվենցիան «Զինված ընդհարման դեպքում մշակութային արժեքների պաշտպանության մասին»։ 1964 թ. Սովետական Միությունը մասնակցեց Վենետիկում գումարված միջազգային կոնգրեսին, որն ընդունեց հուշարձանների պահպանության և վերականգնման խարտիա։ ՍՍՀՄ Գերագույն սովետը 1976 թ. օրենք ընդունեց մշակույթի հուշարձանների պահպանության և օգտագործման մասին։

Հուշարձանների պահպանության նպատակով զգալի գործ է արվել և արվում է նաև մեր հանրապետությունում։ ՀՍՍՀ Գերագույն սովետը հուշարձանների պահպանության և օգտագործման մասին օրենք է ընդունել երկու անգամ՝ 1969 և 1977 թթ.։ Հուշարձանների պահպանության հարցին է նվիրված և հայկական հանրապետության նոր Սահմանադրության 68-րդ հոդվածը։

Հայաստանի մշակութային հարուստ ժառանգության մեջ կարևոր տեղ են գրավում պատմաճարտարապետական հուշարձանները։ Պատմական, գիտական, ճարտարապետական, շինարարական և գեղարվեստական մեծարժեք այդ հուշարձանները լայն ճանաչում են գտել։ Անիում կատարած պեղումների առիթով ականավոր հայագետ Նիկողայոս Մառը գրել է. «Եթե արձանագրությունները երբեմն լրացնում են մատենագրի հայտնած հակիրճ ու չոր տեղեկությունները... ապա նյութական գյուտերը, անեցիների բնակարանների ու կահույքի հետ ծանոթությունը լույս է սփռում, ի միջի այլոց, հին հայկական կյանքի այն կողմի վրա, որի մասին հայկական մատենագիրները պահպանում են գերեզմանային լռություն» (Н. Я. Марр, Ани— столица древней Армении, сб. Братская помощь армянам, стр. 198—199)։

Ահա թե ինչու այնպես կարևոր ու անհրաժեշտ են հուշարձանների պահպանությունն ու հարատևության ապահովումը։ Նախասովետական շրջանում ևս այդ անչափ մտահոգել է մեր մշակույթի գործիչներին՝ Թումանյանին ու Իսահակյանին, Րաֆֆուն ու Լեոյին և շատ ուրիշների։ Նրանք անձկանոք երազել են այն համեստ գումարների մասին, որոնցով հնարավոր կլիներ պատմական շատ կոթողներ փրկել ավերմունքից։

Սովետական կարգերի հաստատման շնորհիվ հայ աշխատավոր ժողովուրդը տեր դարձավ իր երկրին ու նրա բոլոր հարստություններին, այդ թվում նաև անցյալի մշակույթի գանձարանին։ Նորաստեղծ Հայաստանի հանրապետության կառավարությունը, կենսագործելով լենինյան պատգամները, միջոցներ ձեռք առավ հուշարձանների պահպանության նպատակով։

Լենինյան դեկրետներից 5 տարի անց, 1923 թ. դեկտեմբերի 18-ին, Հայաստանի ժողկոմխորհի որոշմամբ ստեղծվում է Հայաստանի հնությունների պահպանության կոմիտե՝ Ալեքսանդր Թամանյանի նախագահությամբ։ Այդպիսի օրգան ստեղծելու անհրաժեշտության մասին Հայաստանի կառավարության ուղղած իր զեկուցագրում սովետահայ ճարտարապետության հանճարեղ

հիմնադիր, ակադեմիկոս Թամանյանը գրել է. «Հայաստանի ճարտարապետական հուշարձանների համաշխարհային նշանակությունը շատ մեծ է և հանրածանոթ, դրանք վկայում են մեր ժողովրդի բարձր կուլտուրայի նկատմամբ ունեցած ունակությունների մասին, բնութագրում են մեր ժողովրդին, լուսաբանում մեր պատմությունը»։

Լուսավորության ժողկոմատին առընթեր գործող կոմիտեն պետք է կազմակերպեր հանրապետության մեջ ամենուրեք սփռված նյութական կուլտուրայի բազմահազար մնացորդների իրական և տեխնիկական պահպանությունն ու դրանց սիստեմատիկ ուսումնասիրության գործը։

Քսանական թվականներին կոմիտեի գործունեությունն սկսվեց չափազանց կարևոր գործով՝ հուշարձանների գիտական հաշվառմամբ։ Թորոս Թորամանյանի կազմած առաջին ցուցակում գրանցված էր ընդամենը 80 հուշարձան։ Տարիների ընթացքում կազմակերպված հնագիտական պեղումների ու արշավների միջոցով հետզհետե մեծացավ այդ ցուցակը, լուսանկարվեցին և մասամբ չափագրվեցին շատ հուշարձաններ, կազմվեցին ակտեր դրանց տեխնիկական վիճակի վերաբերյալ, մշակվեցին առանձին շրջանների և ողջ հանրապետության հնագիտական քարտեզներ։ Այժմ պետական պահպանության ներքո գտնվող հուշարձանների ցուցակում կան հնագիտական ու ճարտարապետական ավելի քան 4.000 հուշարձաններ։ Վերջին տարիներս ձեռնարկված է հանրապետության տարածքի վրա գտնվող բոլոր տեսակի հուշարձանների (այդ թվում նաև պատմահեղափոխական, ռազմական փառքի և սովետական ժամանակաշրջանի) համահավաք ցուցակը կազմելու գործը։

Նախորդ տասնամյակներում մասնակի կամ ամբողջովին վերանորոգվել են մոտ 300 կարևորագույն պատմաճարտարապետական հուշարձաններ ու դրանց համալիրներ։ Վերականգնման աշխատանքներից լավագույնը կարելի է համարել Գառնիի հեթանոսական տաճարը։ Նախագծի հեղինակ և աշխատանքային ղեկավար, Հայկական ՍՍՀ արվեստի վաստակավոր գործիչ Ալեքսանդր Սահինյանն արժանացավ պետական մրցանակի։

Զգալի է նաև հուշարձանների պահպանության հայկական ընկերության ներդրումն այս ասպարեզում։ Անցած տարիների ընթացքում ընկերությունն ավելի քան մեկ միլիոն ռուբլի է տրամադրել այդ նպատակին։

Երևանի և հանրապետության բազմաթիվ հուշարձանների վերականգնման, դրանց տարածքների բարեկարգման ու դեպի կարևոր համալիրները տանող ճանապարհների շինարարության համար ծավալուն աշխատանքներ կատարվեցին 1968 թ.՝ Երևանի հիմնադրման 2750-ամյակի և հատկապես 1978-ին՝ հայ արվեստին նվիրված միջազգային երկրորդ սիմպոզիումի հրավիրման առնչությամբ։ Հիմնովին բարեկարգվեցին Գառնիի ամրոցի, Գեղարդավանքի, Սաղմոսավանքի, Գոշավանքի, Սանահնի, Հաղպատի, Հռիփսիմեի և Գայանեի վանքերի տարածքները, նորոգվեցին դրանց կազմի մեջ մտնող առանձին հուշարձանները, ասֆալտապատ նոր ճանապարհներ կառուցվեցին դեպի Գառնի և Գեղարդավանք, Հաղարծին և Գոշավանք, Սանահնի և Հաղպատի վանքերը։

Անժխտելի է, որ մեր հանրապետությունում խոշոր աշխատանք է կատարվում հուշարձանների պահպանության ու վերականգնման նպատակով։ Այդուհանդերձ կատարվածը բավարար համարել չի կարելի. մոտ 500 հուշարձաններ ու հուշարձանախմբեր վթարային վիճակում են և անհապաղ նորոգման կարիք ունեն։

Վերականգնման աշխատանքներին զուգընթաց զգալի գործ է արված մեր հնագիտական ու ճարտարապետական հուշարձանների ուսումնասիրության ու պրոպագանդման ասպարեզում։ Հատկապես վերջին 15 տարիների ընթացքում լույս են տեսել բազմաթիվ աշխատություններ, գիտահանրամատչելի տեղեկագրեր, լողունգներ, պլակատներ, բուկլետներ, թողարկվել գիտավավերագրական ֆիլմեր, կազմակերպվել գիտագործնական կոնֆերանսներ, ռադիոհեռուստատեսային հաղորդումներ, ցուցահանդեսներ, էքսկուրսիաներ և այլն։

Հիրավի, հոգածությունը ժողովրդի նվիրական գանձերի նկատմամբ դարձել է համապետական ու համաժողովրդական մտահոգության առարկա. դա լենինյան պատգամների կենսագործման վառ վկայություններից է։

# «ԱՇԽԱՏԱՆՔԻ ԼԵՆԻՆՅԱՆ ՈՃԸ»

Վ. Հ. ՍԱՐԳՍՅԱՆ

Սոցիալիստական շինարարության տարիներին սովետական ժողովուրդն իր մարտական ավանգարդի՝ լենինյան կուսակցության ղեկավարությամբ հասել է վիթխարի, նիրավի պատմական նվաճումների մեր կյանքի բոլոր ոլորտներում։ Իրականացվել են քաղաքական ու սոցիալ-տնտեսական արմատական վերափոխումներ, որոնց գլխավոր արգասիքը զարգացած սոցիալիզմի հասարակության կերտումն է, մեր հզոր առաջընթացը դեպի կոմունիզմի նոր բարձունքները։

Բոլոր մեծագործությունները, այն ամենը, ինչին հասել և ինչով այսօր իրավամբ հպարտանում է մեր ժողովուրդը, անխզելիորեն կապված է Վ. Ի. Լենինի անվան հետ և կրում է նրա անմահ գաղափարների դրոշմը։ Նոր կյանքի ու կենցաղի համար մղված գոռ մարտերում մեզ մշտապես ուղեկցել է հանճարեղ մտածողն ու հեղափոխականը, նրա ուսմունքն ու հմայիչ կերպարը միշտ եղել են մեր կուսակցության և ժողովրդի ուժի ու հզորության, ոգեշնչման ու ստեղծագործության կենարար աղբյուրը։ «Անցնում է ժամանակը,— ասել է Լ. Ի. Բրեժնևը,— փոխվում է իրադրությունը, առաջ են գալիս նորանոր խնդիրներ, բայց Լենինի նշած ուղին եղել ու մնում է միակ հուսալի, միակ ճիշտ ուղին»։

Հարուստ, բազմաբնույթ գրականություն է ստեղծվել՝ նվիրված մեծ առաջնորդին։ Սակայն ջերմությամբ ու հետաքրքրությամբ է ընդունվում Վլադիմիր Իլյիչի կյանքին և ուսմունքին, նրա գաղափարների պրակտիկ իրականացմանը վերաբերող ամեն մի նոր հաջողված աշխատություն, գիրք ու գրքույկ, արվեստի նոր գործ։

Այդ առումով իսկ ուշագրավ է պատմական գիտությունների դոկտոր Հովհաննես Բաղդասարյանի մենագրությունը*, ուր լուսաբանված են կուսակցական և պետական ապարատի կազմակերպման ու գործունեության լենինյան սկզբունքները, աշխատանքի լենինյան ոճի հիմնական գծերը։

Մենագրությունում լայնորեն օգտագործված են առաջնորդի աշխատությունները, ՍՄԿԿ փաստաթղթերը, զինակիցների, մերձավորների, հարազատների հիշողություններն ու վկայությունները։ Այդ ամենի հիման վրա, հեղինակը, կուսակցության և նրա Կենտկոմի գործունեության, ինչպես և մեր հանրապետության ու երկրի տարբեր կուսակցական կազմակերպությունների, սովետական մարմինների պրակտիկայից վերցված կոնկրետ օրինակներով քննության է առել և խոր ու համակողմանի լուսաբանել աշխատանքի լենինյան ոճի բացառիկ դերը կոմունիստական շինարարության արդի փուլում։ Նա ցույց է տվել, թե ինչպես կուսակցական-պետական ղեկավարման այդ հիմնարար սկզբունքները հաստատվել և հարստացվել են տասնամյակների պատմական փորձով, կուսակցության ողջ պրակտիկ գործունեությամբ և դարձել մեր սոցիալիստական ապրելակերպի ուղենիշը։

Գրախոսվող աշխատության առաջին գլխում քննության են առնված կուսակցական ու պետական ապարատի կազմակերպման ու գործունեության լենինյան սկզբունքները, հասարակության զարգացման արդի փուլում կառավարման բարելավման ու կատարելագործման հանգուցային պրոբլեմները։

Կառավարումն արվեստ է, գիտություն, նշել է Լենինը։ Հետևողականորեն կենսագործելով լենինյան դրույթները՝ ՍՄԿԿ-ն առանձնահատուկ ուշադրություն է նվիրում սոցիալիստական կառավարմանը, որի օրգանական մասն է կազմում կուսակցական ու պետական ապարատը։ Այդ ապարատի գործունեության ոճն ու մեթոդները մեծապես պայմանավորում են մեր զարգացման առաջընթացը, էկոնոմիկայի և կուլտուրայի նկատմամբ իրականացվող ղեկավարությունը։

Վ. Ի. Լենինը տեսականորեն մշակել է կուսակցական և պետական ապարատի քաղաքական ու կազմակերպական հիմունքները,

* Հովհ. Բաղդասարյան, Աշխատանքի լենինյան ոճը: «Հայաստան» հրատ., 1978 թ.:

սահմանել դրա գլխավոր խնդիրներն ու ֆունկցիաները: Իլյիչն է դրել այդ ապարատի հիմնաքարը և գործնականում առաջինը կիրառել իր իսկ մշակած սկզբունքները: Վլադիմիր Իլյիչը խորապես հիմնավորել է սովետական հասարակության զարգացման ոլորտում կուսակցության ղեկավար դերի պատմական օրինաչափությունը: Ելնելով դրանից, գրքում լուսաբանված է, թե որքան բազմակողմանի ու պատասխանատու է դարձել զարգացած սոցիալիստական հասարակության քաղաքական ղեկավարի գործունեությունը:

Անդրադառնալով կուսակցական ապարատի դերին ու խնդիրներին՝ հեղինակը բացահայտել է, թե հասարակության զարգացման ընթացքում, կուսակցության արդի խնդիրներին համապատասխան, կազմակերպական-կառուցվածքային ինչպիսի փոփոխությունների է ենթարկվել ու կատարելագործվել այն: Սոցիալիստական շինարարության տարիներին ստեղծագործական մշտական որոնումների շնորհիվ հաստատվել է ՍՄԿԿ ղեկավար մարմինների կազմակերպական հստակ ձև, լավ կազմակերպված ու գործուն ապարատ:

Մեր կուսակցությունը չուներ տնտեսության ղեկավարման փորձ և մշակված ոճ, այն ըստեղծվեց ու հաստատվեց սոցիալիստական շինարարության պրոցեսում: Վ. Ի. Լենինը, ուսումնասիրելով պրակտիկ փորձը, մշակեց տնտեսության կուսակցական ղեկավարման կոնկրետ ձևերն ու մեթոդները, սկզբունքները: Կուսակցությունը տնտեսությունը ղեկավարում է պետական, տնտեսական կազմակերպությունների միջոցով. երկրի զարգացմանը համընթաց բարձրանում է կուսակցության ղեկավար դերը ժողովրդական տնտեսության կառավարման գործում: Վլադիմիր Իլյիչը կուսակցական մարմիններին զգուշացնում էր, որ չպետք է փոխարինել տնտեսական ու պետական մարմիններին, անմիջականորեն չմիջամըտել նրանց աշխատանքին, այլ կազմակերպել և ուղղություն տալ նրանց գործունեությանը, զարգացնել նախաձեռնությունն ու ակտիվությունը, ուժեղացնել կուսակցության քաղաքական և կազմակերպական ղեկավարությունը տնտեսության նկատմամբ:

Խոսելով սոցիալիստական պետական ապարատի մասին՝ հեղինակը գրում է, որ իր դասակարգային էությամբ, կառուցվածքով, գործունեությամբ, սոցիալական ֆունկցիաներով ու աշխատանքի մեթոդներով այն սկզբունքորեն նոր տիպի պետական ապարատ է, իրոք դեմոկրատական, ժողովրդական ապարատ, որի ուղենիշը մեծ առաջնորդի ցուցումներն են, նրա բեղմնավոր պրակտիկ գործունեությունը:

Սովետական երկրում պետությունը ղեկավարում է ինքը՝ ժողովուրդը, սովետների միջոցով: Ժողովրդական դեպուտատների սովետները կազմում են ՍՍՀՄ քաղաքական հիմքը և առավել լիակատար են մարմնավորում մեր պետական իշխանության դեմոկրատական բնույթը, էությունը: Ահա թե ինչու պետական իշխանության ապարեզում կուսակցությունը չափազանց կարևոր նշանակություն է տալիս սովետների աշխատանքին: Վերջին տարիներին ՍՄԿԿ Կենտկոմն իրականացրել է մի շարք միջոցառումներ, ընդունել կարևոր որոշումներ՝ պետական իշխանության այդ մարմինների դերի ու հեղինակության հետագա բարձրացման, գործունեության բարելավման նպատակով:

Աշխատության երկրորդ գլխում հեղինակը հանգամանորեն անդրադարձել է աշխատանքի լենինյան ոճի հիմնական գծերին, դրանց արմատավորմանը կուսակցական ու պետական աշխատանքում: Գիտական, ստեղծագործական մոտեցում հասարակական պրոցեսների նկատմամբ— այսպիսին է լենինյան ոճի կարևոր առանձնահատկություններից մեկը: Ելակետ ընդունելով լենինյան այն դրույթը, որ կուսակցությունը «պետք է գործի գիտական հիմունքներով», հեղինակը նշում է, թե հասարակական պրոցեսների նկատմամբ գիտական մոտեցումը ենթադրում է նպատակասլացություն աշխատանքում, տեսականորեն հիմնավորված և պրակտիկայով ստուգված հանձնարարականների անվերապահ կատարում, իրադրության կոնկրետ պայմանների ճշգրիտ հաշվառում, հասարակական զարգացման օրենքների խոր իմացություն, գործնական հարցերը լուծելիս տեսական գիտելիքները կիրառելու կարողություն ու հմտություն:

Ուսումնասիրության մեջ Սովետական Միության և հիմնականում մեր հանրապետության կյանքից առնված փաստերով ցույց է տրված, թե ինչպես կուսակցական կազմակերպությունները, հենվելով գիտության ու տեխնիկայի առավել արագ զարգացման, դրանց նվաճումների համակողմանի օգտագործման վրա, լուծում են ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած տնտեսական պրոբլեմները, կատարելագործում աշխատանքի ձևերն ու մեթոդները:

Հեռանկարը տեսնելն աշխատանքի լենինյան ոճի անքակտելի մասն է, գրում է հեղինակը: Հեռանկարով աշխատել, նշանակում է տեսնել վաղվա օրը, գիտականորեն կանխատեսել մեր կյանքի զարգացումը, հանդես բերել տնտեսական ու սոցիալական պրոբլեմների կոմպլեքսային լուծման ունակություն: Զինված սոցիալիստական արտադրության զարգացման տընտեսական օրենքների իմացությամբ, կուսակցությունը մշտապես խորամուխ է լինում էկոնոմիկայի զարգացման բոլոր պրոցեսներում, լուծում հասունացած խնդիրները:

Աշխատանքի լենինյան ոճի հիմնական գծերից են գործարարությունը, խոսքի ու գործի միասնությունը. հասարակական պարտքի նըկատմամբ կոլեկտիվի և անհատի գիտակցական վերաբերմունքի, ակտիվ դիրքավորման չափանիշն են դրանք: Խոսքն այն ժամանակ է արժեքավոր, երբ այն գործ է դառնում: Հարկ է հասկանալ, գրել է Լենինը Հոկտեմբերի հաղթանակից հետո, որ «...այժմ ամբողջ գործը պրակտիկան է, որ հասել է հենց այն պատմական մոմենտը, երբ տեսությունը վերածվում է պրակտիկայի, կենդանանում է պրակտիկայով, ուղղվում է պրակտիկայով, ստուգվում է պրակտիկայով» (Երկեր, հ. 26, էջ 503):

Վլադիմիր Իլյիչի ամբողջ գործունեությունը գործունակության, հեղափոխական տեսության ու պրակտիկայի, խոսքի ու գործի միասնության վառ օրինակ է: Նա գործի մարդ էր, աշխատանքում երբեք չէր հրաժարվում փոքրից, հասարակ ու առօրյա գործերից:

Մեր կուսակցությունն անշեղ հետևում է իր առաջնորդի օրինակին ու գործելակերպին, մշտապես սովորում նրանից: ՍՄԿԿ-ի և նրա Կենտկոմի աշխատանքի ոճին բնորոշ են խոսքի ու գործի միասնությունը, հեղափոխական թափի զուգակցումը գործարարության ու կոնկրետության հետ: Սակայն, ինչպես նշում է հեղինակը, մեր օրերում դեռևս հանդիպում են ո՛չ միայն անհատներ, այլև ամբողջ կոլեկտիվներ, որոնք չեն կատարում խոստումը, կամ երբեմն կենդանի գործը փոխարինվում է բազմաթիվ որոշումներով, թղթային հեղեղով, բազում և բազմապիսի անհարկի ժողովներով:

Գրքում լուսաբանված են աշխատավորական մասսաների հետ կուսակցության կապերի ըստ ամենայնի ամրապնդման ու ընդլայնման հարցերը: Լենինն ուսուցանում էր, որ մեր կուսակցության ուժը կենդանի կապն է կուսակցական և միլիոնավոր անկուսակցական մասսաների միջև և որքան սերտ է այն, այնքան ավելի մեծ են ու հաստատուն մեր հաջողությունները:

Վլադիմիր Իլյիչի ողջ գործունեությունը մասսաների հետ ունեցած կապի, նրանց հետ աշխատելու ուսանելի օրինակ է: Առաջնորդը բարձր էր գնահատում ժողովրդի իմաստությունը, նրա պրակտիկ փորձը, լավ էր հասկանում աշխատավորական լայն մասսաների խոհերն ու իղձերը, անսահման հավատում էր նրանց ստեղծագործական ուժերին, ձիրքերին, հենվում նրանց վրա: Նա սովորեցնում էր մասսաներին և սովորում նրանցից:

Ժառանգելով, զարգացնելով լենինյան այդ ավանդույթները՝ կուսակցությունը ունկնդրում է աշխատավորական մասսաների ձայնին, շարունակ խորհրդակցում նրանց հետ: Վ. Ի. Լենինը պահանջում էր զգայուն վերաբերվել աշխատավորների նամակներին ու դիմումներին, դրանք համարելով հասարակական կարծիքի արտահայտություն:

Ղեկավարման կոլեկտիվությունն ու անձնական պատասխանատվությունը աշխատանքի լենինյան ոճի կարևոր հատկանիշներից են: Խոսելով ղեկավարման կոլեկտիվության մասին՝ հեղինակը շեշտում է, որ այն հուսալի երաշխիք է կամայականության, սուբյեկտիվիզմի, վարչարարության, վոլյունտարիզմի դեմ: Լենինը կոլեկտիվությունը համարում էր կուսակցական ու պետական ղեկավարման բարձրագույն սկզբունքը:

ՍՄԿԿ-ն առաջնորդվել ու ղեկավարվում է այդ սկզբունքով, որի կենսահաստատ ուժն ապացուցվել է մեր կուսակցության ողջ պրակտիկայով: Կոլեկտիվ ղեկավարման ուսանելի օրինակ է ՍՄԿԿ Կենտկոմի գործունեությունը, նրա կոլեկտիվ փորձն ու իմաստությունը: Այդ սկզբունքն արմատավորվել է նաև կուսակցության տեղական կազմակերպություններում:

Շեշտելով կոլեգիալության անհրաժեշտությունը, Լենինը միաժամանակ մեծ նշանակություն էր տալիս հանձնարարված գործի համար յուրաքանչյուր աշխատողի անձնական պատասխանատվությանը, առանց որի անհնար է ղեկավարման կոլեկտիվությունը:

Ուսումնասիրության մեջ առանձին բաժին է հատկացված կուսակցական, պետական ու հասարակական վերահսկողությանն ու կատարման ստուգմանը, որն առանձնահատուկ նշանակություն է ստանում մեր օրերում: Վերահսկողությունը Լենինը համարել է աշխատավորական մասսաներին երկրի կառավարման մեջ լայնորեն ներգրավելու, կուսակցության ու կառավարության ընդունած որոշումների և դիրեկտիվների կատարումն ստուգելու, աշխատանքային ու պետական կարգապահությունը բարձրացնելու, բյուրոկրատիզմի ու քաշքշուկի, չարաշահումների դեմ պայքարի զորեղ միջոց: Գրքում ցույց է տրված, որ մեր կուսակցությունը, հետևելով լենինյան ցուցումներին, ջանում է ավելի կատարյալ ու արդյունավետ դարձնել վերահսկողությունը, կատարելագործել դրա ձևերն ու մեթոդները:

Լավ հիմքերի վրա դրված կատարման պատշաճ ստուգումը հնարավորություն է ընձեռում անշեղորեն կենսագործելու ընդունած որոշումները, բարելավելու ողջ գործունեությունը, բարձրացնելու պետական և աշխատանքային կարգապահությունը, հանձնարարված գործի

նկատմամբ կադրերի պատասխանատվությունը:

Գրքում հանգամանորեն լուսաբանված են նաև սոցիալիստական կարգապահության հարցերը: Մեր երկրում դեմոկրատիզմը սերտորեն զուգակցվում է աշխատանքային ու պետական բարձր կարգապահության հետ. դա գիտակցական, ընկերական կարգապահություն է՝ հիմնված աշխատավորական մասսաների ինքնուրույնության ու նախաձեռնության վրա: Աշխատության մեջ բացահայտված է, թե ինչպես «համաժողովրդական կազմակերպվածության և կարգապահության» հիման վրա մեր երկիրը հասել է մեծ հաջողությունների նոր կյանքի կառուցման ճանապարհին:

Քննադատությունը և ինքնաքննադատությունը կուսակցական կյանքի օրենքն են, մեր զարգացման առաջմղիչ ուժը, կադրերի դաստիարակության հզոր միջոցը: «Մինչև այժմ կործանված բոլոր հեղափոխական կուսակցությունները կործանվել են այն բանից,— ասել է Վ. Ի. Լենինը,— որ մեծամտել են և չեն կարողացել տեսնել, թե ինչում է իրենց ուժը, և վախեցել են խոսել իրենց թուլությունների մասին: Իսկ մենք չենք կործանվի, որովհետև չենք վախենում խոսել մեր թուլությունների մասին, և կսովորենք հաղթահարել այդ թուլությունները» (Երկեր, հ. 33, էջ 367): Հետևելով առաջնորդի պատգամներին՝ մեր կուսակցությունն իր գործունեության ընթացքում չի կոծկել, համարձակ, սկզբունքային քննադատությամբ բացահայտել է սխալներն ու վրիպումները, վճռականորեն հաղթահարել դրանք: ՍՄԿԿ-ն միշտ հանդես է եկել պարադայնության, գոռոզամտության, ինքնահանգըստացման, տեղայնության դեմ, հակահարված տալով քննադատության ճնշման բոլոր փորձերին:

Կուսակցական կազմակերպությունների գործունեությունից բերված կոնկրետ օրինակներով հեղինակը ցույց է տալիս, թե ինչպես սկզբունքային, գործարար քննադատության և ինքնաքննադատության լայն ծավալմամբ կուսակցական կազմակերպությունները բացահայտում են իրենց սխալներն ու թերությունները, դրանց վերացմամբ հասնում ավելի մեծ հաջողությունների տնտեսական ու կուլտուրական շինարարության ասպարեզներում: Կուսակցությունը ծավալում ու զարգացնում է ընկզբունքային, անաչառ, ընկերական, ուղղամիտ քննադատություն, որի նպատակն է թերությունների վերացումը, չլուծված խնդիրների կենսագործումը, աշխատավորական մասսաների ստեղծագործական ակտիվության բարձրացումը, նրանց ճիշտ դաստիարակությունը: Քննադատության և ինքնաքննադատության զենքը կուսակցությունն ուղղում է բյուրոկրատիզմի, պահպանողականության, անկազմակերպվածության և կոմունիստական բարոյականությանը խորթ այլ երևույթների, այն ամենի դեմ, ինչ արգելակում է մեր առաջընթացը:

Կադրային քաղաքականությունն այն հզոր լծակն է, որի միջոցով մեր կուսակցությունը ներգործում է հասարակական զարգացման ընթացքի վրա: Գրախոսվող աշխատության մեջ բազմակողմանի լուսաբանված են կուսակցության կադրային քաղաքականության լենինյան սկզբունքները, դրա անշեղ կիրառումը մեր հասարակության մեջ և, հատկապես՝ հասուն սոցիալիզմի ժամանակաշրջանում: Ինչպես իրավամբ նկատում է հեղինակը, որքան էլ կատարելագործված լինի կուսակցական ու պետական ապարատը, դրանց հաջող գործունեության գրավականը վերջին հաշվով մարդիկ են՝ կադրերը, նրանց գիտելիքները, հմտությունը, փորձն ու կարողությունը: Ահա թե ինչու կադրերի ճիշտ ընտրության, տեղաբաշխման ու դաստիարակության հարցերը մշտապես եղել ու գտնվում են կուսակցության և նրա Կենտրոնական կոմիտեի ուշադրության կենտրոնում:

Հովհ. Բաղդասարյանի աշխատության էջերում համակողմանիորեն լուսաբանված են Վ. Ի. Լենինի գործելակերպը, կուսակցական կյանքի նրա սահմանած նորմերի ու դրույթների կենսագործումը:

Լույս է տեսել գիտական-հրապարակախոսական արժեքավոր մի մենագրություն, որն ուսանելի է ո՛չ միայն ղեկավար կադրերի, պրոպագանդիստների, այլև ընթերցող լայն մասսաների համար: Աշխատանքի լենինյան ոճի ուսումնասիրությունն ու յուրացումը բարձրացնում են մեր աշխատողների գաղափարական կոփվածությունն ու պրոֆեսիոնալ վարպետությունը, օգնում նրանց՝ ավելի արդյունավետ ու բեղմնավոր դարձնելու աշխատանքը:



# ՄԵԼԻՈՐԱՑԻԱՆ ՀՈՂԱԳՈՐԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ՄԱՅՐՈՒՂԻՆ Է

**Ռ. Հ. ՇԱՀՈՅԱՆ**
*Հայկական ՍՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստր*

*ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅԱՆ կոմունիստական կուսակցության ագրարային քաղաքականության իրականացման շնորհիվ հանրապետության գյուղատնտեսությունը հասել է որոշակի հաջողությունների: Զգալի չափով ամրապնդվել է կոլտնտեսությունների ու պետական տնտեսությունների նյութատեխնիկական բազան, ընդարձակվել են ոռոգելի հողատարածությունները: Վերջին 10—12 տարում հանրապետության գյուղատնտեսության համախառն արտադրանքն ավելացել է ավելի քան 1,5 անգամ: Սակայն, չնայած գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի աճին, այդ մթերքների հիմնական տեսակների, հատկապես հացահատիկի և անասնապահական մթերքների արտադրության ծավալը դեռևս չի բավարարում բնակչության հարաճուն պահանջմունքները: Տեղին է նշել, որ հանրապետությունում կան ռեալ հնարավորություններ էապես ավելացնելու այդ մթերքների արտադրությունը: Հայկական ՍՍՀ-ում գյուղատնտեսության հետագա զարգացման ուղղությունները որոշվում են երկու հիմնական գործոններով՝ նրա ջրային ու հողային ռեսուրսների սակավությամբ և ազգաբնակչության բարձր խտությամբ: Ազգաբնակչության մեկ շնչին հանրապետությունում ընկնում է 0,16 հեկտար վարելահող, որը 5 անգամ պակաս է երկրի միջինից: Հասկանալի է, որ բնակչության աճի ներկա տեմպերի պայմաններում այդ ցուցանիշների տարբերությունը հետզհետե ավելի կմեծանա:*

*Բնական կարևորագույն ռեսուրսների՝ հողի և ջրի սակավության պայմաններում մթերքների նկատմամբ ազգաբնակչության և հումքի նկատմամբ արդյունաբերության աճող պահանջները հնարավոր է բավարարել բերքատվության ու մթերատվության բարձրացմամբ և գյուղատնտեսական արտադրության ըստ ամենայնի ինտենսիվացմամբ: Իսկ այդ ամենի վճռական պայմաններից մեկը ոռոգման զարգացումն է՝ դրա արդյունավետության հետագա բարձրացման և ոռոգելի հողատարածությունների ընդարձակման միջոցով:*

*ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը հենց այդպիսի խնդիր են դրել մեր հանրապետության առջև 1977 թվականի հոկտեմբերի 13-ի «Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին» որոշմամբ: Այդ որոշումը կոմունիստական կուսակցության լենինյան ազգային քաղաքականության հետևողական իրականացման նոր, վառ օրինակ է:*

*Հայաստանը տիպիկ լեռնային երկիր է, աշխարհագրական պայմանների խիստ արտահայտված բազմազանությամբ: Բավական է ասել, որ տերիտո-*

րիայի ավելի քան 90 տոկոսը գտնվում է ծովի մակերևույթից 1000 մետր բարձրության վրա։ Հողագործությունը Հայաստանում տարվում է լեռնային բարձրավանդակներում, գետերի հովիտներում և լեռների ստորոտներում, ծովի մակերևույթից մինչև 2600—2800 մետր բարձրության վրա։ Սակայն այդ նիշերից ցածր հողատարածությունների զգալի մասն էլ խիստ քարքարոտության և տեղանքի շատ մեծ կտրտվածության հետևանքով գյուղատնտեսական օգտագործման համար պիտանի չէ։

Գյուղատնտեսական հողահանդակների մեկ մլն 387 հազար հեկտար հողատարածությունից միայն 40,7 տոկոսը կամ 565 հազար հեկտարն է ինտենսիվ օգտագործվում, որից վարելահողեր են 478 հազար հեկտարը, բազմամյա տնկարկների տակ են 87,1 հազար հեկտար։

Բարձրությունների մեծ տարբերությամբ և խիստ կտրտված լեռնային տեղանքով էլ պայմանավորված է կլիմայի, բուսականության և հողատեսքերի մեծ փոփոխականությունը։ Հանրապետության կլիման ցամաքային է, արևային ճառագայթման բարձր ինտենսիվությամբ։ Միջին տարեկան տեղումները փոփոխվում են 200 մմ (Արարատյան հարթավայրում) մինչև 1000 մմ (լեռներում)։ Առանձին տարիների տեղումների տարբերությունն ավելի մեծ է և կազմում է 100-ից մինչև 1300 մմ։ Սակայն դա ևս դեռ բոլորը չէ։ Տարվա ընթացքում տեղումները բաշխվում են չափազանց անհավասարաչափ։ Գարնան վերջում և աշնանը տեղումները շատ ավելի են, քան ամռանն ու ձմռանը։ Ցածրադիր շրջաններում ամբողջ վեգետացիայի շրջանում տեղումները կազմում են ընդամենը 50—70 մմ։

Օդի ջերմաստիճանը, որը որոշակի նշանակություն ունի ջրի բալանսի կազմավորման և ոռոգման պահանջները որոշելիս, նույնպես խիստ տատանվում է տեղանքի բարձրության փոփոխության հետ։ Միջին տարեկան ջերմաստիճանը տատանվում է +14-ից (Մեղրի) մինչև —3 (Արագած)։ Ահա այսպիսի բազմազան բնակլիմայական պայմաններն են, որ ստիպում են առանձնահատուկ ուշադրություն նվիրել հողերի մելիորացիայի խնդիրներին, հատկապես ոռոգման հարցերին։

Հանրապետությունում ոռոգելի հողատարածությունները (1978 թ. նոյեմբերի 1-ի դրությամբ) կազմում են 273 հազար հեկտար, որից ստացվում է երկրագործության ամբողջ արտադրանքի մոտ 80 տոկոսը։ Այդ հողերում մշակվում են խաղողը, պտուղը, բանջարեղենը, ծխախոտը, շաքարի ճակնդեղը, խորդենին և այլ արժեքավոր ու եկամտաբեր կուլտուրաներ։ Այդ կուլտուրաների արտադրության բազայի վրա մեծ չափով զարգացել են սննդարդյունաբերության այնպիսի ճյուղեր, ինչպիսիք են պահածոների, գինու, կոնյակի, շաքարի արտադրությունը։

Ինչպես ոռոգելի հողերի ընդարձակման, արոտների ջրարբիացման, այնպես և անասունների գլխաքանակի աճի ու ցեղերի որակի բարձրացման շնորհիվ զգալի չափով ավելացել է անասնապահական մթերքների արտադրությունը, ստեղծվել են այդ մթերքները վերամշակող բազմաթիվ գործարաններ։

Ինչպես արդեն նշվեց, տարվա ընթացքում մթնոլորտային տեղումները խիստ անհամաչափ են և չեն համընկնում ցանքադաշտերի ոռոգման շրջանին։ Բացի այդ, տեղումներից գետերում առաջացած հոսքը, ըստ առանձին շրջանների ու գետերի ավազանների, նույնպես անհավասար է։ Ներկայումս հանրապետության տերիտորիայով հոսող բոլոր գետերի ամառային հոսքը գրեթե ամբողջությամբ օգտագործվում է ժողովրդական տնտեսության տարբեր կարիքների, հատկապես ոռոգման համար։ Ուստի միանգամայն հասկանալի է, որ ոռոգելի հողերի հետագա ընդարձակումը և առկա ոռոգման սիստեմների ջրապահովվածության բարձրացումն առաջին հերթին պայմանավորված է գետերի տարեկան հոսքի կանոնավորմամբ՝ մեծ կամ փոքր ջրամբարներ ստեղծելու, ինչպես նաև, անհրաժեշտության դեպքում, մեկ գետավազանից հոսքը հարևան գետավազան տեղափոխելու միջոցով։ Այնքանով, որքանով գետերի հոսքն ըստ տարիների նույնպես մեծ տատանումներ ունի, ապա ուղղակի անհրաժեշտություն է, որ նոր ստեղծվող ջրամբարներն ունենան նաև հոսքի բազմատարյա կանոնավորման հնարավորություն։ Եվ միանգամայն օրինաչափ



է, որ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի վերոհիշյալ որոշմամբ նախատեսված միջոցառումների մի ամբողջ խումբ ուղղված է հենց գետերի հոսքի կանոնավորման նպատակին։

Հայկական ՍՍՀ-ում միջին բազմամյա մակերեսային հոսքը կազմում է մոտ 6,5 խոր. կմ։ Այստեղ չեն հաշվվում ստորերկրյա ջրերը, որոնք երկրի մակերես են դուրս գալիս աղբյուրների ձևով։ Սակավաջուր տարիներին հոսքի այդ քանակն իջնում և կազմում է մոտ 5,1 խոր. կմ։ Ստորերկրյա մաքուր ջրերի ամբողջ պաշարը հաշվվում է տարեկան 2,7 խոր. կմ, որից օգտագործման համար թույլատրելի պաշարները («Ա» և «Բ») կազմում են 1,23 խոր. կմ։

Ներկայումս միջին բազմամյա մակերեսային հոսքից հանրապետության ժողովրդական տնտեսության մեջ անվերադարձ օգտագործվում է 2,5 խոր. կմ։ Եթե հաշվի առնենք, որ մեկ խոր. կմ հոսքն անցնում է մեր հարևան հանրապետություններին, ապա, ամբողջ հեռանկարային օգտագործման հաշվով, մեր տրամադրության տակ մնում է 3,2 խոր. կմ տարեկան մակերեսային հոսք՝ ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար։ Հեռանկարում ջրերի այդ քանակով (հաշվի առնելով առկա ոռոգելի հողերի ջրապահովվածությունը բարձրացնելու համար անհրաժեշտ հոսքի չափը, ինչպես նաև ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի պահանջը) հնարավոր է ոռոգելի հողատարածություններն ընդարձակել և հասցնել մինչև 630—650 հազար հեկտարի։

Նախատեսվում է մոտ ապագայում ջրամբարների կառուցման միջոցով ամբողջությամբ կամ մասնակիորեն կարգավորել Քասախ, Մեծամոր, Հրազդան, Ազատ, Վեդի, Արփա, Որոտան, Դեբեդ, Ախուրյան, Արաքս գետերի և դրանց վտակների հոսքը։ Կառուցվող ջրամբարների շնորհիվ հնարավոր կլինի կուտակել մոտ մեկ խոր. կմ ջուր, որը հնարավորություն կընձեռի առաջիկա տարիներին գյուղատնտեսության համար օգտագործելի դարձնել 30 հազար հեկտար նոր ոռոգելի հողեր, իսկ հետագայում՝ ևս 50 հազար հեկտար։ Բացի այդ, մոտ 50 հազար հեկտար պայմանական ոռոգելի հողեր կապահովվեն ամառային ջրով։

Այսպիսով, մոտ ապագայում ոռոգելի հողատարածությունները կհասնեն մոտ 370 հազար հեկտարի։ Բացի այդ, կջրարբիացվի 682 հազար հեկտար արոտավայր։

Մոտավոր հաշվարկները ցույց են տալիս, որ ոչ հեռու ապագայում հանրապետության ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի ջրի պահանջը, տարեկան տեղումների 50 տոկոս ապահովվածության դեպքում, կազմելու է մոտ 7,6 խոր. կմ, իսկ ամբողջ ջրային ռեսուրսները կլինեն 7,5 խոր. կմ։ Այսինքն, եթե նույնիսկ հնարավորություն ստեղծվի լրիվ կարգավորելու և օգտագործելու հանրապետության գետերի հոսքը, ստորերկրյա ջրերը, Սևանի ազատ հոսքը՝ նրա մակերևույթը բարձրացնելուց հետո, ապա, միևնույն է, կստեղծվի ջրային ռեսուրսների չափազանց լարված հաշվեկշիռ։ Այդ վիճակից դուրս գալու նպատակով մոտակա տարիներին անհրաժեշտ կլինի խոր հետազոտել ինչպես ունեցած ջրերի շատ ավելի ռացիոնալ օգտագործման, այնպես և հարևան հանրապետություններից հոսքի որոշակի քանակություն Հայաստան տեղափոխելու հնարավոր տարբերակը։

Մոտակա տարիներին ջրային պրոբլեմների կարգավորման առումով կարևոր և առանձնահատուկ տեղ ունի Սևանա լճի պրոբլեմների հետ կապված հարցերի լուծումը։ Չանդրադառնալով լճի բնական բոլոր ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման համալիր միջոցառումներ կիրառելու անհետաձգելի անհրաժեշտության խնդրին, ասենք միայն, որ Սևանը, բնական այդ յուրահատուկ ջրամբարը, իր քաղցրահամ ջինջ ջրերով, բնության ստեղծած այդ հրաշալիքը մարդկանց ուշադրությունն է գրավում ո՛չ միայն իր բացառիկ գեղեցկությամբ, այլև խոշոր տնտեսական նշանակությամբ։ Լճի ջրերի օգտագործմամբ ոռոգվում են ավելի քան 80 հազար հեկտար հողեր, որոնցից ստացված բերքը կազմում է հանրապետության երկրագործական մթերքների արտադրության ավելի քան 60 տոկոսը։ Եթե այս ամենին ավելացնենք, որ Սևանը ոչ հեռու ապագայում հանդիսանալու է հանրապետության կենտրոնա-

կան շրջանների խմելու ջրի հիմնական աղբյուրը, որ լճի ջրերով հնարավոր է ոռոգել ևս 30—40 հազար հեկտար նոր հողեր, ինչպես նաև այն, որ Հրազդան գետի վրա կառուցված հիդրոէլեկտրակայանները տակավին չեն կորցրել իրենց դերը էլեկտրաէներգիայի պահանջը օրվա ամենածանրաբեռնված ժամերին շատ արագ և դյուրին կարգավորելու գործում, ապա պարզ կդառնա, որ Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանումը և այն գալիք սերունդներին հանձնելը պետական վիթխարի կարևորության խնդիր է, որի կոմպլեքսային լուծումն օրակարգի հարց է դարձել։

Հայաստանի կոմկուսի Կենտկոմը և հանրապետության կառավարությունը առանձնակի հոգատարություն են հանդես բերում լճի հետ առնչվող պրոբլեմները գիտականորեն և հիմնավորապես լուծելու հարցի նկատմամբ։ Մշակված կարևոր միջոցառումների մի մասն արդեն իրագործվել է, մյուսներն իրականացման պրոցեսում են։ Միջոցառումների մի խոշոր խումբ դեռևս նախագծման ընթացքում է։

Լճի պրոբլեմների լուծման գործում հիրավի պատմական նշանակություն ունի «Սևանա լճի բնական ռեսուրսների պահպանման և ռացիոնալ օգտագործման մասին» 1978 թվականի սեպտեմբերին ՍՄԿԿ Կենտկոմի և միութենական Մինիստրների խորհրդի ընդունած որոշումը։

Չթվարկելով այդ որոշմամբ նախատեսված բոլոր միջոցառումները, նշենք, որ մի կողմից հարևան ջրավազանների հոսքը դեպի Սևան տեղափոխելու, մյուս կողմից, ներկայումս օգտագործվող լճի հոսքը ջրի այլ աղբյուրներով փոխարինելու շնորհիվ Սևանի մակարդակն առաջիկա երկու տասնամյակում կբարձրանա մոտ 5—6 մետրով, որը հնարավորություն կընձեռի նրա էկոլոգիական վիճակն զգալի չափով մոտեցնելու բնականին և ստեղծելու ջրերի այնպիսի հաշվեկշիռ, որի ժամանակ հնարավոր կլինի լճից բաց թողնել ավելի շատ ջուր, քան այժմ։ Ներկայումս լճի միջին տարեկան բնական հոսքը կազմում է մոտ 170 մլն խոր. մետր։ Եթե այդ հոսքը մեծացվում է, ապա դա արդեն տեղի է ունենում ջրի դարավոր պաշարների հաշվին և, հետևաբար, բացասաբար է անդրադառնում լճի մակարդակի պահպանման վրա։ Ստեղծվող նոր հաշվեկշռի պայմաններում հնարավոր կլինի օգտագործել ավելի քան 500 մլն խոր. մետր հոսք՝ առանց լճի մակարդակը որևէ չափով իջեցնելու։

Ջրերի ռացիոնալ օգտագործման ու տնտեսման ամենակարևոր միջոցառումներից է առկա ոռոգման սիստեմների օգտակար գործողության գործակցի զգալի բարձրացումը, ինչպես նաև արդյունաբերության մեջ օգտագործվող ջրերի մաքրումը և նորից շրջանառության մեջ դնելը։

Ներկայումս ոռոգման սիստեմների միջտնտեսային ջրանցքների 63, իսկ ներտնտեսային ջրանցքների 35 տոկոսն է միայն երեսպատված հակաֆիլտրացիոն նյութերով։ Այդ պատճառով ոռոգման սիստեմների օգտակար գործողության գործակիցը կազմում է 0,57—0,58 կամ ոռոգման նպատակով հատկացվող ջրի ավելի քան 42 տոկոսը կորչում է ջրանցքներից՝ ներծծման ճանապարհով։ Ջրի այդպիսի կորուստները կանխելու նպատակով վերջին տարիներին զգալի աշխատանք է կատարվել. վերակառուցվել են առկա ոռոգման սիստեմները, երեսպատվել են ջրանցքները։ Այդ աշխատանքներն այս հնգամյակում կկատարվեն 30 հազար, իսկ գալիք հնգամյակում՝ 50 հազար հեկտարի վրա։

Ոռոգելի ջրի տնտեսման հարցում շատ կարևոր դեր է խաղում ոռոգման աշխատանքների մեքենայացումը։ Ներկայումս անձրևացման եղանակով հանրապետությունում ոռոգվում են 10 հազար հեկտար հողեր, որը, իհարկե, շատ հեռու է բավարար լինելուց։ Ուստի գյուղատնտեսության, մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրությունները և հատկապես «Գլխհայջրշին» վարչությունը միջոցներ են մշակում ոռոգման նոր տեխնիկան ավելի մեծ մասշտաբներով կիրառելու համար։

Մեր հանրապետության բնակլիմայական պայմաններում մեծ հեռանկարներ ունի բույսերի, հատկապես պտղատու և խաղողի այգիների ոռոգման, այսպես կոչված, կաթիլային եղանակը, որը կարող է կիրառվել ինչպես վերերկրյա, այնպես և ստորերկրյա ձևով։ Հանրապետության տարբեր շրջաններում մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության ջրային պրոբլեմների



և հիդրոտեխնիկայի գիտահետազոտական ինստիտուտի կատարած ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ այդ եղանակով ոռոգելիս մոտ 2—3 անգամ պակասում է ոռոգման ջրի ծախսը, բերքատվությունը բարձրանում է 40—60 տոկոսով, իսպառ վերացվում է հողերի էռոզիան, որը լուրջ վտանգ է ներկայացնում հատկապես մեծ թեքություններ ունեցող սարալանջերում, հնարավորություն է ընձեռվում ոռոգման ջրի հետ միասին բույսերին տալ նաև հանքային պարարտանյութեր, նվազագույնի հասցնել կամ իսպառ վերացնել մոլախոտերի աճը և, վերջապես, զգալի չափով մեծացնել ոռոգման աշխատանքների արտադրողականությունը՝ թեթևացնելով ջրվորների ֆիզիկական աշխատանքը։ Նախատեսվում է առաջիկա տարիներին կաթիլային եղանակով ոռոգում կատարել մինչև 1.550 հեկտարի վրա, ներկայիս 50—60 հեկտարի դիմաց։

Ոռոգման ջրերի ռացիոնալ օգտագործման ասպարեզում կարևոր նշանակություն ունի ջուրն օրվա բոլոր ժամերին հավասարաչափ օգտագործելը։ Տեղին է հիշեցնել, որ համաձայն գոյություն ունեցող տեխնիկական պայմանների ու հաստատված կանոնների, բոլոր ջրանցքներն ու դրանց վրայի կառուցվածքների չափերը հաշվարկվում, նախագծվում և կառուցվում են՝ ելնելով 24 ժամ անընդհատ ջրելու պայմանից։ Ցավոք, ոչ բոլոր ոռոգելի հողեր ունեցող տնտեսություններն են, որ կանոնավոր կերպով կազմակերպում են գիշերային ջրման աշխատանքները։ Այդ պատճառով տեղի է ունենում ոռոգման ջրի մեծ գերածախս։ Անցյալ տարի այդ գերածախսը կազմել է 184 մլն խմ, կամ 10,7 տոկոսով ավելի ջուր է ծախսվել, քան նախատեսված է եղել պլանով, իսկ առանձին շրջաններում այն հասել է մինչև 40—50 տոկոսի։ Այստեղ, ինչպես ասում են, մեկնաբանություններն իրոք ավելորդ են։

Հանրապետությունում գյուղատնտեսական մթերքների արտադրության զգալի աճն ապահովելու գործում մեծ ռեզերվ է Արարատյան հարթավայրի ավելի քան 25 հազար հեկտար աղուտների յուրացումը և դրանք գյուղատնտեսական շրջանառության մեջ դնելը։ Հողագիտության և ագրոքիմիայի ու ջրային պրոբլեմների և հիդրոտեխնիկայի գիտահետազոտական ինստիտուտները մշակել և արտադրական լայն փորձարկման են ենթարկել այդ հողերի յուրացման տեխնոլոգիան։ Դա իրենից ներկայացնում է ստորերկրյա ջրերի մակարդակի իջեցման, հողերի կուլտուր-տեխնիկական բարելավման, ոռոգման ցանցի անցկացման, քիմիական նյութերի միջոցով հողերի աղազերծման, լվացման և, վերջապես, գյուղատնտեսական իրացման աշխատանքների մի բարդ համալիր։ Մեր հանրապետությունում այդ եղանակով արդեն յուրացված են ավելի քան 2.000 հեկտար հողեր։ Աղուտ հողերի յուրացումը կենսական անհրաժեշտություն է Արարատյան հարթավայրի շատ տնտեսությունների համար։ Դրանց արդյունավետ օգտագործման դեպքում հնարավոր է ստանալ մեծ եկամուտներ և բավական արագացնել կապիտալ ներդրումների փոխհատուցման ժամկետները։ Սակայն այդ նպատակով մինչև անցյալ տարի կատարված աշխատանքները չեն բավարարում տնտեսական զարգացման համար պահանջվող աճի տեմպերը։ ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշմամբ նախատեսված են կոնկրետ միջոցառումներ կապիտալ ներդրումների ավելացման, այդ աշխատանքների կոմպլեքսային կատարման համար անհրաժեշտ քիմիական մելիորանտների, հատուկ սարքավորումների արտադրման ու հատկացման համար, որոնք հնարավորություն կընձեռեն զգալիորեն արագացնելու աշխատանքի տեմպերը։

Գյուղատնտեսական հողահանդակների ռացիոնալ օգտագործման հարցում կարևոր նշանակություն ունի հողատեսքերի կուլտուր-տեխնիկական վիճակը, որի բարելավման աշխատանքները հատկապես մեծ ծավալ ստացան ՍՄԿԿ Կենտկոմի մայիսյան (1966 թ.) պլենումից հետո։ Անճանաչելի են դարձել Թալինի, Աշտարակի, Նաիրիի և մի շարք այլ շրջանների այն քարքարոտ հողակտորները, որոնք ազատվել են քարերից և հարթեցվել։ Այդ միջոցառումը, որը հսկայական նշանակություն ունի հողերի բերքատվության բարձրացման գործում, նախատեսվում է ավելի մեծ մասշտաբներով կատարել հատկապես նոր յուրացվող ոռոգելի հողային տարածքներում։ Սակայն շինարարական կազմակերպությունների մեքենայական պարկն այնքան սակավազոր է, որ հա-

ճախ կուլտուր-տեխնիկական աշխատանքները հետ են մնում և արգելակում ոռոգման ցանցի կառուցման տեմպերը։

«Հայկական ՍՍՀ-ում ոռոգելի հողագործության հետագա զարգացման և արդյունավետության բարձրացման միջոցառումների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի (1977 թ.) որոշման առանձնահատկություններից մեկն այն է, որ նրանում նախատեսվում է մելիորացիայի զարգացումը հանրապետությունում իրականացնել միայն կոմպլեքս եղանակով։ Դա նշանակում է, որ այսուհետև ոռոգելի տարածություններ ստեղծելու հետ միասին կկառուցվեն նաև նոր հարմարավետ բանավաններ՝ անհրաժեշտ կուլտուր-կենցաղային և արտադրական օբյեկտներով, որով հնարավորություն կստեղծվի հողերի մելիորացիայից անմիջապես հետո ձեռնամուխ լինելու դրանց գյուղատնտեսական յուրացմանը։ Թալինի և Հոկտեմբերյանի շրջաններում, օրինակ, մոտակա տարիներին ստեղծվող սովխոզների համար կկառուցվեն 8—10 բնակավայրեր։

Մելիորատիվ շինարարության ծավալն ավելի մեծ մասշտաբներ կունենա գալիք հնգամյակում։ Այդ նպատակների համար հատկացվող կապիտալ ներդրումները լրիվ իրացնելու և դրանք ապագայում ավելի մեծացնելու նպատակով վերոնշված որոշումով միջոցառումներ են նախատեսվում նաև համապատասխան շինարարական արտադրական բազա ստեղծելու համար։ Արդեն սկսվել են երկաթբետոնյա իրերի և խողովակների արտադրության, շինարարական մեխանիզմների վերանորոգման խոշոր գործարանների նախագծման և կառուցման աշխատանքները։ Խողովակների գործարանն սկսել է արտադրանք տալ, իսկ ամբողջ հզորությամբ այդ ձեռնարկության գործարկումը հնարավորություն կընձեռի զգալի չափով ընդլայնելու ոռոգման կատարելագործված սիստեմներ ստեղծելու աշխատանքները։

Ներկայումս հանրապետության համարյա բոլոր շրջաններում մելիորատիվ շինարարական աշխատանքներ են կատարվում։ Լավ տեմպերով են ընթանում հանրապետության իռիգացիոն խոշոր օբյեկտների՝ Ախուրյանի և Ջողազի ջրամբարների կառուցման աշխատանքները, դրանք շահագործման կհանձնվեն պլանով նախատեսված ժամկետներում՝ 1979 և 1980 թվականներին։ Անցյալ տարին «Գլխհայջրշին» վարչության և մելիորացիայի ու ջրային տնտեսության մինիստրության շինարարական կազմակերպությունները լավ ցուցանիշներով ավարտեցին։ Կատարվեցին նախատեսված բոլոր հզորությունների և հիմնական ֆոնդերի գործարկման պլանները։ Բոլոր նախադրյալները կան ասելու, որ այս տարի նույնպես հանրապետության մելիորատորները կկատարեն իրենց առաջադրանքները և դրանով իսկ կապահովեն ամբողջությամբ վերցրած տասներորդ հնգամյակի ծրագրի իրականացումը։

Առաջիկա տարիներին հողերի մելիորացիային հատկացվող կապիտալ ներդրումների ծավալը մեր հանրապետությունում նախատեսվում է ավելացնել 1,5—1,7 անգամ։ Կապիտալ ներդրումների այդպիսի մեծ աճ այս վերջին երեք հնգամյակում չի ունեցել ժողովրդական տնտեսության և ոչ մի ճյուղ։ Դա փայլուն ապացույցն է այն բանի, թե որքան մեծ ուշադրություն և հոգատարություն են հանդես բերում կուսակցությունն ու կառավարությունը մեր հանրապետության գյուղատնտեսության հետագա զարգացման նկատմամբ։

Հանդես գալով ՍՄԿԿ Կենտկոմի 1976 թ. հոկտեմբերյան պլենումում, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկեր Լ. Ի. Բրեժնևը նշեց. «Միանգամայն ակնհայտ է, որ հսկայական միջոցներ հատկացնելով մելիորացմանը, պետությունն իրավունք ունի սպասելու, որ ոռոգելի և չորացված հողերից կստացվի արտադրանքի համապատասխան աճ, որ կբարելավվի նրա որակը։ Այդ ուղղությամբ պետք է կողմնորոշել կադրերին, դրան պետք է ենթարկված լինի ջրատնտեսական և հողային մարմինների ամբողջ աշխատանքը»։

Մեր հանրապետությունում մելիորատիվ սիստեմների, հիդրոտեխնիկական կառուցվածքների, ջրհան կայանների և այլ կառուցվածքների արժեքն արդեն հասնում է 500 մլն ռուբլու։ Մելիորատիվ այդ հիմնական ֆոնդերի ար-



դյունավետ օգտագործմամբ է պայմանավորված գյուղատնտեսական մթերքների արտադրության պահանջվող աճը և բարձր որակը։

Հնգամյակի անցած տարիներին գերակատարվել են գյուղատնտեսական հիմնական կուլտուրաների արտադրության ու մթերումների պլանները։ Գյուղատնտեսության համախառն արտադրանքի միջին տարեկան ծավալն աճել է 22,3 տոկոսով, որը բարձր է հնգամյա պլանով նախատեսվածից։ Ինչպես նշվեց, երկրագործությունից ստացված մթերքների ավելի քան 80 տոկոսը տվել են ոռոգելի հողերը, որոնք կազմում են գյուղատնտեսության մեջ օգտագործվող բոլոր հողահանդակների միայն 20 տոկոսը։ Հասկանալի է, թե որքան մեծ է այդ, հիրավի, ոսկե ֆոնդի նշանակությունը գյուղատնտեսական մթերքների արտադրության դինամիկ աճն ապահովելու գործում։

Բայց արդյոք ոռոգելի հողերից մենք կարո՞ղ ենք ստանալ այն ամենը, ինչ դրանք ընդունակ են տալու։ Ցավով պետք է նշել, որ դեռ այդ հողերի ոչ բոլոր ռեզերվներն են օգտագործվում։ Վերցնենք բերքատվության հարցը։ Հանրապետության առաջավոր տնտեսություններն անցյալ տարի մեկ հեկտար ոռոգելի հողերից ստացել են 184,5 ց խաղող, 160 ց պտուղ, 480 ց շաքարի ճակնդեղ, 202,4 ց կարտոֆիլ, 531 ց բանջարեղեն և այլն։ Դրա հետ մեկտեղ միջին բերքատվությունն ամբողջ հանրապետությունում եղել է խաղողինը՝ 74,6, պտղինը՝ 32, շաքարի ճակնդեղինը՝ 309, կարտոֆիլինը՝ 98, բանջարեղենինը՝ 240 ցենտներ։ Սա խոսում է այն մասին, որ ոռոգելի հողերից շատ տնտեսություններ ցածր բերք են ստանում։ Միանգամայն անհանդուրժելի է այն, որ ոռոգելի հողերում հացահատիկային կուլտուրաների միջին բերքատվությունը կազմել է ընդամենը 22,4 ցենտներ, այն դեպքում, երբ բոլոր հողերից, հեկտարի հաշվով, ստացվել է 17,2, իսկ առաջավոր տնտեսություններում՝ 50 ցենտներ բերք։

Այս ամենից միայն մի հետևություն կարելի է անել՝ ամեն տեղ չէ, որ ոռոգելի հողերում կիրառվում են ագրոտեխնիկական կոմպլեքսի բոլոր պահանջները։

Մյուս կարևոր հարցը, որը մեծ անհանգստություն է պատճառում գյուղատնտեսության և ջրային տնտեսության մարմիններին, դա այն է, որ ամեն տարի ոռոգելի հողերի զգալի տարածություններ տարբեր, մեծ մասամբ, ոչ օբյեկտիվ պատճառներով, գյուղատնտեսության մեջ չեն օգտագործվում կամ օգտագործվելու դեպքում չեն ոռոգվում։ ՀՍՍՀ կենտրոնական վիճակագրական վարչության տվյալներով, 1978 թվականին հանրապետությունում չի օգտագործվել 6.100 հեկտար ոռոգելի հող, որից 1.106 հեկտարը՝ ցանքի սեզոնից հետո շահագործման հանձնելու պատճառով, 775 հեկտարը՝ բանվորական ուժի պակասի, 543 հեկտարը՝ ցելի տակ թողնելու, 307 հեկտարը՝ ցանքի վերակառուցման պատճառով և այլն։ Գյուղատնտեսության մեջ օգտագործված հողերից տարբեր պատճառներով չի ոռոգվել 26 հազար հեկտար։ Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ անհրաժեշտ ուշադրության և պատասխանատվության առկայության դեպքում դրանց մեծ մասը հնարավոր էր ժամանակին վերացնել և բոլոր ոռոգելի տարածություններն օգտագործել մեծ արդյունավետությամբ։

Ոռոգելի հողերի օգտագործման արդյունավետությունը բարձրացնելու գործում մեծ դեր կարող է խաղալ ներտնտեսային մելիորատիվ սիստեմների և կառուցվածքների տեխնիկական սպասարկման մակարդակի բարձրացումը։ Ներկայումս ջրօգտագործող տնտեսությունների տնօրինության տակ են գտնվում մոտ 40 մլն ռուբլու մելիորատիվ հիմնական ֆոնդեր, որոնց շահագործման համար այդ տնտեսությունները չունեն անհրաժեշտ մասնագետներ և տեխնիկական հնարավորություններ։ Ի կատարումն կուսակցության և կառավարության որոշումների, 1978 թվականին մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության շրջանային կազմակերպությունները տնտեսությունների հետ պայմանագրային կարգով 47 հազար հեկտար տարածության վրա կատարեցին ոռոգման, չորացման և ջրարբիացման, ներքին ցանցի, ջրհան կայանների տեխնիկական սպասարկման աշխատանքներ։

Անցյալ տարվա փորձը ցույց է տալիս, որ ներտնտեսային նշանակություն

ունեցող մելիորատիվ սիստեմների տեխնիկական սպասարկումը մելիորացիայի և ջրային տնտեսության մինիստրության շրջանային կազմակերպություններին հանձնելը կարող է զգալի չափով բարձրացնել այդ սիստեմների օգտակար գործողության գործակիցը, ապահովել ջրանցքները, կառույցները և հատկապես ջրհան կայանները մշտապես սարքին վիճակում պահելը, օգտագործվող ոռոգելի ջրի հաշվառումն ու տնտեսումը և, վերջապես, ազատել տնտեսության ղեկավարներին սիստեմների պահպանման և շահագործման հոգսից։ Այս տարի նախատեսվում է մոտ երկու անգամ ընդարձակել այդ աշխատանքների ծավալը։ Ցավոք, պետք է նշել, որ ներտնտեսային սիստեմների պահպանման և շահագործման այդ առաջավոր եղանակի նյութատեխնիկական ապահովման հարցը մինչև հիմա համապատասխան կազմակերպությունների կողմից չի լուծվել։

ՀԿԿ Կենտկոմը և հանրապետության կառավարությունը հսկայական աշխատանք են տանում ժողովրդական տնտեսության հետագա զարգացումն ապահովող հանգուցային հարցերի լուծման, այդ թվում՝ բնական ռեսուրսների պահպանման և դրանց ռացիոնալ օգտագործման նպատակով։ Այդ հարցերի թվում էապես կարևորվում է հանրապետության գյուղատնտեսական արտադրության հետագա զարգացումը՝ հողերի լայն մելիորացիայի միջոցով։ Դա գյուղատնտեսական արտադրության վրա բնության քմահաճույքների բացասական ազդեցությունը նվազագույնի հասցնելու հուսալի միջոցն է։

Հանրապետության կուսակցական, սովետական, գյուղատնտեսական, ջրատնտեսական մարմինների, նախագծող, կառուցող և շահագործող կազմակերպությունների խնդիրն է՝ ջանք չխնայել հողերի մելիորացիայի նպատակով ծրագրված միջոցառումները սահմանված ժամկետներում և բարձր որակով կատարելու համար։

---

# ԱՌԱՎԵԼ ՈՒՇԱԴՐՈՒԹՅՈՒՆ ԼԵՌՆԱՅԻՆ ՇՐՋԱՆՆԵՐԻ ԶԱՐԳԱՑՄԱՆԸ

**Ն. Մ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆ**
Տնտեսագիտության դոկտոր

ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍՈՒԹՅԱՆ ԱՍՊԱՐԵԶՈՒՄ հանրային արտադրության արդյունավետության բարձրացումն ունի երկու առանձնահատկություն. նախ, այն սերտորեն առնչվում է հողի ինտենսիվ օգտագործման և դրա հիման վրա արտադրանքի ծավալի զգալի ավելացման հետ։ Երկրորդ, դրա հետ մեկտեղ պահանջվում է լուծել բնական տարբեր գոտիներում աշխատողների համար շատ թե քիչ հավասար կենսապայմանների ապահովման խնդիրը։ Իսկ վերջինս, իր հերթին, գյուղի և քաղաքի միջև սոցիալ-տնտեսական էական տարբերությունների հաղթահարման կարևորագույն հարցերից մեկն է։

Գյուղի աշխատավորության համար տարբեր գոտիներում մոտավորապես հավասար կենսապայմանների ստեղծումը Հայկական ՍՍՀ-ում ունի առանձնահատուկ նշանակություն, նկատի առնելով նրա սակավահողությունը, բնակչության բարձր խտությունը, ուրբանիզացիայի բարձր մակարդակը և բնատնտեսական զգալի տարբերությունների առկայությունը փոքր տարածքի վրա։ Մեր հանրապետության տարբեր գոտիներում սոցիալ-տնտեսական պայմանների անհավասարությունն իր առանձնահատուկ արտահայտությունն է գտնում հատկապես լեռնային և հարթավայրային շրջանների տարբերությունների մեջ։ Դրանից էլ բխում են լեռնային շրջաններից բնակչության արագ տեղաշարժերը (միգրացիա)՝ իրենց անցանկալի հետևանքներով։ Ինչ խոսք, գյուղատնտեսության բնական պայմանների բազմազանությունը բնորոշ է Միության բոլոր հանրապետություններին։ Ինչ վերաբերում է Հայկական ՍՍՀ-ին, ապա այստեղ այդ բազմազանությունը, որն ընդունված է բնութագրել որպես ուղղաձիգ գոտիականություն, կենտրոնացված է չափազանց փոքր տարածքի վրա, և դա, իհարկե, հատուկ ուշադրություն է պահանջում ինչպես ուսումնասիրության, այնպես էլ դրանից բխող սոցիալ-տնտեսական հետևությունների ու եզրակացությունների առումով։

Ուսումնասիրություններից պարզվել է, որ հանրապետության 9 գյուղատնտեսական գոտիներից միայն երկուսում (Արարատյան դաշտ և հյուսիս արևելյան) կան հանրային ֆոնդերի և համախառն արտադրանքի ընդլայնված վերարտադրության համեմատաբար նորմալ պայմաններ, մինչդեռ մյուս բոլոր գոտիներում (որն ընդգրկում է հանրապետության տարածքի գրեթե 4/5-ը), ըստ էության կոլտնտեսություններում իրականացվում է հանրային արտադրանքի պարզ վերարտադրություն, իսկ որոշ շրջաններում (օրինակ՝ Վայոցձորում) տեղի է ունեցել արտադրության մակարդակի իջեցում։

Հանրապետությունում մեծ է տնտեսապես թույլ զարգացած կոլտնտեսությունների տեսակարար կշիռը։ Այդ են վկայում հետևյալ թվերը. 1976 թ. տըվյալներով ՀՍՍՀ 375 կոլտնտեսությունից 226-ը կամ դրանց ընդհանուր թվի 60 տոկոսը ազատվել են պետությանը եկամտահարկ վճարելուց, որպես ցածր շահութաբեր (մինչև 15 տոկոս շահութաբերություն ունեցող) կամ վնասով աշխատող տնտեսություններ։ Ինչպես հայտնի է, այժմ, ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումի որոշումների համաձայն, չհարկվող եկամտի սահմանը բարձրացվել է մինչև 25 տոկոս շահութաբերության։ Դրան համապատասխան,

Նախ նկատենք, որ շրջանների սոցիալ-տնտեսական ոչ բոլոր տարբերություններն են երևում այս թվերից, մեր վիճակագրությունն այժմ դրա մասին չի տալիս սպառիչ տեղեկություններ, իսկ որոշ հարցեր ցուցանիշներով առհասարակ հնարավոր չէ արտահայտել:

Բերված թվերից պարզ երևում է հանրապետության հատկապես լեռնային և հարթավայրային շրջանների տնտեսական զարգացման մակարդակների տարբերությունը: Այն առավել ակնառու է Զանգեզուր—Վայքի օրինակով: Այդ տնտեսական շրջանը, ընդգրկելով հանրապետության տարածքի ամենամեծ բաժինը (22,9 տոկոս), տալիս է դրա արդյունաբերության համախառն արտադրանքի 3,9 տոկոսը, որն ամենանվազ թիվն է նաև բնակչության մեկ շնչի հաշվով: Նկատելի է, որ այս շրջանը տարբերվում է նաև գյուղատնտեսության զարգացման մակարդակի առումով (ճյուղի համախառն արտադրանքը միավոր հողատարածությունից և մեկ բնակչի հաշվով). Արարատյան շրջանի մեկ հեկտար գյուղատնտեսական հանդակներից չորս անգամ ավելի շատ արտադրանք է ստացվում, քան Զանգեզուր—Վայքում: Այդքան մեծ տարբերությունը, իհարկե, չի կարելի վերագրել միայն բնական պայմաններին և մոռանալ տնտեսական այնպիսի գործոնների ուղղակի և անուղղակի ազդեցության մասին, ինչպիսիք են՝ խոշոր քաղաքների և արդյունաբերական կենտրոնների, շուկայի, բարեկարգ ճանապարհների, հաղորդակցության և կապի առկայությունը կամ բացակայությունը:

Արարատյան տնտեսական շրջանին (Արարատյան դաշտ և նախալեռնային գոտի) այսօր բաժին է ընկնում հանրապետության արդյունաբերության համախառն արտադրանքի $^2/_3$ մասը, իսկ մյուս շրջաններին՝ այդ ճյուղի արտադրանքի $^1/_3$-ը միայն: Ժամանակակից էկոնոմիկայի ամենագլխավոր ճյուղի նման անհավասարաչափ բաշխումը հանրապետությունում հանգեցրել է նրա տարածքի գերակշռող մասն ընդգրկող շրջանների տնտեսական զարգացման անբավարար մակարդակի: Դա արտահայտվում է հատկապես լեռնային շրջաններում փոքր և միջին քաղաքների անբավարար զարգացմամբ, որը բացասաբար է անդրադառնում այդ շրջանների սոցիալ-տնտեսական մակարդակի վրա:

Գյուղից քաղաք միգրացիան քաղաքատնտեսական օրենք է: Մի կողմից, գյուղատնտեսության մեջ ժամանակակից տեխնիկայի ներդրմամբ արագորեն կրճատվում է այդ ճյուղում զբաղվածների թիվը, մյուս կողմից՝ գյուղական բնակչության ազատվող մասը գալիս է քաղաք, զբաղվելով ավելի արտադրողական արդյունաբերական աշխատանքով, միաժամանակ ձեռք բերելով ավելի բարձր կենսամակարդակ: Սակայն այդ պրոցեսն անվերջանալի չէ և ունի իր բնական ու սոցիալական սահմանը: Ուրբանիզացման բարձր մակարդակի հասած երկրների խոշոր քաղաքների բնակչությունը վերջին տասնամյակների ընթացքում ո՛չ միայն չի ավելանում, այլև սկսել է նվազել, երբեմն զգալի չափերով: Այսօր արդեն տնտեսապես զարգացած երկրներին զբաղեցնում են լեռնային շրջանների լիարժեք բնակեցման և յուրացման հարցերը: Մասնագետները գտնում են, որ ժամանակն է՝ համապատասխան միջոցառումների կիրառմամբ կանխելու բնակչության արտահոսքը լեռնային շրջաններից. դա լուրջ գործնական խնդիր է:

Հայկական ՍՍՀ-ն ունի ուրբանիզացիայի բարձր մակարդակ, նրա բնակչության 65 տոկոսն ապրում է քաղաքներում: Դա պայմանավորված է այն օբյեկտիվ հանգամանքով, որ մեր հանրապետությունում գյուղատնտեսության էքստենսիվ զարգացման հնարավորությունները խիստ սահմանափակ են, ուստի և ժողովրդական տնտեսության ընդհանուր հաշվեկշռի մեջ համեմատաբար մեծ է արդյունաբերության տեսակարար կշիռը: Սակայն չի կարելի նորմալ համարել այն, որ հանրապետության բնակչության $^1/_3$-ը, իսկ քաղաքային բնակչության կեսը՝ կենտրոնացված է Երևանում, որ արդյունաբերական արտադրանքի $^2/_3$-ը թողարկվում է Արարատյան տնտեսական շրջանում, որի կենտրոնը դարձյալ Երևանն է:

Բնակչության և արդյունաբերության այդպիսի կենտրոնացումը մեծ մասամբ կատարվել և շարունակում է կատարվել ի հաշիվ տնտեսական մյուս, հատկապես լեռնային շրջանների: Ժամանակն է հօգուտ վերջիններիս վերաբաշխել հանրապետության արտադրաուժերը, նյութական, աշխատանքային և ֆինանսական ներդրումները: Կարևոր է հաշվի առնել նաև հանրապետության սակավահողությունը, աշխարհագրական դիրքը և ուրիշ առանձնահատկություններ, որոնք ավելի են շեշտում հարցադրման կարևորությունը: Հետևաբար, չնայած գյուղական բնակչության աստիճանական նվազման պրոցեսի օբյեկտիվությանը, լեռնային շրջաններից բնակչության արագ արտահոսքը, այլ խոսքով՝ ընդարձակ տարածությունների բնակազրկումը պետք է դիտվի իբրև անցանկալի երևույթ, որը բնավ չի նպաստում հանրապետության առաջընթացին, չի արդարացվում տնտեսական, սոցիալական և հեռանկարային նկատառումներով: Հետևաբար, երբ քննում ենք լեռնային շրջանների սոցիալ-տնտեսական պրոբլեմները, ապա դրանց չպետք է մոտենալ միմիայն տնտեսական նպատակահարմարության կամ, ասենք, կապիտալ ներդրումների առավել արդյունավետ օգտագործման տեսակետից՝ մոռանալով այդ պրոբլեմների բազմաթիվ այլ առումները:

Միանգամայն օրինաչափ է Հայաստանի կոմկուսի և կառավարության հետևողական կուրսը հանրապետության լեռնային շրջանների էկոնոմիկայի զարգացման նպատակով, մասնավորապես, այդ շրջաններում արդյունաբերական ձեռնարկությունների և դրանց մասնաճյուղերի (արտադրամասերի, բաժանմունքների) տեղաբաշխման, տրանսպորտի և կապի միջոցների զարգացման համար: Այն, ինչ խոսք, հուսալի միջոց է ո՛չ միայն բնակչության զբաղվածության ապահովման, այլև մի շարք սոցիալական հարցերի լուծման համար:

Այս տեսակետից հիշատակության արժանի է Կամոյի շրջանի օրինակը, որի բոլոր 15 գյուղերում (սովխոզներում) այժմ գործում են տարբեր արդյունաբերական ձեռնարկություններ և մասնաճյուղեր: Աշխատանքային ռեսուրսների զբաղվածությունը տեղում ապահովելու շնորհիվ աշխատուժի նախկինում մեծ արտագնացությունը գրեթե լիովին հաղթահարվել է: Դրա հետ մեկտեղ շրջանի բոլոր գյուղերում գործում են մանկապարտեզներ և մանկամսուրներ, իրագործվել է մեկ հերթափոխով դպրոցների պարապմունքը, լուծվում են նաև սոցիալական շատ այլ հարցեր:

Միաժամանակ, կիրառվող միջոցառումները զերծ չեն էական թերություններից և վրիպումներից: Տարբեր վայրերում կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունները կամ մասնաճյուղերը տեխնիկապես և տեխնոլոգիապես միմյանց հետ թույլ են կապված, ուստի դրանց աշխատանքը և արդյունքը կոոպերացման չի ենթարկվում տեղում: Այդ ձեռնարկությունները տարբեր արտադրանք են տալիս և ենթարկվում են տարբեր գերատեսչությունների:

Մյուս հանգամանքն այն է, որ հիմնական շեշտը դնելով արդյունաբերական ձեռնարկությունների (մասնաճյուղերի և այլն) ըստ ամենայնի տարածման վրա, որը միանգամայն ճիշտ է, լեռնային շրջաններում անհամեմատ քիչ ուշադրություն է հատկացվում նյութական արտադրության այնպիսի կարևոր ճյուղերի զարգացմանը, ինչպիսիք են՝ ճանապարհաշինությունը, տրանսպորտը, կապը, ինչպես նաև ոչ-արտադրական և սպասարկման ոլորտը կամ, այսպես կոչված, ինֆրակառուցվածքը: Մինչդեռ առանց դրա հնարավոր չէ ապահովել լեռնային շրջանների էկոնոմիկայի ու կուլտուրայի համաչափ զարգացումը, հետևապես և՝ կադրերի, բնակչության ամրացումը տեղում:

Նշված և մի շարք այլ թերությունները հետևանք են այն բանի, որ լեռնային շրջաններում կենսագործվող միջոցառումները հաճախ ունեն պատահական բնույթ և առ այսօր չեն բխում այդ շրջանների սոցիալ-տնտեսական կոմպլեքսային զարգացման ծրագրից: Այդ պրոբլեմի լուծումը պահանջում է ամենից առաջ սկզբունքորեն նոր մոտեցում, որի հիմքում պետք է դրվի հանրապետության ազգային եկամտի և կապիտալ ներդրումների վերաբաշխման անհրաժեշտությունը՝ ուղղված լեռնային շրջանների սոցիալ-տնտեսական և կուլտուրական զարգացման խնդիրների լուծմանը:

Այս կապակցությամբ անհրաժեշտ է լեռնային շրջաններում տրանսպորտի, ճանապարհաշինության և կապի միջոցների արագ զարգացում, որոնք կակտիվացնեն այդ շրջանների տնտեսական կյանքը և ավելի սերտորեն կկա-

պեն դրանք հանրապետության մյուս շրջանների հետ, կուժեղացնեն դրանց տնտեսական փոխադարձ կապերը։ Առանձնապես կարևոր նշանակություն ունեն Վարդենիս—Ջերմուկ—Զանգեզուր երկաթգծի նախագծումն ու կառուցումը, օդանավակայանների շինարարությունը և այլն։ Ինչ վերաբերում է արդյունաբերական ձեռնարկությունների կամ մասնաճյուղերի կառուցմանը, ապա դա պետք է կատարվի այն հաշվով, որ հետագայում դրանք տվյալ տնտեսական շրջանի (կամ մի քանի շրջանների) սահմաններում կոոպերացվեն։

Հարկ է նաև արագացնել փոքր կամ միջին քաղաքի զարգացումը յուրաքանչյուր տնտեսական (եթե հնարավոր է և վարչական) շրջանում, որպես տվյալ շրջանի ձգողական կենտրոն, որը արդյունաբերական և այլ արտադրություններից բացի կկենտրոնացնի նաև ամբողջ ինֆրակառուցվածքը (արտադրական և ոչ-արտադրական), ներառյալ կադրերի պատրաստումը, առևտուրը, զանազան ծառայությունները, կուլտուրական և մարզական օջախների ցանցը և այլն։ Փոքր կամ միջին քաղաքները պետք է ապահովեն տվյալ շրջանի աշխատանքային ռեսուրսների զբաղվածությունը, բնակչության շարժունակությունը շրջանի ներսում և միջշրջանային առումով, բնակչության ամենօրյա նյութական և կուլտուրական պահանջների բավարարումը, անձի սոցիալական զարգացման որոշակի պայմանների ստեղծումը։

Յուրաքանչյուր շրջանի փոքր կամ միջին քաղաքը կոչված է ստանձնելու այն սոցիալ-տնտեսական ֆունկցիաները, որոնք այսօր մասնակիորեն «լուծում» է գյուղական բնակավայրում տեղադրվող արդյունաբերական այս կամ այն ձեռնարկությունը։ Պատկերավոր ասած, փոքր և միջին քաղաքները պետք է յուրատեսակ բուֆերային գոտի հանդիսանան հանրապետության լեռնային շրջանների և խոշոր քաղաքների միջև, որը կդանդաղեցնի բնակչության միգրացիան լեռնային շրջաններից և միաժամանակ կնպաստի նրա համար ժամանակակից կենսապայմանների ապահովմանը։

Առանձին ուշադրություն պետք է դարձնել լեռնային շրջաններում ոչ-արտադրական ոլորտի, հատկապես տուրիզմի, հանգստավայրերի և առողջարանների լայն ցանցի զարգացման, դրա հետ մեկտեղ՝ ծառայությունների ոլորտի ըստ ամենայնի ընդարձակման վրա։

Նյութական արտադրության և ոչ-արտադրական ոլորտի ժամանակակից ճյուղերի ըստ ամենայնի զարգացումը, բնականաբար, նոր խթան կհանդիսանա լեռնային շրջանների գյուղատնտեսության զարգացմանը, նրան կհաղորդի մերձքաղաքային բնույթ։ Այդ կապակցությամբ անհրաժեշտ է պլանավորել ինչպես գյուղատնտեսական հումքի վերամշակման, այնպես էլ հատկապես պահեստային-սառնարանային համապատասխան կարողություններ՝ գյուղատնտեսական մթերքների արտադրանքի պահպանման և վաճառքի համար։

Այս առնչությամբ կարևոր է նաև բնակչության միջհանրապետական միգրացիայի պլանային կարգավորումը։ Հայտնի է, որ ամեն տարի Հայկական ՍՍՀ են գալիս հազարավոր մարդիկ ՍՍՀՄ մյուս հանրապետություններից և արտասահմանից։ Ընդ որում, եթե արտասահմանից եկող հայերի քանակը և տեղաբաշխումը պլանավորվում է, ապա, ցավոք, նույնը չի կարելի ասել ՍՍՀՄ մյուս հանրապետություններից եկողների մասին։ Մինչդեռ նրանք բնակչության մեխանիկական աճի գերակշռող զանգվածն են կազմում։ Մեր կարծիքով, ժամանակն է այդ հոսքը ևս պլանավորել ու համապատասխան տնտեսական, վարչական և այլ լծակների միջոցով մյուս հանրապետություններից, ինչպես նաև արտասահմանից եկողների մի մասին տեղաբաշխել լեռնային շրջաններում։

Վերջապես, անհրաժեշտ են միջոցառումներ լեռնային շրջանների գյուղատնտեսության ըստ ամենայնի ինտենսիվացման և ինդուստրացման, գյուղի աշխատավորի անհատական և հասարակական շահերի ավելի ճիշտ զուգակցման նպատակով, որը պետք է հանգեցնի մի կողմից երկրագործության և անասնապահության ավելի բարձր արդյունավետության, մյուս կողմից՝ հողային ֆոնդի ավելի լրիվ օգտագործման։

Լեռնային շրջանների սոցիալ-տնտեսական զարգացման հարցերը արագ լուծում են պահանջում։

---

# ՔԱՂԱՔԱՅԻՆ ԵՎ ԳՅՈՒՂԱԿԱՆ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ԿԵՆՍԱՄԱԿԱՐԴԱԿԻ ՄԵՐՁԵՑՈՒՄԸ

**Մ. Խ. ՉՈԲԱՆՅԱՆ**
Տնտեսագիտության թեկնածու

ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԱՐԴԿԱՆՑ նյութական ու հոգևոր հարաճուն պահանջմունքների առավել լրիվ բավարարումը կոմունիստական կուսակցության տնտեսական քաղաքականության հիմնական նպատակն է։

Զարգացած սոցիալիզմի պայմաններում, ամբողջ ժողովրդական տնտեսության անընդհատ աճի, գիտատեխնիկական հեղափոխությունը հասարակության սոցիալիստական կազմակերպման առավելությունների հետ միացնելու հիման վրա, նշում է ընկեր Լ. Ի. Բրեժնևը, հնարավոր է դարձել էկոնոմիկայի նկատելի շրջադարձը դեպի մարդկանց նյութական և կուլտուրական բազմատեսակ պահանջմունքների առավել լրիվ բավարարումը։ Այլ կերպ ասած, այժմ սոցիալիստական արտադրության բարձրագույն նպատակը ուղղակի և անմիջականորեն կանգնում է կուսակցության պրակտիկ քաղաքականության կենտրոնում (տե՛ս Լ. Ի. Բրեժնև, Պատմական բնագիծ կոմունիզմի ճանապարհին, «Հայաստան» հրատ., 1977, էջ 6)։

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի հուլիսյան պլենումը շեշտեց, որ արդի պայմաններում գյուղատնտեսության արտադրաուժերի զարգացումը սերտորեն կապված է հատկապես գյուղական կյանքի սոցիալական հարցերի լուծման հետ, որ գյուղական բնակչության բարեկեցության, կուլտուրայի ու կենցաղի աճը մեր ժամանակի հատկանշական գծերից մեկն է։ Բացի դրանից, կոմունիստական կուսակցությունը, մշակելով սոցիալական զարգացման և ժողովրդի կենսամակարդակի բարձրացման ծրագիրը, ելնում է այն բանից, որ հասունի սոցիալիստական էկոնոմիկան երկրի միասնական, ժողովրդատնտեսական կոմպլեքսի որակական փոփոխությունների հետ մեկտեղ պայմանավորում է աշխատավորների, այդ թվում գյուղական բնակչության բարեկեցության ավելի բարձր մակարդակ։

ՍՄԿԿ XXV համագումարի մշակած սոցիալական ծրագրում և կուսակցության Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի որոշումներում կարևորագույն տեղ է գրավում բնակչության բարեկեցության բարձրացման, մասնավորապես, քաղաքային և գյուղական բնակչության կենսամակարդակի մերձեցման միջոցառումների ծավալուն կոմպլեքսը։

Ուստի, այս առումով, անհրաժեշտ ենք համարում անդրադառնալ այդ բարդ պրոբլեմի լոկ մի քանի հարցերին։ Տասներորդ հնգամյակում խնդիր է դրված. «Գյուղատնտեսական արտադրության ինդուստրացումն արագացնելու և գյուղում կուլտուր-կենցաղային սպասարկումը բարելավելու հիման վրա ապահովել քաղաքային ու գյուղական բնակչության կյանքի մակարդակների ու պայմանների հետագա մերձեցումը, քաղաքի և գյուղի միջև եղած սոցիալ-տնտեսական և կուլտուր-կենցաղային տարբերությունների հետևողական հաղթահարումը» (ՍՄԿԿ XXV համագումարի նյութերը, էջ 248)։

Կուսակցության ծրագրային այդ պահանջը օրենքի ուժ է ստացել մեր նոր Սահմանադրությունում։

Հաջողությամբ են իրականացվում նաև աշխատավորների կենցաղային սպասարկման բարելավմանը, նրանց ազատ ժամանակի ռացիոնալ օգտագործմանը նվիրված միջոցառումները։ Մեր հանրապետությունում կենցաղային ծառայության ձեռնարկությունների թիվը 1960 թվականի 1.525-ից 1977 թվականին հասավ 3.956-ի, իսկ գյուղական վայրերում՝ 332-ից 1.351-ի։ Ավելացավ կենցաղային ծառայությունների ծավալը. քաղաքային բնակչության մեկ շնչի հաշվով, 1960 թվականի 6,7 ռուբլուց այն հասավ 24,3, իսկ գյուղում՝ 0,5 ռուբլուց մինչև 11,3-ի։ Ինչպես երևում է, քաղաքի համեմատությամբ, գյուղում կենցաղային ծառայությունների ծավալն աճել է ավելի արագ տեմպերով, սակայն նրանց միջև տարբերությունը դեռևս զգալի է։ Այդ գործում կարևոր նշանակություն ունի ո՛չ միայն կենցաղային ծառայությունների ծավալի ավելացումը, հատկապես գյուղական վայրերում, այլև կենցաղսպասարկման օբյեկտների ռացիոնալ տեղաբաշխումը հանրապետության տարածքում։ Այս հանգամանքի վրա հարկ է հրավիրել հանրապետության պետպլանի և համապատասխան մինիստրությունների ուշադրությունը։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումն առանձնահատուկ ուշադրություն նվիրեց գյուղում սոցիալական շինարարության հարցերին։ Մեր երկրում կուսակցությունը հետևողականորեն իրականացնում է գյուղի բնակիչների բնակարանային և կուլտուր-կենցաղային պայմանների արմատական բարելավման կուրս։ Բավական է ասել, որ վերջին 13 տարում գյուղական վայրերում կառուցվել են 450 մլն քմ ընդհանուր տարածությամբ բնակելի տներ։ 1965 թվականից հետո տիպային նախագծերով կառուցվել են նախադպրոցական հիմնարկություններ մոտ 2 մլն երեխայի, հանրակրթական դպրոցներ՝ 11 մլն աշակերտների համար, ակումբներ և կուլտուրայի պալատներ՝ 8 միլիոն ընդհանուր տեղով, առողջապահական, կենցաղսպասարկման, սպորտային շատ օբյեկտներ (տե՛ս Լ. Ի. Բրեժնև, ՍՍՀՄ գյուղատնտեսության հետագա զարգացման մասին, «Հայաստան» հրատ., 1978, էջ 48, 49)։

Մեր հանրապետությունում նույնպես, հատկապես վերջին տարիներին, բնակարանային շինարարության աճը հնարավորություն ընձեռեց ավելացնելու քաղաքացուն տրամադրվող բնակելի տարածության միջին մակերեսը և անցնելու ընտանիքին մեկուսացված բնակարան բաշխելու սկզբունքին։ Տասներորդ հնգամյա պլանով նախատեսվում է 1980 թվականին հանրապետության քաղաքային մեկ բնակչի ապահովվածությունը բնակելի տարածությամբ հասցնել 10,9, իսկ գյուղական մեկ բնակչինը՝ 12 քմ։ Միաժամանակ կբարելավվեն բնակելի ֆոնդի կոմունալ հարմարությունները (ջրմուղ, կոյուղի, կենտրոնական ջեռուցում, գազ և այլն)։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը պահանջեց ավելի խոր շրջադարձ կատարել գյուղի աշխատավորների կուլտուր-կենցաղային պայմանների բարելավման և գյուղում շինարարության զարգացման նպատակով։ Կուսակցության այդ պահանջի կատարումը, ինչպես նշեց ՀԿԿ Կենտկոմի 1978 թ. հուլիսյան պլենումը, որոշիչ է լինելու նաև մեր հանրապետության համապատասխան կազմակերպությունների հետագա գործունեության մեջ։

ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան պլենումը միաժամանակ նշեց, որ ներկայումս գյուղատնտեսական աշխատանքի պայմանների ու բնույթի՝ ժողովրդական տնտեսության մյուս ճյուղերի, ամենից առաջ արդյունաբերության մեջ աշխատանքի բնութագրերի հետևողական մերձեցման ամենավճռական գործոնը գյուղատնտեսական արտադրության հետագա ինտենսիվացումն ու ինդուստրացումն է։ Կուսակցության առաջադրած այդ խնդրի հաջող կենսագործումը ամուր հիմք է հանդիսանում գյուղատնտեսական և արդյունաբերական աշխատանքի վարձատրության մակարդակների, գյուղի և քաղաքի կենսապայմանների հետագա մերձեցման համար։

---

## Կուսակցական շինարարության

## տեսություն և պրակտիկա

# ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԴԱՍՏԻԱՐԱԿՈՒԹՅԱՆ ՀԻՄՔԸ

**Լ. Հ. ՄԵԼԻՔՅԱՆ**
ՀԿԿ Անիի շրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ

ՄԱՐԱԼԻԿԻ ԼՈՒՍԱՏԵԽՆԻԿԱԿԱՆ էլեկտրասարքավորումների գործարանը Անիի շրջանի ամենամեծ արդյունաբերական ձեռնարկությունն է։ Այն մոտ երկու տասնամյակի կենսագրություն ունի։ Այստեղ ձևավորվել է համերաշխ ու միախոհ մի կոլեկտիվ, որի հետ տարվող գաղափարաքաղաքական աշխատանքը կուսկազմակերպությունը համարում է իր առաջնահերթ խնդիրը։ Գաղափարական աշխատանքի ներգործունության ապահովման և դրա արդյունավետության բարձրացման համար գործարանում ստեղծվել է կոմունիստների ու կոմերիտականների քաղուսուցման, աշխատավորների տնտեսագիտական կրթության և կոմունիստական աշխատանքի դպրոցների լայն ցանց։ Բոլոր կոմունիստները, կոմերիտականները, անկուսակցականներն ընդգրկված են ուսուցման տարբեր օղակներում։

Կուսկազմակերպության և նրա բյուրոյի (քարտուղար՝ Ն. Ղուկասյան) ամենօրյա ուշադրության կենտրոնում են քաղաքական լուսավորության, աշխատավորների տնտեսագիտական կրթության հարցերը։ Լուծելով կոլեկտիվի բոլոր անդամներին քաղաքական լուսավորության և տնտեսագիտական կրթության սիստեմում ընդգրկելու խնդիրը՝ կուսբյուրոն ջանում է անընդհատ բարձրացնել պարապմունքների գաղափարատեսական մակարդակը, կատարելագործել ուսուցման պրոցեսի ղեկավարման ոճն ու մեթոդները։ Կուսբյուրոն, ԼԿԵՄ կոմիտեի և պրոպագանդիստների հետ միասին, ձգտում է ստեղծել կրթական, գաղափարական մակարդակով համեմատաբար միատարր լսարան։ Անտարակույս, նման պայմաններում ապահովվում է ուսուցման ավելի բարձր արդյունավետություն, խթանվում են ունկնդիրների ակտիվությունն ու հետաքրքրասիրությունը։

Քաղաքական լուսավորության վիճակը պարբերաբար ուսումնասիրվում ու քննարկվում է կուսժողովներում, բյուրոյի նիստերում։ Լսվում են պրոպագանդիստների և կոմունիստ-ունկնդիրների հաշվետվությունները։ Հարցը նախապատրաստելիս կուսբյուրոն երբեմն դիմում է նաև կուսշրջկոմի բաժինների օգնությանը։ Հարցաթերթիկների մշակմանը, պարապմունքների ունկընդրումներին անհրաժեշտության դեպքում մասնակցում են կուսշրջկոմի հրահանգիչները, պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի աշխատողները, որոնք իրենց խորհուրդներով օգնում են թե՛ կուսկազմակերպությանը, թե՛ պրոպագանդիստներին՝ բարելավելու ուսուցման վիճակը։ Պրակտիկա է դարձել անմիջապես պարապմունքների հաջորդ օրը կուսբյուրոյի քարտուղարի մոտ պրոպագանդիստներին զրույցի հրավիրելը։ Այդ ժամանակ ծագում են լուծման

կարոտ ոչ քիչ հարցեր։ Թեև այստեղ բացառված են պարապմունքների ձախողումները, բայց լինում են անհարգելի բացակայություն, առանձին ունկնդիրների կողմից հանձնարարությունների թերի կատարման դեպքեր։ Պրոպագանդիստներից ստացված ինֆորմացիան օգնում է կուսբյուրոյին՝ անհապաղ միջոցներ ձեռնարկելու նկատված թերությունները վերացնելու համար։

Կուսբյուրոն հոգացել է պրոպագանդիստական կադրերի որակական կազմի բարելավման և գաղափարական աճի մասին. 14 պրոպագանդիստներից 12-ն ունեն բարձրագույն կրթություն, պրոպագանդիստական աշխատանքի հարուստ փորձ։ Պրոպագանդիստներին և ունկնդիրներին տեսական-մեթոդական օգնություն ցույց տալու նպատակով գործարանում ստեղծվել է «Օգնություն պրոպագանդիստին և ունկնդիրներին» անկյուն, ուր ցուցադրված են ծրագրով ուսումնասիրվող գրականությունը, ՍՄԿԿ XXV և ՀԿԿ XXVI համագումարների նյութերը, ձեռնարկության տնտեսական ցուցանիշներն արտացոլող դիագրամներ, տեղեկություններ։ Նախադրյալներ են ստեղծված գործարանում հասարակական հիմունքներով քաղլուսկաբինետ կազմակերպելու համար։

Աշխատավորների քաղաքական ու տնտեսագիտական կրթության գաղափարաքաղաքական մակարդակի և պարապմունքների արդյունավետության բարձրացումը, ինչպես մենք դրանում համոզվել ենք սեփական փորձով, կոլեկտիվի անդամների աշխատանքային ու հասարակական ակտիվության աճի, պետական պլանների և ստանձնած սոցիալիստական պարտավորությունների կատարման կարևոր գործոն է։ «Պրոպագանդիստը՝ արդյունավետության և որակի հնգամյակին» շարժման ակտիվ մասնակիցներ են գլխավոր ինժեներ Ս. Հարությունյանը, դիրեկտորի տեղակալ Լ. Նազարյանը, գլխավոր տեխնոլոգ Հ. Գևորգյանը, մասնագետներ Հ. Ապինյանը, Պ. Զարչօղլյանը, Թ. Գրիգորյանը։ Նրանց օգնությամբ 170 ունկնդիրներ մշակել են 1979 թվականի իրենց անհատական սոցպարտավորությունները, 41-ը հանդես են եկել արտադրության կազմակերպման և արտադրանքի որակի բարելավման վերաբերյալ իրենց ռացիոնալիզատորական առաջարկներով ու նախաձեռնություններով, որոնց ներդրման շնորհիվ 1978 թ. ստացվել է 43.531 ռուբլու պայմանական օգուտ։ Արտադրանքի ընդհանուր ծավալի 22,4 տոկոսը թողարկվում է որակի պետական նշանով։ Տնտեսագիտական կրթության և կոմունիստական աշխատանքի դպրոցների 65 ունկնդիրներ արժանացել են կոմունիստական աշխատանքի հարվածայինի կոչման։ Ձեռնարկությունը «Հայէլեկտրալույս» միավորումում լավագույններից է։ Տասներորդ հնգամյակի երրորդ տարվա չորրորդ եռամսյակում նրա կոլեկտիվը հաղթող ճանաչվեց ինչպես միավորման, այնպես էլ Անիի շրջանի արդյունաբերական ձեռնարկությունների միջև ծավալված սոցմրցությունում։

Լուսատեխնիկական էլեկտրասարքավորումների գործարանի օրինակը ցայտուն վկայությունն է այն բանի, որ կոմունիստների և անկուսակցականների քաղաքական ու տնտեսագիտական ուսուցման ճիշտ կազմակերպումը մեծապես նպաստում է ո՛չ միայն նրանց գաղափարական կոփվածքին ու քաղաքական ակտիվության աճին, այլև աշխատանքային խանդավառության բարձրացմանը, նախաձեռնության զարգացմանը, կոլեկտիվի առջև ծառացած տնտեսական ու սոցիալ-կուլտուրական խնդիրների լուծմանը։

Օրինակը, իհարկե, եզակի չէ։ Ջիթհանքովի, Զորակապի, Մարալիկի, Աղինի, Սարակապի, Լուսաղբյուրի, Գուսանագյուղի կոլտնտեսային, Շիրակավանի, Հայկաձորի սովխոզային, Ախուրյանի ջրամբարի շինարարության, Մարալիկի շինանյութերի և իրերի կոմբինատի, համարյա բոլոր դպրոցական և մի շարք ուրիշ սկզբնական կուսկազմակերպություններ մշտապես զբաղվում են քաղաքական և տնտեսագիտական ուսուցման բարելավման, պարապմունքների տեսական մակարդակի բարձրացման հարցերով, ուսումնասիրվող նյութերը սերտորեն շաղկապում կոլեկտիվներին առաջադրված խնդիրների հետ։ Միանգամայն բնական է, որ նշված կոլեկտիվներում հաստատվել է պետական ու աշխատանքային ամուր կարգապահություն, բարձրացել է նրանց դերը աշխատողների դաստիարակության գործում։ Նրանք հաջողությամբ են կատարում



ստանձնած սոցիալիստական պարտավորությունները։ Շատ բնակավայրերում վերջին երեք տարիներին չեն արձանագրվել հասարակական կարգի և սոցիալիստական համակեցության կանոնների կոպիտ խախտումների դեպքեր։

Աշխատավորների քաղաքական ուսուցումը դարձել է կոմունիստների և անկուսակցականների գաղափարաքաղաքական կոփման, պրոլետարական ինտերնացիոնալիզմի պրոպագանդման, կոմունիստական համոզմունքների ձևավորման իսկական դպրոց։ Մարքս-լենինյան տեսական ժառանգության, ՍՄԿԿ-ի պատմական փորձի, նրա ներքին ու արտաքին քաղաքականության նկատմամբ աշխատավորների աճող հետաքրքրասիրության ապացույցը քաղաքական լուսավորության սիստեմում անկուսակցականների թվի անշեղ աճն է։ Մեր շրջանում անկուսակցականները կազմում են բոլոր ունկնդիրների 40,2 տոկոսը։

Սկզբնական կուսկազմակերպությունները հոգում են, որպեսզի կոմունիստական շինարարության տեսության ու պրակտիկայի հարցերում խորամուխ լինեն նաև նրանք, ովքեր պատրաստվում են ընդունվելու ՍՄԿԿ շարքերը։ Վերջին տարիներին ծավալած հետևողական աշխատանքի շնորհիվ շրջանում կուսակցության շարքերն ընդունվողները եղել են կուսակցական կամ կոմերիտական քաղաքական լուսավորության սիստեմի ունկնդիրներ։

Հարկ չկա ապացուցելու, թե որքան կարևոր է, երբ կուսկազմակերպությունները համալրվում են ո՛չ միայն արտադրական բարձր ցուցանիշներ, այլև գաղափարական բավարար պատրաստականություն ունեցող երիտասարդ բանվորներով, կոլտնտեսականներով, մտավորականության ներկայացուցիչներով։ Փորձը ցույց է տվել, որ համալրման նկատմամբ նման մոտեցումը լավ նախապայմաններ է ստեղծում կուսակցական կազմակերպությունների մարտունակության, աշխատավորների շրջանում կոմունիստների հեղինակության բարձրացման համար։ Տեսական պրոբլեմային սեմինարների, մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցների ունկնդիրների մեծ մասը, որպես ագիտատորներ, քաղինֆորմատորներ, աշխատավորական լայն մասսաներին է հասցնում կուսակցության ճշմարտացի խոսքը, նրանց իրազեկ պահում ՍՄԿԿ ու սովետական պետության վարած ներքին ու արտաքին քաղաքականության հարցերին, կոլեկտիվների ուժերը մոբիլիզացնում առաջադրված խնդիրների կենսագործման համար։ Կուսակցական ուսուցման բարձր օղակի տասնյակ ունկնդիրներ ՍՄԿԿ շարքերն ընդունվելուց հետո առաջ են քաշվում պրոպագանդիստական աշխատանքի։ Այսպիսով, կուսակցական ուսուցման սիստեմը ինչ-որ չափով դառնում է նաև պրոպագանդիստական կադրերի ռեզերվի պատրաստման օղակ։

ՍՄԿԿ XXV համագումարը խնդիր դրեց առավել ուշադրություն նվիրել կոմունիստների և անկուսակցականների լայն զանգվածներին կուսակցական ուսուցման մեջ ընդգրկելուն, այդ աշխատանքի բովանդակության հարստացմանը, դրա տեսական մակարդակի բարձրացմանը։ Համագումարի այս պահանջն արտացոլվեց «ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների լույսի ներքո կուսակցական ուսուցման խնդիրների մասին» ՍՄԿԿ Կենտկոմի որոշման մեջ, որտեղ հստակորեն շարադրված են կուսկազմակերպությունների հետագա աշխատանքի ուղղություններն այդ բնագավառում։ Այդ որոշումը մենք հանգամանորեն քննարկեցինք կուսշրջկոմի բյուրոյում։ Կենտկոմի որոշման կենսագործման նպատակով խնդիր դրվեց կազմակերպորեն ամրապնդել և զարգացնել քաղաքական լուսավորության և աշխատավորների տնտեսագիտական կրթության ցանցը, բարձրացնել պարապմունքների տեսական մակարդակը, ուսուցումն ավելի սերտորեն առնչել կյանքին, արտադրության կոնկրետ խնդիրներին, կատարելագործել պրոպագանդիստների հետ տարվող աշխատանքը։

Կուսշրջկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժինը, կուսակցական ուսուցման մեթոդխորհուրդը պլանավորում և անցկացնում են պարապմունքների մասսայական կամ ընտրովի (ըստ օղակների) ունկնդրումներ, ամփոփում արդյունքները և դրանք քննարկում կամ կուսշրջկոմի բյուրոյում կամ՝

բաժնում։ Առանձին հարցերի առթիվ զրույցների են հրավիրվում քարտուղարները, պրոպագանդիստները, տնտեսական ղեկավարները։ Քաղաքական ուսուցման արդյունքների խոր վերլուծությունը մեզ հուշում է, թե ո՛ր կազմակերպությունները և ի՛նչ խնդիրներ պետք է պահել ուշադրության կենտրոնում։ Ըստ այդմ՝ պլանավորվում է կուսշրջկոմի բյուրոյի, բաժնի և մեթոդխորհրդի աշխատանքը։

Ախուրյանի ջրամբարի շինարարների կոլեկտիվը չորս տարվա պատմություն ունի։ Այն կոմպլեկտավորվել է հանրապետության և Միության տարբեր կառույցներից եկած բանվորներով։ Շրջկոմը և կառույցի նորաստեղծ կուսկազմակերպության բյուրոն առանձնահատուկ եռանդով ձեռնամուխ եղան կոլեկտիվի կոմունիստական դաստիարակության կոմպլեքսային խնդիրների լուծմանը։ Բոլոր կոմունիստներն ու կոմերիտականները, անկուսակցականները ընդգրկվեցին քաղաքական լուսավորության, տնտեսագիտական կրթության սիստեմում և կոմունիստական աշխատանքի դպրոցներում։ Պրոպագանդիստներ առաջադրվեցին քաղաքականապես հասուն, գաղափարական աշխատանքի փորձ և տեսական անհրաժեշտ պատրաստականություն ունեցող արտադրության կոմունիստ ղեկավարներ, մասնագետներ։

Միայն 1978 թ. շրջկոմի բյուրոն երկու անգամ անդրադարձավ Ախուրյանի ջրամբարի շինարարության կուսկազմակերպության աշխատանքին։ Նախ՝ ուսումնասիրվեց և քննարկվեց գաղափարաքաղաքական, աշխատանքային և բարոյական դաստիարակության, իսկ ապա՝ աշխատավորների տնտեսագիտական կրթության վիճակը։ Շրջկոմը կուսկազմակերպության ուշադրությունը հրավիրեց կոլեկտիվի բոլոր անդամների մարքս-լենինյան կրթության տեսական բարձր մակարդակի ապահովման վրա, հանձնարարեց հարստացնել ու լիարժեք դարձնել ՍՄԿԿ-ի ներքին ու արտաքին քաղաքականության վերաբերյալ տրվող քաղաքական ինֆորմացիան, լուրջ ուշադրություն նվիրել քաղաքական զգոնության բարձրացման, բարոյական դաստիարակության հարցերին։ Տնտեսագիտական կրթության և կոմունիստական աշխատանքի դպրոցների պրոպագանդիստների առջև խնդիր դրվեց տնտեսագիտական գիտելիքների ուսուցումը սերտորեն առնչել հիդրոտեխնիկական բարդ կառույցի շինարարության պլանային առաջադրանքների, ստանձնած սոցպարտավորությունների կատարման հետ։

Որոշումից հետո զգալիորեն բարելավվել է կուսակցական ուսուցման վիճակը։ Պարապմունքներն անցնում են կոմունիստների բարձր ակտիվության պայմաններում։ Կուսբյուրոն իր տեսադաշտում է պահում նաև առանձին կոմունիստների քաղաքական ինքնակրթությունը. վերջերս կուսբյուրոյում լսվեցին ՍՄԿԿ անդամներ Ա. Գրիգորյանի և Ս. Սառադյանի հաշվետվությունները։

Կուսշրջկոմը լուրջ ուշադրություն է նվիրում գյուղի կոմունիստների քաղաքական ուսուցման բովանդակության հարստացմանը։ Եռամսյակ առ եռամսյակ բյուրոն կամ բաժինը ուսումնասիրում և քննարկում են որևէ կոլտնտեսային կամ սովխոզային սկզբնական կազմակերպության կուսակցական ուսուցման վիճակը։ Քարաբերդի կոլտնտեսային կազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի աշխատանքի ուսումնասիրությունը ցույց տվեց, որ ոչ բոլոր ունկնդիրներն են խորությամբ յուրացնում հանձնարարված թեման, ոմանք հանդես են գալիս միայն լսողի դերում։ Չնայած պրոպագանդիստի ջանքերին՝ կրթական տարբեր մակարդակ ունեցող ունկնդիրների հետ տարվող աշխատանքը դեռևս ցանկալի արդյունք չի տալիս։ Ինչպես Քարաբերդի կոլտնտեսային, այնպես էլ շրջանի մի շարք այլ սկզբնական կուսկազմակերպություններում (Ջրափիի, Սառնաղբյուրի սովխոզային, № 9 շարժական մեքենայացված շարասյան, ավտոգրասենյակի) նկատված թերությունները հաղթահարելու նպատակով հանձնարարվել է կուսբյուրոներին՝ պարբերաբար անդրադառնալ առանձին կոմունիստների ինքնակրթության հարցերին, անհատական աշխատանք տանել կրթական ցածր մակարդակ ունեցող ունկնդիրների հետ։ Պրոպագանդիստներին խորհուրդ է տրվել մատչելի լեզվով մատուցել նյութը, զրույցի միջոցով բարձրացնել ունկնդիրների ակտիվությունը։



Գյուղատնտեսության հետագա զարգացման վերաբերյալ ՍՄԿԿ XXV համագումարի, ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի որոշումներն անցած երկու ուսումնական տարիներին և ընթացիկ ուստարվա առաջին ամիսներին դարձան գյուղական կազմակերպությունների կուսակցական ուսուցման հիմնական բովանդակությունը։ Կոմունիստներն իրենց պրակտիկ խնդիրների առնչությամբ գործնական հետևություններ են անում համագումարի և պլենումի հարցադրումներից։ Եվ այս գործում վճռական դեր են խաղում պրոպագանդիստները։

Ջիթհանքովի կոլտնտեսության կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Ա. Գևորգյանը երկար տարիների աշխատանքի փորձ ունի։ Նա լավ է ճանաչում յուրաքանչյուր ունկնդրի։ Մանկավարժական տակտը, ունկնդիրների նկատմամբ հարգանքը և պահանջկոտությունը տալիս են ցանկալի արդյունքներ։ Պրոպագանդիստին այստեղ միշտ սպասում են սիրով։ Ա. Գևորգյանը քաջատեղյակ է կոլտնտեսային արտադրության հարցերին, գիտե դրա նեղ տեղերը։ Այդ բանում մեկ անգամ ևս համոզվեցինք մեթոդխորհրդի կազմակերպած բաց պարապմունքի ընթացքում։ Ի դեպ, կուսուսուցման այս օղակի ունկնդիրներ են նաև կոլտնտեսության ղեկավարները, գլխավոր մասնագետները։

Հերթական պարապմունքով, որին ներկա էին նաև միջին օղակի պրոպագանդիստները, ավարտվում էր ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան (1978 թ.) պլենումի նյութերի ուսումնասիրությունը։ Պրոպագանդիստը որոշել էր այն անցկացնել ռեֆերատների քննարկումով։ Ունկնդիրներին առաջադրված հարցերը հանգամանորեն բացատրվել և հիմնավորվել էին նախորդ պարապմունքների ընթացքում։ Ա. Գևորգյանը պատրաստել էր նաև ՍՄԿԿ Կենտկոմի 1965 թ. մարտյան պլենումից հետո ընկած ժամանակաշրջանում տնտեսության զարգացման տեմպերը բնորոշող տվյալներ։

Պարապմունքի ընթացքում նա հանգամանորեն անդրադարձավ այն գործոններին, որոնք վճռականապես նպաստել են տնտեսության ինտենսիվացմանը, արտադրության աճին, ինքնարժեքի իջեցմանը, ինչպես նաև վերլուծեց առանձին ճյուղերի ետ մնալու պատճառները։ Պրոպագանդիստն իր գիտակությամբ, նյութի վերլուծությամբ ոգևորել էր ունկնդիրներին։ Նրանք պարապմունքի էին ներկայացել տնտեսական լուրջ հաշվարկներով, հպարտությամբ էին նշում, որ իրենց կոլտնտեսությունը բարձր կուլտուրայի հողագործության արմատավորման, անջրդի պայմաններում հացահատիկային կուլտուրաների կայուն ու բարձր բերք աճեցնելու շնորհիվ դարձել է ՍՍՀՄ ԺՏՆՑ-ի մասնակից։ Վերջին տարիներին աճել են կոլտնտեսության եկամուտները, հզորացել նյութատեխնիկական բազան։ Սակայն, ելնելով պլենումի որոշումներից ու տնտեսության ռեալ հնարավորություններից՝ ունկնդիրները գտնում էին, որ դեռևս լուրջ թերություններ ու վրիպումներ կան արտադրության առանձին ճյուղերում։ Աշխատանքի կազմակերպման, առաջավոր փորձի արմատավորման, մթերքների որակական ցուցանիշների ներկա մակարդակը դեռևս ետ է մնում պլենումի առաջադրած պահանջներից։ Ունկնդիրները խոսում էին տնտեսության յուրաքանչյուր բնագավառի զարգացման հեռանկարների մասին, նշում դրանց իրականացման ուղիները։

Մեթոդխորհրդի նիստում, երբ քննարկվում էին բաց պարապմունքից ստացած տպավորությունները, պրոպագանդիստները նշեցին ուսանելին, վեր հանեցին թերությունները։

Քաղաքական լուսավորության հաջողությունը մեծապես պայմանավորված է պրոպագանդիստական կադրերի գաղափարատեսական, մեթոդական բարձր պատրաստականությամբ, վստահված գործի հանդեպ պահանջկոտությամբ։ Մեր շրջանում աճել է պրոպագանդիստների ստվար բանակ։ Նրանց մի զգալի մասը տասնյակ տարիների պրոպագանդիստական աշխատանքի փորձ ունի։ Կուսակցության գաղափարների պրոպագանդման, աշխատավորների քաղաքական դաստիարակության գործին իրենց նվիրվածությամբ ճանաչվել և մեծ հարգանք են վայելում Ա. Գասպարյանը (Հայկաձոր), Ա. Գևորգյանը (Ջիթհանքով), Կ. Ստեփանյանը (Սարակապ), Ա. Խաչատրյանը,

Ա. Գրիգորյանը (Աղին), Գ. Աղատյանը, Բ. Համբարյանը (Լուսաղբյուր), Մ. Պողոսյանը (Մարալիկ), Ս. Հարությունյանը (լուսատեխնիկական էլեկտրասարքավորումների գործարան) և շատ ուրիշներ։

Կուսշրջկոմը հոգատարությամբ է շրջապատում պրոպագանդիստներին, ըստ արժանվույն գնահատում նրանց վաստակը։ Լավագույն պրոպագանդիստների անունները գրանցվում են ՀԿԿ շրջկոմի պատվոգրքում, լուսանկարները փակցվում պատվո տախտակին։ Կառավարական պարգևների, պատվոգրերի, պատվավոր կոչումների ներկայացնելիս շրջկոմը հաշվի է առնում նաև պրոպագանդիստական աշխատանքը։ Նրանցից շատերը պարգևատրված են շքանշաններով ու մեդալներով, արժանացել են պատվոգրերի, ընտրվել կուսակցական, սովետական ղեկավար մարմիններում։ Լավագույն պրոպագանդիստների աշխատանքը լուսաբանում է շրջանային «Անի» թերթը։ Ծննդյան հոբելյանական տարելիցների առթիվ պրոպագանդիստները ներկայացվում են շրջսովետի պատվոգրի։ Վերջերս հանդիսավորությամբ նշվեց Հայկաձորի սովխոզային սկզբնական կուսկազմակերպության մարքսիզմ-լենինիզմի հիմունքների դպրոցի պրոպագանդիստ Ազատ Գասպարյանի ծննդյան 60 և մանկավարժական ու պրոպագանդիստական գործունեության 40-ամյակը։ Նա արժանացավ կուսշրջկոմի շնորհավորանքին և շրջսովետի պատվոգրին։

Շրջանի մի շարք կուսկազմակերպություններում տարիներ շարունակ պրոպագանդիստական աշխատանք են կատարում այլ կազմակերպությունների ներկայացուցիչներ՝ մանկավարժներ, ժողտնտեսության մասնագետներ, կուսակցական, սովետական, արհմիութենական, կոմերիտական և մամուլի աշխատողներ։ Նրանցից շատերը դարձել են այդ կոլեկտիվների հարազատ անդամը, հրավիրվում են կուսժողովներին, բյուրոների նիստերին, կոլեկտիվում տեղի ունեցող միջոցառումներին, ակտիվորեն մասնակցում կուսկազմակերպությունների գաղափարական աշխատանքի պլանավորմանը, քաղաքական կամպանիաների, հոբելյանական իրադարձությունների նախապատրաստության ու անցկացմանը։ Եվ պատահական չէ, որ մի շարք կոլտնտեսությունների, սովխոզների, արդյունաբերական ձեռնարկությունների ղեկավարներ հանդես եկան տնտեսությունների միջոցների հաշվին պրոպագանդիստներին տուրիստական ուղեգրերով խրախուսելու նախաձեռնությամբ։ Կուսշրջկոմը հավանություն տվեց դրան։

Պրոպագանդիստական կադրերի ուսուցումը, նրանց վարպետության բարձրացումը մշտապես կատարելագործման կարիք ունեն։ Գիտատեխնիկական հեղափոխության արդի պայմաններում, երբ մասսայական ինֆորմացիայի միջոցներն առատորեն բազմատեսակ նյութ են մատուցում ընդհանուր լսարանին, անհրաժեշտաբար բարձրանում է պրոպագանդիստին ներկայացվող պահանջը՝ քաջատեղյակ լինել այդ ամենին, ճիշտ կողմնորոշվել ինֆորմացիայի այդ հոսքի մեջ, անընդհատ հարստացնել գիտելիքների պաշարը։ Կուսշրջկոմը, քաղլուսկաբինետը, մեթոդխորհուրդը պարբերաբար կազմակերպում են պրոպագանդիստական կադրերի ուսուցման սեմինար-պարապմունքներ։ Որպես կանոն, դրանց բոլոր մասնակիցների համար տրվում է կոնկրետ ժամանակի պահանջներից բխող ընդհանուր զեկուցում։ Գաղափարական բնագավառի աշխատողների առջև հանդես են գալիս կուսշրջկոմի քարտուղարները, շրջսովետի գործկոմի ղեկավարները, ՀԿԿ Կենտկոմի դասախոսական խմբի անդամները, հանրապետության գիտնականներ։

Անիի շրջանում, ինչպես ամենուրեք, սոցիալ-կուլտուրական մեծ վերափոխումներ են կատարվում։ Բնականաբար, այդ ամենին քաջատեղյակ պետք է լինեն պրոպագանդիստները։ Եվ ո՛չ միայն նրանք։ Աշխատավորներին ժամանակին և հարուստ ինֆորմացիա հաղորդելը մեր կուսակցական կյանքի սկզբունքներից է, ասել է ընկ. Լ. Ի. Բրեժնևը։ Կուսշրջկոմը պրոպագանդիստների, դասախոսների, զեկուցողների, քաղինֆորմատորների համար պարբերաբար կազմակերպում է բովանդակալից ու հետաքրքրական դասախոսություններ։ ՀԿԿ Կենտկոմի քաղլուսատան և կուսշրջկոմի համատեղ գիտատեսական և գիտագործնական կոնֆերանսները տեսական հարուստ նյութ են հաղորդում պրոպագանդիստներին։ Դրանք համապատասխանեցվում են կուսակցական



ուսուցման ծրագրային նյութերին։ 1977—1978, 1978—1979 քաղուստարում գիտատեսական և գիտագործնական կոնֆերանսներ են անցկացվել՝ նվիրված Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 60-ամյակին, Արևելյան Հայաստանը Ռուսաստանի կազմի մեջ մտնելու 150-ամյակին, ՍՍՀՄ նոր Սահմանադրության, ՍՄԿԿ ագրարային քաղաքականության հարցերին։ Այս գործում կուսշրջկոմին օգնում են Երևանի Կ. Մարքսի անվան պոլիտեխնիկական ինստիտուտի, պետական համալսարանի, Խ. Աբովյանի անվան և Լենինականի Մ. Նալբանդյանի անվան մանկավարժական ինստիտուտների ՍՄԿԿ պատմության, գիտական կոմունիզմի և քաղաքատնտեսության ամբիոնները, հանրապետության ճանաչված գիտնականներ։

Պրոպագանդիստների տեսական-մեթոդական օգնության կենտրոնը ՀԿԿ շրջկոմի քաղլուսկաբինետն է։ Շրջանում ստեղծվել է նաև հասարակական հիմունքներով գործող երկու քաղլուսկաբինետ։ Սակայն նկատենք, որ եթե տեսական-մեթոդական գրականության օգտագործումը բավարար է կազմակերպվում, և դրա համար լավ հնարավորություններ կան քաղլուսկաբինետներում, ապա տեխնիկական միջոցների կիրառումը հեռու է գոհացուցիչ լինելուց։ Մեզ մտահոգում է նաև հասարակական հիմունքներով քաղլուսկաբինետները մեթոդական կենտրոն դարձնելու հրամայական խնդիրը։

Ուրախալի է, որ պրոպագանդիստների կազմում տարեցտարի ավելանում է տեխնիկական մտավորականության, արտադրության հրամանատարների թիվը։ Միշտ չէ, սակայն, որ նրանք ունենում են մանկավարժական անհրաժեշտ փորձ, խոսքի բարձր կուլտուրա կամ տիրապետում են հոգեբանության հիմունքներին։ Պրոպագանդիստների պրոֆեսիոնալ վարպետության կատարելագործման նպատակով տեղական կազմակերպությունների գործադրած ջանքերը, մեր կարծիքով, սպասված արդյունքը չեն տալիս։ Ըստ երևույթին ժամանակն է, որպեսզի մենք լրջորեն խորհենք այս մասին և հարցի լուծման ավելի արդյունավետ միջոցներ գտնենք։

Քաղաքական լուսավորության 1978—79 ուսումնական տարին մոտենում է ավարտին։ Այն հարուստ էր կարևորագույն իրադարձություններով։ ՍՄԿԿ Կենտկոմի հուլիսյան և նոյեմբերյան (1978 թ.) պլենումների որոշումները, ՍՍՀՄ Գերագույն սովետի ընտրությունների նախապատրաստության և անցկացման քաղաքական կամպանիան, ՍՄԿԿ Կենտկոմի գլխավոր քարտուղար, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության նախագահ ընկ. Լ. Ի. Բրեժնևի աշխատությունների ու ելույթների բովանդակած հիմնարար դրույթներն ու եզրահանգումները հարստացնում են քաղաքական ուսուցման բովանդակությունը, նպաստում նոր թափով աշխատավորական կոլեկտիվներում սոցիալիստական մրցության ծավալմանը, ՍՄԿԿ XXV համագումարի որոշումների կենսագործմանը, տասներորդ հնգամյակի առաջադրանքների ժամկետից շուտ կատարմանը։

---

# ՀԱՋՈՂՈՒԹՅԱՆ ԵՐԱՇԽԻՔԸ

**Ռ. Հ. ԿՈՒՌՈՅԱՆ**
Նուրբ օրգանական քիմիայի գիտահետազոտական ինստիտուտի կուսբյուրոյի քարտուղար, քիմիական գիտությունների թեկնածու

**ՍՄԿԿ XXV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԸ** ժողովրդական տնտեսության համակողմանի և արագ զարգացման, գիտության ու արտադրության ինտեգրացման գործում անչափ կարևորեց գիտահետազոտական ինստիտուտներում աշխատող գիտնականների և մասնագետների դերը: Սակայն, ասաց համագումարում **Լ. Ի. Բրեժնևը**, «Գիտատեխնիկական հեղափոխության հաջողությունը, էկոնոմիկայի վրա, հասարակության կյանքի բոլոր կողմերի վրա նրա բարերար ազդեցությունը չեն կարող ապահովվել միայն գիտական աշխատողների ջանքերով»: Հետևաբար, գիտահետազոտական հիմնարկությունների առջև ծառացած խնդիրների լուծմանը պետք է ամենաակտիվ մասնակցություն ցույց տան սկզբնական կուսկազմակերպությունները, որոնց համար կուսակցությունը սահմանել է ադմինիստրացիայի գործունեության նկատմամբ վերահսկողության իրականացման ֆունկցիա:

Գիտահետազոտական հիմնարկության կոլեկտիվի հաջողությունն ամենից առաջ պայմանավորված է նրանով, թե ինչպես են լուծված մասնագետների ընտրության ու դաստիարակության, նրանց գիտական մակարդակի բարձրացման, գիտահետազոտական աշխատանքների կառավարման, նյութատեխնիկական բազայի ամրապնդման և մյուս հարցերը: Այսպիսով, գիտական հիմնարկության անելիքները բարդ ու բազմազան են. հարկ է լինում լուծել ոչ միայն գիտահետազոտական պրոբլեմներ, այլև դրանց առնչվող շատ խնդիրներ: Ահա այս պարագայում է, որ պահանջվում է սկզբնական կուսկազմակերպության աջակցությունը: Վերջինս իր ակտիվ գործունեությամբ պետք է նպաստի գիտական ուժերի ճիշտ տեղաբաշխմանն ու օգտագործմանը, գիտահետազոտական աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, գիտության ու արտադրության կապի ամրապնդմանը: Ըստ էության, այդ գործոններով են պայմանավորված գիտական հիմնարկության կուսկազմաջությանը, նյութական արժեքների պահպանմանը:

Այնքան էլ մեծ չէ մեր սկզբնական կուսկազմակերպությունը: Ունենք ընդամենը 58 կոմունիստ, որոնցից ոչ բոլորն են, իհարկե, անմիջականորեն զբաղվում գիտական աշխատանքով: Ինստիտուտի առջև ծառացած խնդիրների մասշտաբի և կոմունիստների թվաքանակի միջև, ինչպես ասում են, ուղիղ համեմատական կապ չկա: Ուրեմն, կուսկազմակերպությանը մնում է՝ ավելի բարձրացնել կոմունիստների անձնական պատասխանատվությունն ու պահանջկոտությունը, գիտահետազոտական կարևոր հարցերի լուծմանը մասնակից դարձնել արհմիութենական, կոմերիտական կազմակերպություններին, երիտասարդ գիտաշխատողների խորհրդին:

Մեր ինստիտուտի առջև ծառացած են չափազանց բարդ ու պատասխանատու պրոբլեմներ: Եվ պատահական չէ, որ վերջին երկու տարում նրա գործունեության հարցերին անդրադարձել են կուսակցական ղեկավար մարմինները: Մեր հասցեին, ինչ խոսք, ասվել են դրական խոսքեր, դրվատվել է մեր գիտնականների ներդրած ավանդը քիմիական գիտության զարգացման գործում, բայց և աչքաթող չեն արվել մեր աշխատանքի թերությունները: Միանգամայն տեղին էին ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոյի 1976 թվականի օգոստոսի նիստում մեր հասցեին արված քննադատական դիտողությունները: Բյուրոյի որոշմամբ մասնավորապես պահանջվում էր ուշադրությունը սևեռել ինստիտուտի կոլեկտիվի առջև ծառացած գլխավոր խնդրի լուծմանը՝ գիտահետազոտական աշխատանքի արդյունավետության հետագա բարձրացմանը: Ինստիտուտի դիրեկցիային ու սկզբնական կուսկազմակերպությանը հանձնարարվեց առանձնահատուկ ուշադրություն նվիրել կադրերի գաղափարական դաստիարակությանը, նրանց մեջ կուսակցական սկզբունքայնության արմատավորմանը, ներկուսակցական աշխատանքի բարելավմանը:

Այդ պահանջների կատարման համար մշակվեց միջոցառումների մի ամբողջ համակարգ: Գործն սկսեցինք արտաքուստ փոքր թվացող մի այնպիսի հարցից, ինչպիսին կուսկազմակերպության բյուրոյի նիստն է: Դա յուրօրինակ մի լսարան է, ուր քննարկվող հարցերը լուծվում են մի քանի օղակների մասնակցությամբ: Եվ մենք, անհրաժեշտության դեպքում, նիստին հրավիրում ենք նաև լաբորատորիաների և ծառայությունների ղեկավարներին, մյուս պատասխանատու աշխատողներին: Քննարկվելիք հարցերը նախապատրաստում ենք խնամքով ու բազմակողմանիորեն, դրանց ուսումնասիրմանը մասնակից դարձնում գործին առավել իրազեկ կոմունիստներին, նրանց, որոնց համար սկզբունքայնությունը թանկ է: Պակաս կարևոր չէ նաև օրակարգին բյուրոյի անդամներին կամ կոմունիստներին նախօրոք տեղյակ պահելը: Նիստից մի քանի օր առաջ նրանք ծանոթանում են քննարկվելիք հարցերին և ներկայանում են նիստին դրանց մասին որոշակի պատկերացում կազմած, դրանց լուծման վերաբերյալ իրենց կարծիքներով և առաջարկներով: Գաղտնիք չէ, որ երբեմն թեկուզ և տեղից արված ռեպլիկը երկար խորհրդածությունների արդյունք է լինում, սրտաբաց ու ճիշտ դիտողությունն ու քննադատությունը բխում են կոլեկտիվի շահերից ու շահագրգռություններից: Քաղկոմի բյուրոյի որոշմամբ մեզ հանձնարարվեց այս հարցերը մշտապես պահել ուշադրության կենտրոնում, և մենք, ինչպես արդեն ասացի, լուրջ եզրակացություն արեցինք դրանից:

Հիշում եմ. կուսբյուրոյի նիստերից մեկում քննարկում էինք ինստիտուտում աշխատանքի անվտանգության կազմակերպման հարցը: Այն հուզել էր բոլորին. քննարկվող հարցը հավասարապես վերաբերում էր բոլոր լաբորատորիաներին ու ծառայություններին, առնչվում կոլեկտիվի յուրաքանչյուր անդամի աշխատանքի հետ: Անվտանգության տեխնիկայի ծառայության ավագ ինժեների ու մյուս աշխատողների համար այնքան էլ հեշտ չէր խուսափել աշխատանքային ընկերների հարցապնդումներից: Շատ բան պարզվեց նիստում. ինչո՞ւ այդ ծառայությունում կան մի շարք լուրջ թերություններ, ինչո՞ւ է նրա նյութատեխնիկական բազան անբավարար վիճակում... Մինչդեռ անվտանգության ապահովումը քիմիական գիտահետազոտական ինստիտուտում և նրա փորձնական արտադրությունում առաջնային խնդիր է. այն վերաբերում է մարդկանց առողջությանը, նյութական արժեքների պահպանմանը:

Կոմունիստների առաջարկով ուժեղացվեց հսկողությունն այս օղակի նկատմամբ: Հետո մենք նորից անդրադարձանք այդ հարցին և պարզվեց, որ տեղաշարժը նկատելի է: Դրան նպաստել էին բյուրոյի նիստի հրապարակայնությունը, մարդկանց պատասխանատվության բարձրացումը, անվտանգության տեխնիկայի ծառայության աշխատողներին ինստիտուտի դիրեկցիայի կողմից ցույց տրված գործնական օգնությունը: Այո՛, շատ բան է պայմանավորված որոշման հրապարակայնությամբ: Դա օգնում է՝ մոբիլիզացնելու մարդկանց, հստակ, տեսանելի դարձնելու կոլեկտիվի խնդիրները, բարձրացնելու յուրաքանչյուր կոմունիստի և աշխատողի անձնական պատասխանատվությունը:

Մի քանի խոսք կուսակցական ժողովի մասին: Այն, իրոք, շատ բան կարող է տալ, եթե նախապատրաստված է համակողմանի: Նշեմ այսպիսի մի դեպք: Կուսկազմակերպության բյուրոյի նիստերից մեկի ժամանակ առաջարկվեց հարցաթերթիկ տարածել աշխատողների շրջանում և պարզել մի շարք կարևոր հարցեր, որոնք մեծ նշանակություն ունեն գիտական աշխատանքի հետագա բարելավման համար: Մեր առջև խնդիր դրեցինք որոշակի իմանալ, թե սահմանված ժամկետներում հետազոտությունների արդյունքներն ինչպե՞ս են ամփոփվում, ինչպիսի՞ փոխհարաբերություններ են ստեղծված գիտական ղեկավարի և գիտաշխատողի միջև, ինչպե՞ս են գիտաշխատողներն օգտվում մասնագիտական գրականությունից, որո՞նք են նրանց անձնական գիտահետազոտական նախասիրությունները և այլն:

Հարցաթերթիկի կազմմանն ու տարածմանը, բյուրոյի որոշմամբ, մասնակից դարձվեցին և՛ կոմերիտական կազմակերպությունը, և՛ երիտասարդ գիտաշխատողների խորհուրդը: Եվ ահա հարցաթերթիկի միջոցով պարզվեց, որ որոշ խմբերում ու լաբորատորիաներում ամենևին էլ այնպիսին չէ վիճակը, ինչպես պատկերացնում էինք: Ավելին, հայտնի դարձավ, որ մի շարք երիտասարդ գիտաշխատողներ նույնիսկ չգիտեն, թե գիտահետազոտական ինչ նպատակ է հետապնդում իրենց աշխատանքը:

Սոցիոլոգիական այսպիսի հետազոտության արդյունքներին կոլեկտիվը սպասել էր ամբողջ մեկ ամիս՝ մինչև ժողովի օրը, և երբ դրանք հրապարակվում էին, մտահոգությունը պատել էր գրեթե բոլորին: Հարկ եղավ լրջորեն խորհել, կշռադատել անելիքները: Ե՛վ կուսբյուրոյի նիստում, և՛ կուսակցական ժողովում կո-

մունիստները գործնական առաջարկություններ արեցին: Դրանց հիման վրա էլ կոնկրետ հանձնարարություններ ստացան խմբերի և լաբորատորիաների կոլեկտիվները, այնտեղ աշխատող կոմունիստները: Իր հերթին ինստիտուտի ղեկավարությունն ավելի ուժեղացրեց, ավելի արդյունավետ դարձրեց վերահսկողությունն առանձին օղակների նկատմամբ: Դա հետևողականություն և մեծ ջանքեր պահանջող խնդիր էր, որն այժմ արդեն տալիս է իր որոշակի արդյունքը:

Այդպես է. երբ անթերի կատարվում է ժողովի որոշումը, արդյունքին համապատասխան, ասես, աճում է նաև կուսակցական բյուրոյի հեղինակությունը: Կոմունիստներն զգում են, որ իրենց խոսքը տեղ է հասնում, նպաստում գործերի կարգավորմանը, և նրանք դառնում են ավելի ակտիվ ու նախաձեռնող, իսկ կուսկազմակերպությունը՝ մարտունակ:

Շատ են կուսկազմակերպության առջև ծառացած խնդիրները: Մեզ համար այսօր չափազանց կարևոր են բուհի և գիտահետազոտական հիմնարկության փոխհարաբերության ու դրա հետ կապված բարձր որակավորում ունեցող մասնագետների պատրաստման հարցերը: Դա լուրջ մտահոգություն է ապագա կադրերի պատրաստման նկատմամբ, մտահոգություն է նաև հետազոտական աշխատանքի բարձր արդյունավետության և որակի ողջ համակարգի համար: Մեր առջև խնդիր ենք դրել վաղվա մասնագետ գիտնականին հենց ուսանողական տարիներից նախապատրաստել գիտահետազոտական աշխատանքի, նրա ուսումնառությունը կապել գիտական որոշակի նպատակների ու պրոբլեմների հետ, նրա մեջ դաստիարակել հմտություններ, թև տալ պատանու և աղջկա մտքի խոյանքներին, այլ կերպ ասած՝ դաստիարակել գիտությանն անսահմանորեն նվիրված մարդիկ: Չէ որ ամենամեծ հայտնագործությունների զգալի մասը պատանեկան ու երիտասարդական տարիների համառ ջանքերի արգասիք է:

Նման կարգի գիտաշխատողի ի հայտ բերելը, իհարկե, դեռևս քիչ է: Նրա բախտով նույնքան շահագրգռված պետք է լինի գիտական այն հիմնարկությունը, ուր երիտասարդն աշխատելու է: Հաջողությունն արժանի գնահատականը կլինի նրա գիտական ղեկավարի ու կոլեկտիվի: Այս ասպարեզում ունենք որոշակի հասումներ: Երևանի պետական համալսարանի քիմիական ֆակուլտետի ուսանողները իրենց պրակտիկան անցկացնում և դիպլոմային աշխատանքները կատարում են մեր ինստիտուտի տարբեր լաբորատորիաներում: Նրանցից ամենաշնորհալիներին հետագայում ընդունում ենք մեր կոլեկտիվը, հոգատարություն ցուցաբերում նրանց մասնագիտական աճի նկատմամբ: Այժմ մեր ինստիտուտում գիտահետազոտական բեղմնավոր գործունեությամբ են զբաղված պետհամալսարանի մի քանի տասնյակ շրջանավարտներ: Նրանցից շատերն արդեն գիտական մեծ վաստակ ունեն և արժանի ավանդ են մուծել ինստիտուտի ընդհանուր հաջողություններում:

Սկզբնական կուսկազմակերպությունը, նրա բյուրոն հետևողականորեն զբաղվում են երիտասարդ գիտաշխատողների մասնագիտական որակավորմամբ և գաղափարական դաստիարակությամբ: Բյուրոն իր ակտիվ միջամտությամբ նպաստում է նրանց աճին ու քաղաքական կոփվածքին: Մենք նրանց աջակցում ենք ամեն բանով՝ և՛ բարոյապես, և՛ փորձարարական հազվագյուտ միջոցներ տրամադրելով: Արդյունքները գոհացուցիչ են: Վերջերս Երևանում կայացած սովետահնդկական գիտաժողովում, իրենց ավագ ընկերների հետ միասին, հետաքրքրական զեկուցումներով հանդես եկան մեր երիտասարդ գիտաշխատողները: Հասկանալի է, որ նրանց մուտքն այդպիսի մեծ ասպարեզ նախապատրաստվել էր տարիների ընթացքում՝ թե՛ երիտասարդ գիտաշխատողների խորհրդում, թե՛ լաբորատորիաներին ու խմբերին կից գործող գիտական սեմինարներում, թե՛ ամենօրյա գիտական աշխատանքում: Այդ օղակների գործունեությունը մշտապես գտնվում է մեր կուսկազմակերպության ուշադրության կենտրոնում:

Մեր ինստիտուտը փոխադարձ լայն կապեր է հաստատել Երևանի կենսաքիմիայի, օնկոլոգիայի և ռենտգենոլոգիայի, սրտաբանության, Մոսկվայի, Լենինգրադի, Կիևի, Ռիգայի, Տաշքենդի քիմիական ու կենսաքիմիական գիտահետազոտական ինստիտուտների հետ: Նրանք մեզ աջակցում են մեր գիտնականների գիտահետազոտական մտքի արդյունքները պրակտիկայում ներդնելու և կիրառելու գործում: Միաժամանակ մեր գիտաշխատողները ծանոթանում են առողջապահական այդ օջախներում ծնունդ առած նորույթներին: Այդ հիմնարկություններում մեզ համար նախապատրաստվում են այնպիսի կադրեր, որոնց կարիքն այնքան շատ ենք զգում: Կուսկազմակերպությունը նպաստում է այդ կադրերի ամրապնդմանը և երիտասարդ գիտաշխատողների պատրաստմանն ու մասնագիտական կատարելագործմանը:

Մեզ մոտ մեծ կարևորություն է տրվում աշխատողների քաղաքական-գաղափարական դաստիարակությանը, հասարակական և քաղաքական կյանքում նրանց ներգրավմանը: Բոլոր կոմունիստները և շատ անկուսակցականներ ընդգրկված են քաղաքական ուսուց-



ման մեջ: Ինստիտուտի 15 քաղինֆորմատորներ և ագիտատորներ, տեսական սեմինարների ղեկավարներ կոլեկտիվի անդամներին պարբերաբար իրազեկ են պահում կուսակցության արտաքին ու ներքին քաղաքականությանը, միջազգային կարևոր անցքերին: «Գիտելիք» ընկերության շրջանային բաժանմունքի միջոցով հրավիրված դասախոսները պարզաբանում ու ընդհանրացնում են այս կամ այն կարևոր պրոբլեմը:

Կոմունիստ պրոպագանդիստի իր պարտականությունը պատվով է կատարում կենսաբանական գիտությունների դոկտոր Հովհ. Ավագյանը: Նա իր պարտքն է համարում տեսական սեմինարում ուսումնասիրվող թեմաները սերտորեն շաղկապել ինստիտուտի առջև ծառացած հրատապ խնդիրներին, տեսական դրույթները հիմնավորել պրակտիկայից վերցրած կոնկրետ օրինակներով, կատարել խոր ընդհանրացումներ: Պրոպագանդիստն իր ունկնդիրներին համակում է այն գիտակցությամբ, որ հմուտ գիտնականը պետք է լինի նաև գաղափարապես կոփված քաղաքացի, խորությամբ ուսումնասիրի մարքս-լենինյան տեսությունը և իր գիտական հետազոտությունների ժամանակ հենվի մարքս-լենինյան դիալեկտիկական մատերիալիզմի հիմնարար դրույթների վրա:

Կուսկազմակերպությունը գոհ է նաև կոմերիտական քաղուսուցման խմբակների պրոպագանդիստներ Ա. Ենգոյանի, Ֆ. Ծիրոյանի, Ֆ. Ղարագյոզյանի, ագիտատորներ Սվետլանա Ավետիսյանի և Ելիզավետա Գայվաչյանի աշխատանքից: Նրանք հասարակական հանձնարարությունը կատարում են բարեխղճորեն, այն զուգակցում իրենց գիտական գործունեության հետ:

Այս պայմաններում էականորեն բարձրանում է գիտական աշխատողների հասարակական-քաղաքական ակտիվությունը: Օրինակները շատ են և ուղղակի պետք է ասել, որ մեր կոմունիստներն իրենց հասարակական գործունեությունը չեն սահմանափակում միայն քաղաքական-մասսայական աշխատանքին, շաբաթօրյակներին իրենց ցույց տված ակտիվ մասնակցությամբ: Այս առումով ուշադրության արժանի է ժողովրդական վերահսկողության մեր խմբերի գործունեությունը: Նրանք ուսումնասիրում և քննարկում են այնպիսի կենսական նշանակություն ունեցող հարցեր, ինչպիսիք են՝ փորձարարական արտադրությունում և լաբորատորիաներում արտադրության տեխնիկական միջոցների հաշվառումն ու պահպանումը, նյութատեխնիկական մատակարարումը, պահեստային տնտեսության բարելավումը:

Ի կենսագործումն ՀԿԿ Երևանի քաղկոմի բյուրոյի որոշման, մենք կիրառում ենք կոմունիստների ակտիվության բարձրացման ու նախաձեռնության զարգացման զանազան ձևեր: Դրանց շարքում կարևոր է և հաշվետվությունների ունկնդրումը կուսբյուրոյի նիստերում ու կուսժողովներում: Պարբերաբար քննարկում ենք ոչ միայն լաբորատորիաների ու ծառայությունների, այլև դրանց կազմում եղած խմբերի ղեկավարների, առանձին կոմունիստների հաշվետվությունները, պարզում գործերի վիճակը, համապատասխան միջոցառումներ մշակում նրանց գործունեությունն աշխուժացնելու, գիտահետազոտական աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու համար: Այդ քննարկումները տալիս են գոհացուցիչ արդյունքներ:

Այս առումով ուսանելի էր ՍՄԿԿ անդամության թեկնածուներ, քիմիական խմբի ղեկավար Ֆ. Ծիրոյանի, կրտսեր գիտաշխատող Ա. Փանոսյանի, № 3 լաբորատորիայի ավագ գիտաշխատողներ Ս. Ավետիսյանի, Ս. Ղազարյանի և Գ. Գևորգյանի հաշվետվությունների քննարկումը:

Նման հաշվետվությունները մեզ հստակ պատկերացում են տալիս ինստիտուտի տարբեր օղակներում գիտահետազոտական աշխատանքի վիճակի ու արդյունքների, գիտական մտքի զարգացման հեռանկարների և այդ ամբողջ համակարգում կոմունիստների արած ներդրումների մասին: Դրանց միջոցով մենք միաժամանակ պարզում ենք, թե ՍՄԿԿ անդամության թեկնածուներն ինչպես են կատարում իրենց կանոնադրական պարտականությունները և թեկնածուական շրջանն ինչպես է նպաստում նրանց քաղաքական աճին ու աշխատանքային ակտիվության բարձրացմանը: № 3 լաբորատորիայի գիտաշխատողների հաշվետվությունը, որը քննարկեցինք 1978 թ. մայիսին տեղի ունեցած կուսակցական դռնբաց ժողովում, նվիրված էր լաբորատորիայի գործունեության վերջին երկու տարվա արդյունքներին: Լաբորատորիայի խմբերը սինթեզել են նոր ակտիվ պրեպարատներ և շարունակում են հետազոտական արդյունավետ աշխատանքը: Սվետլանա Ավետիսյանի ղեկավարած խումբն զբաղվում է հակացընցումային պրեպարատների ստեղծմամբ և շոշափելի արդյունքի է հասել: Այդ խումբն իր երկու աշխատանքի համար ստացել է հեղինակային իրավունք:

Ժողովում բացահայտվեցին նաև լաբորատորիայի կոլեկտիվի աշխատանքում տեղ գտած որոշ թերություններ: Մասնավորապես, թույլ է մասնագիտական նորագույն գրականության հետ գիտաշխատողների կապը, նշվեց, որ նկատվում է բազմաթեմայնություն,

անբավարար է երիտասարդ գիտնականների հետ տարվող աշխատանքը:

Խմբերի ղեկավարներին հանձնարարվեց բարձրացնել հետազոտությունների արդյունավետությունը, օգնել երիտասարդ կադրերի մասնագիտական աճին, հասու լինել գիտության նորագույն նվաճումներին: Հուրախություն մեզ՝ նրանք լուրջ բեկում մտցրին իրենց աշխատանքում, հրապարակեցին գիտական կարևոր հոդվածներ, սկսեցին ավելի մեծ հոգատարություն ցուցաբերել երիտասարդ գիտական կադրերի նկատմամբ:

Կուսակցության XXV համագումարը տասներորդ հնգամյակը հռչակեց որպես բարձր արդյունավետության և աշխատանքի որակի հնգամյակ: Մենք, բնականաբար, անդրադառնում ենք ինստիտուտի համար կենսական նշանակություն ունեցող այնպիսի խնդիրների, որոնց լուծումը նպաստում է գիտական հետազոտությունների արդյունավետության բարձրացմանը, գիտական աշխատանքի արմատական բարելավմանը: «Գիտական կադրերի պատրաստման ընթացքը և հետագա խնդիրները», «Փորձարտադրական արտադրամասում արդյունավետության և արտադրողականության բարձրացման ուղիները», «Գիտական հետազոտությունների արդյունավետության բարձրացման նպատակով կենսաբանական բաժնի նորաստեղծ լաբորատորիայում կատարվող աշխատանքի վիճակը» և այլ հարցեր կուսբյուրոյի նիստերում ու կուսժողովներում քննարկվել են գործարար մթնոլորտում և բարերար ազդեցություն թողել գիտական մտքի զարգացման վրա:

Զգալի են ինստիտուտի վերջին տարիների ձեռքբերումները: Մեր կոլեկտիվն ստեղծել է մի շարք կարևոր դեղամիջոցներ, վերջին մեկ տարում գիտական հետազոտությունների հիման վրա տպագրության են հանձնել 70-ից ավելի տարբեր բնույթի գիտական հոդվածներ, որոնցից 17-ը՝ հեղինակային իրավունքի ձևով:

Ինստիտուտի հաջողություններում մեծ ավանդ ունեն կոմունիստ գիտնականները: Նրանք քայլում են ավանգարդում, իրենց բեղմնավոր գործունեությամբ խթանում գիտահետազոտական աշխատանքի վերելքը: Շատ կոմունիստներ դարձել են նորույթների հեղինակներ, ակտիվորեն մասնակցել դեղամիջոցների ստեղծմանը: Այսպես, բժշկական պրակտիկայում լայն օգտագործման թույլատրված դիմեկումարոն պրեպարատի կենսաբանական հատկությունների հայտնաբերման գործում մեծ ջանքեր է ներդրել նաև կենսաբանական գիտությունների դոկտոր Հ. Ավագյանը: Բուսական ծագում ունեցող բիներգին պրեպարատը ներկայացվել է ՍՍՀՄ առողջապահության մինիստրության դեղաբանության կոմիտեին որպես դեղամիջոց՝ սրտի իշեմիկ հիվանդության կանխարգելման և բուժման համար: Այս պրեպարատի հեղինակներից մեկը բնական միացությունների լաբորատորիայի վարիչ, ինստիտուտի դիրեկտորի գիտական հարցերի գծով տեղակալ Վ. Մնացականյանն է:

Դրվատանքի արժանի է քիմիական լաբորատորիաների վարիչներ՝ անվանի գիտնականներ՝ ակադեմիկոս Ս. Վարդանյանի, Հովհ. Մնջոյանի, Է. Մարգարյանի, Ռ. Մելիք-Օհանջանյանի բեղմնավոր գործունեությունը: Նրանց ղեկավարած կոլեկտիվները հաջողությամբ սինթեզել են սրտանոթային հիվանդությունների դեմ պայքարի հակառռոցքային և այլ պրեպարատներ:

Գիտահետազոտական արգասավոր գործունեություն է ծավալում հակաբիոտիկների լաբորատորիայի վարիչ Շուշանիկ Մնացականյանը, որն զբաղվում է կիսասինթետիկ պենիցիլինների ստացմամբ: Նրա սինթեզած ֆեցիլին պրեպարատն արտոնագրվել է մի շարք տնտեսապես զարգացած կապիտալիստական երկրներում՝ Ֆրանսիա, ԱՄՆ, Անգլիա և այլն:

Ինստիտուտի կոլեկտիվի արգասավոր գործունեության շնորհիվ 1978 թվականին մի խումբ գիտնականներ արժանացան Հայկական ՍՍՀ պետական մրցանակի դափնեկրի կոչման: Նրանց թվում էին կոմունիստներ Հովհ. Մնջոյանը, Սվետլանա Ավետիսյանը, Մարիետա Գևորգյանը և Էլիզա Բաղդասարյանը:

Մեր կոմունիստներին հուզում է մի կարևոր հարց: Դա հանրապետությունում դեղաբանական քիմիայի զարգացումն է: Դրա նախադրյալը ինստիտուտում ստեղծված այն դեղամիջոցներն են, որոնք լավ քննություն են բռնում երկրի կլինիկաներում: Չափազանց բարձր է այդպիսի զարգացման տնտեսական արդյունավետությունը: Բավական է ասել, որ գրեթե լաբորատորիա հիշեցնող մեր փորձարտադրական տեղամասը տարեկան տալիս է մեկուկես միլիոն ռուբլուց ավելի արտադրանք: Հաճախ մեր պատրաստած մի քանի կիլոգրամ դեղամիջոցն ավելի թանկ արժե, քան քիմիական ձեռնարկությունում թողարկված մի քանի տոննա արտադրանքը: Սահմանափակ տարածք ունեցող մեր հանրապետությունում, անշուշտ, խիստ նպատակահարմար է զարգացնել դեղաբանական քիմիան:

Մեր հաջողությունները քիչ չեն, քիչ չեն և մեզ հուզող, լուծման կարոտ հարցերը: Բայց մենք համոզված ենք, որ դրանք կլուծվեն, որովհետև այդ հարցերը բարձրացնում, դրանց լուծմանն ակտիվորեն մասնակցում են հենց իրենք՝ կոմունիստները: Դրանում է մեր հաջողության գրավականը:



# Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱՆ ԵՎ ԺԱՄԱՆԱԿԱԿԻՑ ԴՊՐՈՑԸ

(Ն. Կ. ԿՐՈՒՊՍԿԱՅԱՅԻ ԾՆՆԴՅԱՆ 110-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Մ. ՊՐՈԿՈՖԵՎ**
ՍՍՀՄ լուսավորության մինիստր

*ԿՈՒՍԱԿՑԱԿԱՆ ՈՒ ՊԵՏԱԿԱՆ ականավոր գործիչ Ն. Կ. Կրուպսկայան անգնահատելի ավանդ է ներդրել մանկավարժական գիտության տեսության ու սովետական դպրոցի պրակտիկայի, ժողովրդական լուսավորության կազմակերպման և աճող սերնդի կոմունիստական դաստիարակության գործում: Նրա մանկավարժական համոզմունքները ձևավորվել են գիտական կոմունիզմի հիմնադիրների ուսմունքին ստեղծագործաբար տիրապետելու, հեղափոխական պայքարին և սոցիալիստական շինարարությանն ակտիվ մասնակցելու պրոցեսում: Իր մանկավարժական գործունեությունը նա միշտ համարել է ընդհանուր կուսակցական գործի անկապտելի մասը:*

*Կրուպսկայայի պատմական ծառայություններից մեկն այն է, որ նա առաջինը մանկավարժական գիտությունը խարսխեց մարքսիզմ-լենինիզմի վրա, այն կապեց հասարակության հեղափոխական վերակառուցման հետ: Իրականության մարքսիստական վերլուծության ստեղծագործական մեթոդը, հասարակական զարգացման ընթացքի ըմբռնումը նրան հնարավորություն ընձեռեցին նոր ուղիներ հարթելու կոմունիստական դաստիարակության տեսության ու պրակտիկայի ոլորտում:*

*Սոցիալ-քաղաքական բոլոր երևույթներում Կրուպսկայան միշտ կարողա-*
*նում էր գտնել մանկավարժական հայեցակետ, տեսնել ծնունդ առնող այն նո-*
*նիմ խնդիրներին:*
*րը, որ կարող է ծառայել նոր մարդու ձևավորման խնդիրներին:*
*Կրուպսկայայի մանկավարժական գաղափարները, որոնք անչափ առաջ*
*էին անցել իր ժամանակից, կարևոր հրատապ նշանակություն ունեն նաև մեր*
*օրերում, երբ լուծվում են ՍՄԿԿ XXV համագումարի առաջադրած երիտասար-*
*դության կոմունիստական դաստիարակության հետագա կատարելագործման*
*բարդ խնդիրները, իրականացվում է կոմպլեքսային մոտեցում դաստիարակու-*
*թյան հարցերում:*
*Ն. Կ. Կրուպսկայան մշակել է գիտականորեն հիմնավորված մանկավար-*
*ժական համակարգ: Չի եղել սովետական մանկավարժության ոչ մի քիչ թե*
*շատ խոշոր պրոբլեմ, որի լուծման վրա նա էական ազդեցություն գործած*
*չլինի և որը մարքսիստորեն հիմնավորած չլինի: Այդ պրոբլեմներից են ամե-*
*նից առաջ դաստիարակության էությունը, մանկավարժության՝ որպես գիտու-*
*թյան, մեթոդոլոգիան ու մեթոդները, դպրոցի կապը կյանքի հետ, մտավոր*
*կրթության կապը աշխատանքային դաստիարակության և պոլիտեխնիկական*
*կրթության հետ, ուսուցման բովանդակությունը և դրա կազմակերպական ձև-*

վերը, գիտական աշխարհայացքի ձևավորումը, աթեիստական դաստիարակությունը, պիոներական շարժման հիմունքներն ու կազմակերպական ձևերը, սովորողների ինքնակառավարման, դպրոցի ու ընտանիքի փոխհարաբերության, ուսուցչի դերի, նրա պատրաստման հարցերը։

Նադեժդա Կոնստանտինովնայի բազմակողմանի մանկավարժական ժառանգությանը բնորոշ են ներքին միասնությունը, ինքնակենտրոնացումը կարևորագույն պրոբլեմի՝ նոր մարդու դաստիարակության վրա։

Ն. Կ. Կրուպսկայան եղել է ո՛չ միայն ականավոր գիտնական, այլև ժողովրդական զանգվածների կուլտուրական մակարդակի բարձրացման համար մղվող պայքարի կազմակերպիչ՝ սկսած անգրագիտության վերացումից մինչև կուլտուրական հեղափոխության բարդ պրոբլեմները։ Նադեժդա Կոնստանտինովնան տեսական դրույթները սերտորեն կապում էր կյանքի, դպրոցի պրակտիկայի հետ։ Հիանալի տիրապետելով մարքսիստական դիալեկտիկական մեթոդին, հասարակական կյանքի այս կամ այն պրոցեսը, ինչպես և մանկավարժական երևույթները նա դիտում էր փոխադարձ կապի, զարգացման մեջ։ Նոր դպրոցի կառուցման ընթացքում առաջադրված խնդիրների լուծմանը նա միշտ մոտենում էր կուսակցական-դասակարգային դիրքերից՝ անխզելիորեն կապված քաղաքականության, էկոնոմիկայի, կուլտուրայի խնդիրների հետ։ Բացահայտելով սովետական դպրոցի զարգացման օբյեկտիվ օրինաչափությունները՝ Կրուպսկայան նշում էր կոմունիստական դաստիարակության գործի հետագա բարելավման հեռանկարները։

Միջազգային ասպարեզում գաղափարական սուր պայքարի արդի պայմաններում մեծ նշանակություն ունի Կրուպսկայայի՝ բուրժուական մանկավարժության ու դպրոցի սկզբունքային քննադատությունը։ Ղեկավարվելով մարքսիստական այն կարևորագույն դրույթով, ըստ որի դաստիարակությունը դասակարգային-պատմականորեն պայմանավորված հասարակական երևույթ է, նա ցույց է տվել բուրժուական հասարակությունում տիրապետող դասակարգի քաղաքականության սերտ կապը ռեակցիոն մանկավարժական տեսությունների ու դպրոցական պրակտիկայի հետ։ Դպրոցը բուրժուազիայի ձեռքում ավելի ու ավելի է դառնում նրա դասակարգային տիրապետության ամրապնդման միջոց։ Բուրժուազիան ամեն կերպ ձգտում է կատարելագործել այդ միջոցը, դարձնել այն ավելի նուրբ, ավելի ազդեցիկ, «գործի դնել դաստիարակության նոր մեթոդներ, ...հարմարվել նոր պայմաններին, տիրապետել դրանց» (Н. К. Крупская. Педагогические сочинения. В 10-ти томах. М., изд. Академии педагогических наук, 1957—1962, т. 10, стр. 303։ Այսուհետև մեջբերումները կատարվելու են այդ հրատարակությունից)։

Բուրժուական մանկավարժության ու դպրոցի փաստարկված քննադատությունը Նադեժդա Կոնստանտինովնայի աշխատություններում իր նշանակությունը չի կորցրել նաև մեր հասարակությանը խորթ հայացքների դեմ մղվող գաղափարական պայքարի արդի փուլում, կոմունիստական դաստիարակության տեսության ու պրակտիկայի հետագա զարգացման համար։

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակից հետո սովետական մանկավարժության առջև ծառացած էական խնդիրներից մեկը դաստիարակության նպատակներին վերաբերող սկզբունքորեն կարևոր հարցի տեսական մշակումն էր։ Առանց սովետական դպրոցի նպատակներն ու խնդիրները սահմանելու չէր կարելի հաջողությամբ ստեղծել նոր ծրագրեր, սահմանել դաստիարակության և ուսուցման նոր, հեղափոխական բովանդակությունը։ Կրուպսկայայի էական ծառայությունն այն է, որ մեկնելով հասարակական զարգացման խնդիրների և դաստիարակության նպատակների օրգանական կապի մասին մարքս-լենինյան ուսմունքից՝ նա կլասիկորեն ձևակերպել է այդ նպատակները։

«Սոցիալիստական դպրոցի հարցի շուրջ» հոդվածում (1918 թվական) Կրուպսկայան գրել է. «Բնակչությունը շահագրգռված է նրանով, որ տարրական, միջնակարգ և բարձրագույն դպրոցն ունենա ընդհանուր նպատակ. դաստիարակել համակողմանի զարգացած, գիտակցական ու կազմակերպված հասարակական բնազդներ, ամբողջական, խոր մտածված աշխարհայացք ունե-



ցող մարդիկ, որոնք պարզորոշ հասկանում են այն ամենը, ինչ տեղի է ունենում նրանց շուրջը՝ բնության մեջ և հասարակական կյանքում, մարդիկ, որոնք տեսության մեջ և պրակտիկայում նախապատրաստված են ինչպես ֆիզիկական, այնպես էլ մտավոր ամեն տեսակ աշխատանքի, որոնք կարող են կառուցել խելացի, բովանդակալի, գեղեցիկ ու բերկրալի հասարակական կյանք։ Այդպիսի մարդիկ անհրաժեշտ են սոցիալիստական հասարակությանը, առանց նրանց սոցիալիզմը լիովին չի իրականացվի» (հ. 2, էջ 11)։

Սոցիալիստական հասարակության մեջ դաստիարակության ու կրթության նպատակները համընկնում են բանվոր դասակարգի, աշխատավորների նպատակներին, յուրաքանչյուր ընտանիքի շահերին։ Կրուպսկայան դրանք համարում էր ոչ թե որպես հեռավոր ապագայի իդեալ, այլ՝ դպրոցի ամենօրյա գործնական խնդիրներ։

Աճող սերնդի համակողմանի զարգացման գաղափարը նա բացահայտում էր բազում կապերի ու միջնորդավորումների մեջ, անկախ նրանից՝ խոսքը վերաբերում է դաստիարակության նպատակներին, թե կրթության բովանդակությանը, ուսուցման մեթոդներին, երիտասարդության հասարակական ակտիվությանը։ Անհատի համակողմանի ծաղկումը Կրուպսկայան համարում էր սոցիալիզմի կառուցման ընթացքում ձևավորվող նոր հարաբերությունների բնական պահանջ։ Դպրոցի և ընդհանրապես հանրակրթական սիստեմի գործունեությունը Նադեժդա Կոնստանտինովնան դիտում էր որպես սոցիալիստական շինարարության անքակտելի մաս։ Սովետական դպրոցը դաստիարակում է հասարակության ակտիվ անդամներ, կոմունիստական իդեալների համար պայքարող տոկուն մարտիկներ։

Կոմունիզմի կառուցման գործում դպրոցի դերի ու տեղի մասին Կրուպսկայայի հիմնական գաղափարները հաջողությամբ իրականացվում են մեր երկրում։ Ստեղծվել է միասնական, աշխատանքային պոլիտեխնիկական դպրոց, որի հիմնական սկզբունքները սահմանված են Վ. Ի. Լենինի աշխատություններում։ Ժամանակակից դպրոցը երիտասարդ սերնդին տալիս է հիմնավոր գիտելիքներ, պատրաստում նրան մտավոր ու ֆիզիկական աշխատանքի, ընձեռում մասնագիտության ազատ ու խելացի ընտրության հնարավորություն։ Դպրոցը սովորեցնում է գիտակցաբար վերաբերվել շրջապատող կյանքին, ակտիվ մասնակցել կոմունիստական շինարարությանը։

Շատ բան է արվել, բայց անելիքներ դեռ շատ կան։ Դպրոցի առջև ծառացած են սոցիալական մեծ նշանակություն ունեցող խնդիրներ ընդհանուր միջնակարգ կրթության հետագա կատարելագործման, կրթության և գաղափարաքաղաքական, աշխատանքային ու բարոյական դաստիարակության օրգանական միասնության իրականացման մարզում։

Ն. Կ. Կրուպսկայան հետևողականորեն ապացուցում էր, որ նոր հասարակարգի երիտասարդ կառուցողների ձևավորման համար անհրաժեշտ է ուսուցման ու դաստիարակության անընդմեջ օրգանական կապ։ Նա գրել է, որ յուրաքանչյուր առարկայի ուսուցիչ ոչ մի րոպե չպետք է մոռանա նպատակը՝ սոցիալիստական հասարակարգի գիտակից ու ակտիվ կառուցողների դաստիարակությունը. այդ նպատակին պետք է ծառայեն և՛ ուսումնական նյութի կազմակերպումը, և՛ սիստեմատիկան, և՛ աշխատանքի մեթոդները (տե՛ս հ. 3, էջ 559)։

Կրուպսկայայի աշխատություններում առաջադրված են դպրոցում կրթության բովանդակությունը սահմանող սկզբունքային մի շարք դրույթներ— ուսումնական առարկաների դիալեկտիկամատերիալիստական փոխադարձ կապը, ուսումնասիրվող նյութի կապը կյանքի, կոմունիստական կուսակցության քաղաքականության հետ, փաստական նյութի մարքսիստական լուսաբանումը ուսումնական առարկաների ուսումնասիրման ժամանակ։

Նադեժդա Կոնստանտինովնան շեշտում էր, որ անհրաժեշտ է առավել գիտական դարձնել կրթության բովանդակությունը, խնամքով ընտրել նյութը, որը պետք է պատկերացում տա երևույթների էության, դրանց ամենաարմատական և սկզբունքային հիմունքների մասին։ Նա առաջարկում էր «դիալեկտիկական մատերիալիզմի և գիտության ու տեխնիկայի ժամանակակից նվա-

պետք է լինի ամենից առաջ ուսուցման այնպիսի մեթոդների կիրառումը դպրոցներում և ուսումնական այլ հաստատություններում, որոնք առավելագույնս կնպաստեն սովորողների ակտիվ մտավոր գործունեությանը։ Մյուս կողմից, անհրաժեշտ է հետդպրոցական կամավոր պարապմունքների պրակտիկայի հետագա ծավալում։ Երեկոյան դասընթացները, հեռակա դպրոցներն ու ուսումնական այլ հաստատությունները, գիտական գիտելիքների համալսարանները, «Գիտելիք» ընկերության կազմակերպած դասախոսությունների ցիկլերը, այս բոլոր ձևերն արդեն լայնորեն տարածվել են և, անտարակույս, այսուհետ ևս կզարգանան։

Գիտական աշխարհայացքի և գաղափարական համոզվածության ձևավորման մասին, կոմունիստական բարոյականությամբ, սովետական հայրենասիրությամբ ու պրոլետարական ինտերնացիոնալիզմով տոգորված մարդու, հասարակական կյանքի տարբեր բնագավառներում ակտիվ գործունեության համար նախապատրաստված անհատի դաստիարակության վերաբերյալ Նադեժդա Կոնստանտինովնայի հայացքների ստեղծագործական կենսագործումը մեծապես նպաստում է պրակտիկային ու մանկավարժական գիտությանը։

Կրուպսկայան կոմունիստական դաստիարակության հզոր գործոն էր համարում աշխատանքը։ Աճող սերնդի աշխատանքի կազմակերպումը նա համարում էր անհատի ձևավորման կենսական հիմքը։ «...Երեխաների կոմունիստական դաստիարակության մեխը նրանց աշխատանքի կազմակերպումն է» (հ. 4, էջ 237)։ Աշխատանքային դաստիարակության վերաբերյալ Կրուպսկայայի գաղափարների համար հիմք են ծառայել Մարքսի, Էնգելսի, Լենինի մտքերը աշխատանքի մասին՝ որպես մարդկային հասարակության ձևավորման գլխավոր պայմանի։

Նադեժդա Կոնստանտինովնան մեծ ուշադրություն էր նվիրում աշխատանքի մանկավարժական ասպեկտների որոնմանն ու մշակմանը։ Նա շեշտում էր, որ չի կարելի աշխատանքի դաստիարակչական դերի մասին խոսել ընդհանրապես։ Ոչ բոլոր աշխատանքներն են, որ դաստիարակչական ազդեցություն են գործում աճող սերնդի վրա։ Մանկան աշխատանքի կազմակերպման խնդրում, նրա կարծիքով, անհրաժեշտ է պահպանել հետևյալ պայմանները. դպրոցականներին հարկավոր է հետաքրքրել աշխատանքով, աշխատանքը պետք է լինի ո՛չ միայն ֆիզիկական, այլև սովորողի ուժերի ու գիտելիքների համեմատ՝ մտավոր, ընդ որում հարկ է այնպես անել, որ դրսևորվեն յուրաքանչյուր աշակերտի ընդունակությունները, գիտելիքները, փորձը, ամեն դեպքում դպրոցականը պետք է տեսնի իր աշխատանքի արդյունքը, դրա օգտակարությունը։ Աշխատանքը պետք է լուսավորված լինի գիտելիքների լույսով։

Հասարակական աշխատանքի պրոցեսում երեխաները ձեռք են բերում կոլեկտիվիստական հմտություններ։ Հատկապես կարևոր են երեխաների աշխատանքի կոլեկտիվ ձևերը. դրանք համակում են աշխատանքի նկատմամբ սոցիալիստական վերաբերմունքի, ընկերականության, փոխօգնության ոգով։ Նադեժդա Կոնստանտինովնան սովետական մանկավարժներից առաջինն էր, որ հիմնավորեց կոլեկտիվի դերը կոմունիստական դաստիարակության խնդիրների լուծման գործում։ Կոլեկտիվի, հասարակական և անձնական շահերի անխզելի միասնության՝ կոլեկտիվիստական հոգեբանության մասին նրա գաղափարներն էական ազդեցություն են գործել կոմունիստական դաստիարակության տեսության ու պրակտիկայի զարգացման վրա։

Կրուպսկայայի գաղափարներն աշխատանքային դաստիարակության, կոլեկտիվիզմի մասին հրատապ են նաև այժմ, չնայած աշխատանքային ուսուցման ու պրոֆեսիոնալ կողմնորոշման պրոբլեմը նոր երանգ է ստացել։ Ընդհանուր միջնակարգ կրթությունն իրականություն է դարձել։ Այժմ, որպես կանոն, պատանիներն ու աղջիկները մինչև 17—18 տարեկանը սովորում են դպրոցում կամ ուսումնական այլ հաստատություններում։ Աշխատանքի բոլոր տեսակների համար պատրաստվում է կրթական բարձր մակարդակ ունեցող համալրում։ Այդ ամենի համար անհրաժեշտ էր դպրոցի նոր վերաբերմունքը աշխատանքային դաստիարակության նկատմամբ։ «Հանրակրթական դպրոցների սովորողների ուսուցման, դաստիարակության և նրանց աշխատանքի նա-



խապատրաստման հետագա կատարելագործման մասին» ՍՄԿԿ Կենտկոմի և ՍՍՀՄ Մինիստրների խորհրդի որոշման մեջ հատկապես շեշտված է, որ դպրոցը պետք է վճռական շրջադարձ կատարի երիտասարդությանը նյութական արտադրության ոլորտում աշխատանքի նախապատրաստելու գործը բարելավելու նպատակով։ Այդ խնդիրը, նշված է որոշման մեջ, պետք է խորապես գիտակցեն սովետական ուսուցիչները, սովորողներն ու նրանց ծնողները։ Նշված են աշխատանքային ուսուցման ու դաստիարակության կատարելագործման ուղիներն ու միջոցները։

Այս առումով դպրոցը որոշակի փորձ է կուտակել։ Այսօրվա խնդիրն է բոլոր սովորողներին հնարավորություն ընձեռել մոտ ժամանակում բանվորական մասնագիտություններում կողմնորոշվելու հմտություն ստանալու, իրենց ուժերի չափով հանրօգուտ աշխատանքին մասնակցելու։ Դրա համար կպահանջվի ստեղծել լրացուցիչ ուսումնական արտադրամասեր, միջդպրոցային կոմբինատներ, ավելի լայնորեն օգտագործել ուսուցման մյուս ռացիոնալ ձևերը։ ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը մինիստրություններին ու գերատեսչություններին, ձեռնարկությունների ու կազմակերպությունների, սովխոզների ու կոլտնտեսությունների ղեկավարներին պարտավորեցրել են ամեն կերպ օգնել դպրոցականների աշխատանքային ուսուցմանն ու մասնագիտական կողմնորոշմանը։

Մենք պետք է առավելագույն պարզությամբ գիտակցենք, որ աշխատանքային ուսուցումն ինչպես հարկն է կարելի է կազմակերպել միայն սերտորեն դաշնակցած գործարանի, կոլտնտեսության, սովխոզի, ձեռնարկության հետ, նրանց օգնությամբ։ Շատ ձեռնարկություններ լավ են օգնում դպրոցին այդ կարևոր գործում։ Դրանց ղեկավարները ճիշտ են դատում. այսօր պատանին դպրոցական է, վաղը՝ բանվոր։ Նա, ով մտածում է սովխոզի, գործարանի ապագայի մասին, չի կարող մոռանալ դպրոցը։ Շատ շրջաններում, մարզերում ու հանրապետություններում ամենայն ուշադրությամբ վերլուծվել է գործերի վիճակը և նշվել են դպրոցին օգնելու միջոցներ, որպեսզի մինչև հնգամյակի վերջը ստեղծվի բոլոր սովորողներին ընդգրկող աշխատանքային ուսուցման անհրաժեշտ բազա։ Նախատեսվում է ընդլայնել աշխատանքի ուսուցիչների պատրաստումը, կազմակերպել մանկավարժական և հոգեբանական հարցերին նվիրված հատուկ դասընթացներ աշխատանքային ուսուցման հրահանգիչ-պրակտիկների համար։

Ամառային արձակուրդների ընթացքում կոլտնտեսություններում, գործարաններում դպրոցականների ուժերին համապատասխան կատարած աշխատանքը հաճախ զուգակցվում է կազմակերպված հանգստի հետ։ Անցյալ ամառ մոտ 12 միլիոն բարձր դասարանցիներ իրենց արձակուրդների մի մասն անցկացրին դպրոցական աշխատանքային միավորումներում։

Մանկավարժական ողջ կոլեկտիվի նպատակն է աշխատանքային դաստիարակությունը, աշխատանքի լավ կազմակերպումը, խելամիտ բացատրական աշխատանքը. այս ամենը կոչված են օգնելու շրջանավարտներին տիրապետելու որոշակի մասնագիտության։ Շրջանավարտի հոգում պետք է հետաքրքրություն արթնանա պրոֆեսիոնալ գործունեության կոնկրետ տեսակի նկատմամբ, որպեսզի, դպրոցն ավարտելով, նա կարողանա անմիջապես կամ լրացուցիչ պրոֆեսիոնալ ուսուցումից հետո, հաջողությամբ աշխատել ամենից առաջ նյութական արտադրության ոլորտում։

Այդ համատեղ ջանքերի արդյունքը կդրսևորվի այն բանում, թե շրջանավարտները որքան արագ կներգրավվեն աշխատանքային գործունեության ոլորտը, թե ո՛ր չափով է նրանց պատրաստականության բնույթը համապատասխանում ժողովրդական տնտեսության պահանջմունքներին։

Դպրոցը հետևողականորեն ջանում է կատարելագործել պոլիտեխնիկական գիտելիքները, դրանք տրամաբանորեն կապակցել արդի տեսության հետ։ Անցյալի գիրկն է անցել այն պատկերացումը, թե իբր միջնակարգ կրթությունն ուղիղ ճանապարհ է բացում միայն դեպի մտավոր աշխատանքի ոլորտը։ Ի դեպ, արտադրության մեջ այժմ, շատ ու շատ գործողություններում, հավասարապես անհրաժեշտ են ինչպես մտավոր, նույնպես և ֆիզիկական ջանքեր։

տնտեսական քաղաքականության (էկոնոմիկայի պլանավորման, կառավարման, աշխատանքի դերի ու դրա բաշխման), մեր քաղաքական սիստեմի, դրա հիմքում ընկած սոցիալիստական դեմոկրատիայի, աշխատանքային կոլեկտիվների և հասարակական կազմակերպությունների նշանակության և, վերջապես՝ հասարակության մեջ յուրաքանչյուր մարդու դերի մասին։

Առաջին դասարաններից սահմանված են աշխատանքի դասեր։ Դպրոցների մեծ մասը դրա համար ունի համապատասխան արհեստանոցներ։ Այժմ կան աշխատանքային ուսուցման հազարից ավելի միջդպրոցական կոմբինատներ, որտեղ, գերազանցապես ձեռնարկությունների ուժերով, որպես իրենց կառուցվածքային ստորաբաժանումներ, ստեղծված են հատուկ արտադրամասեր։ Այդ կոմբինատներում, ինչպես և ձեռնարկությունների ուսումնական արտադրամասերում, դպրոցականների հետ պարապմունքներ են անցկացնում հրահանգիչ-դաստիարակները։ Սովորողների մեծ կոլեկտիվները, ինչպես արդեն ասվեց, իրենց արձակուրդների մի մասն անցկացնում են դպրոցական աշխատանքային միավորումներում։

Սխալ կլիներ կարծել, թե պոլիտեխնիկական ուսուցման կազմակերպման գործում դպրոցի առջև ոչ մի պրոբլեմ ծառացած չէ։ Հարկավոր է ավելի լայնորեն պրոպագանդել առաջավոր արտադրական կոլեկտիվների փորձը։ Իսկ գլխավորը, ժամանակակից արտադրության զարգացման, դրա կատարելագործման հետ մեկտեղ անհրաժեշտ է համապատասխանաբար փոխել նաև պոլիտեխնիկական պատրաստության բովանդակությունը։ Ստատիկությունն այս գործում հղի է վտանգով։

Հետաքրքրական են Կրուպսկայայի գաղափարները դպրոցում ռուսաց լեզվի ուսումնասիրման նշանակության մասին։ Սովետական դպրոցը, ինչպես հայտնի է, բազմազգ է։ Այն կառուցվել է այդպես առաջին օրերից, այդպիսին էլ մնում է նաև այժմ։ Մայրենի լեզուն, իրենց ժողովրդի գրականությունն ու կուլտուրան ուսումնասիրում են մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների դպրոցականները։ Դա, մասնավորապես, պայմանավորեց ձևով բազմազգ, բովանդակությամբ սոցիալիստական սովետական գրականության ու արվեստի բուռն ծաղկումը։

Դրա հետ մեկտեղ զարգացել ու տարածվել է ազգամիջյան հաղորդակցման լեզուն՝ ռուսերենը։ Բոլոր դպրոցներում ուսումնասիրվում է այն։ Տարբեր ազգերի ու ազգությունների դպրոցականները ռուսերենը համարում են իրենց երկրորդ մայրենի լեզուն։ Սակայն լուսավորության աշխատողները դեռ շատ անելիքներ ունեն, որպեսզի բոլոր սովորողներն ազատ տիրապետեն այդ լեզվին։ Լուսավորության սիստեմը հետևողականորեն ջանում է բարձրացնել ռուսաց լեզվի ուսուցման որակը։

Այս առնչությամբ տեղին է հիշել Կրուպսկայայի հիանալի մտքերը։ «Մեզ մոտ ոմանք կարծում են,— գրել է նա,— թե հարկավոր է սովորեցնել միայն մայրենի լեզվով, եթե ոչ, կստացվի թեքում մեծապետական շովինիզմի կողմը։ Այդ ճիշտ չէ։ Շովինիզմ կլիներ այն ժամանակ, եթե մենք ուսուցանեինք միայն ռուսաց լեզվով... Բայց եթե մեկը ցանկանում է գրագիտություն սովորել ռուսաց լեզվով, մենք պետք է ընդառաջենք նրան։ ...Մեկ ընդհանուր հեղափոխական լեզվի իմացությունը մերձեցնում է տարբեր ազգություններին, նպաստում նրանց ավելի լավ փոխըմբռնմանը... Ռուսաց լեզուն հարկավոր է ուսումնասիրել՝ ավելի բարձր մակարդակի բարձրացնելու համար տվյալ ազգության կուլտուրան, բայց միաժամանակ հարկ է պահպանել, զարգացնել այն ողջ լավը, որ կա յուրաքանչյուր ազգային մշակույթում» (հ. 9, էջ 519)։

Կրուպսկայայի անվան հետ է կապված պիոներական շարժման սկզբնավորումը մեր երկրում։ Այդ շարժումը դիտելով որպես հասարակական կյանքի օբյեկտիվորեն անհրաժեշտ երևույթ, պիոներական կազմակերպությունը նա համարում էր դեռահասների քաղաքական կազմակերպություն, որը պետք է դաստիարակի մարդկանց, որոնք գիտեն, թե ինչի համար են պայքարում, պատրաստ են պայքարելու սոցիալիզմի համար։

Կրուպսկայայի բոլոր աշխատություններում ակնբախ է այն միտքը, որ պիոներական կազմակերպության գլխավոր նպատակն է երեխաներին դաս-



տիարակել կոմունիզմի ոգով։ Իսկ այդ նշանակում է, պարզաբանում էր Նադեժդա Կոնստանտինովնան, նրանց համար հարազատ դարձնել այդ գործը, աճող սերնդին համակել կոմունիզմի հաղթության ձգտումով, անհանդուրժողականությամբ այն ամենի հանդեպ, ինչ խանգարում է մեր առաջընթացին։
Կրուպսկայայի նամակագրությունը պիոներների հետ այժմ էլ ծառայում է
որպես գործողության ուղեցույց։ Նա կարողանում էր աշխույժ, մատչելի ձևով
պարզաբանել նրանց կուսակցության կարևորագույն որոշումները, սոցիալիս-
տական շինարարության խնդիրները։
Պիոներական կազմակերպության մեջ երեխաները հաղորդակցվում են
հասարակական աշխատանքին, ձևավորվում են նրանց կոմունիստական բա-
րոյականության կարևորագույն հատկանիշները։ Կրուպսկայան վճռականորեն
դեմ էր երեխաների նկատմամբ մեծահասակների անսահման խնամակալու-
թյանը։ Պիոներիան նա համարում էր մարտական, ակտիվ կազմակերպու-
թյուն, երեխաների բոլոր նախաձեռնությունների կազմակերպիչ ու ղեկավար։
Նադեժդա Կոնստանտինովնան մշակել է պիոներական կազմակերպության
գործունեության բովանդակությանն ու մեթոդիկային վերաբերող հարցերը։
Գլխավորն այն է, որ պրակտիկ գործունեության ընթացքում պիոներները սո-
վորեն ապրել ու գործել, խելացի ու կազմակերպված աշխատեն ու խաղան, որ
նրանք զարգանան մտավորապես ու ֆիզիկապես, բարոյապես ու գեղագիտո-
րեն։ Կրուպսկայան շարադրել է պիոներական շարժման տեսությունը։ Պիոնե-
րական գործիչները նրա աշխատություններից քաղում են այսօր ևս մեզ հուզող
հարցերի պատասխանները։
Ն. Կ. Կրուպսկայան առաջին մարքսիստ մանկավարժն է, որը ցույց է
տվել մանկական ինքնավարության դերն ու նշանակությունը կոմունիստական
դաստիարակության գործում։ Նա բազմիցս շեշտել է, որ մանկական ինքնա-
վարության նպատակն ու խնդիրները սովետական դպրոցում օրգանապես խորթ
են բուրժուական դպրոցի ինքնավարության նպատակներին, որտեղ այն պա-
տանի հասակից անտագոնիստական հասարակության օրենքներով ապրելու
սովորույթ մշակելու միջոց է։
Դպրոցական ինքնավարության հարցերը Կրուպսկայան զննում էր ո՛չ
միայն մանկավարժական, այլև հասարակական-քաղաքական լայն պլանով։
Այդպիսի ինքնավարության նպատակն է՝ երեխաներին վարժեցնել կոլեկտիվ
կերպով սովորելու, աշխատելու, ձեռք բերելու որոշակի հմտություններ, որոնք
անհրաժեշտ են ինչպես դպրոցի կյանքի կազմակերպման, նույնպես և աշխա-
տանքային, հասարակական առաջիկա գործունեության համար։ Մանկական
ինքնավարությունը, նշում էր նա, պետք է դառնա հասարակական աշխատան-
քի դպրոց, որի օգնությամբ սովորողները կներգրավվեն բազմապիսի գործու-
նեության ոլորտը։ «Մեզ անհրաժեշտ են այնպիսի դպրոցական կազմակերպու-
թյուններ, որոնք ընդգրկեն բոլոր երեխաներին, նրանց մասնակից դարձնեն
բոլոր հարցերի քննարկմանը, որպեսզի երեխաները համատեղ ինչ-որ որոշում
ընդունեն իրենց աշխատանքի, ամբողջ կենսաձևի, կենսավարման վերաբերյալ
և ապա իրենք կենսագործեն իրենց որոշածը» (հ. 3, էջ 454)։
ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեն և ՍՍՀՄ Մինիստրների խորհուրդը վերո-
հիշյալ որոշման մեջ առաջարկել են ակտիվացնել սովորողների ինքնավարու-
թյան մարմինների գործունեությունը։ Այժմ ամենուրեք ստեղծվել են աշակեր-
տական կոմիտեներ։ Հաստատված է հանրակրթական դպրոցի աշակերտական
կոմիտեի կանոնադրությունը։ Վերջերս ՍՍՀՄ լուսավորության մինիստրության
կոլեգիայում քննարկվեց Տագանրոգի դպրոցներից մեկի աշակերտական կո-
միտեի աշխատանքի փորձը։ Այդ դպրոցում կարողացել են բոլոր աշակերտնե-
րին ներգրավել ակտիվ գործունեության ոլորտը։ Այդ ամենը բարերար ազդե-
ցություն է գործել դպրոցականների դաստիարակության և ուսուցման վրա։
Բարելավվել է նաև կոմերիտական մարմինների գործունեությունը, որոնք հա-
տուկ պատասխանատվություն են զգում դպրոցական ողջ կոլեկտիվի աշխա-
տանքի համար։
Դպրոցական դեմոկրատիայի առաջավոր պրակտիկայի համակողմանի
ուսումնասիրումն ու ընդհանրացումը, դպրոցական ինքնավարության նպա-

տակների ու խնդիրների, կազմակերպական կառուցվածքի, բովանդակության և մեթոդիկայի վերաբերյալ Կրուպսկայայի արժեքավոր մտքերի խոր վերլուծությունն ու ստեղծագործական օգտագործումը մանկավարժական գիտության ու պրակտիկայի կարևոր խնդիրն է։

Ն Կ. Կրուպսկայան հմտորեն իր շուրջն էր համախմբում գիտական ուժերին. նա հասկանում էր, որ լուսավորության նոր սիստեմի ստեղծումն անհնար է՝ առանց պրակտիկ փորձի ընդհանրացման, առանց հոգալու մանկավարժական գիտության զարգացման մասին։

Իր աշխատություններով Նադեժդա Կոնստանտինովնան արկանել է սովետական մանկավարժության գիտական հիմքերը։ Եվ միշտ համեստորեն գնահատելով իր ծառայությունները՝ նա կոչ էր անում չհանգստանալ, ստեղծագործաբար որոնել կյանքի առաջադրած կոմունիստական դաստիարակության պրոբլեմների պատասխանները։ «Դրված են մարքսիստական մանկավարժության առաջին քարերը միայն,— ասում էր նա,— բայց անհրաժեշտ է կառուցել ամբողջ շենքը։ Ամեն օր ծագում են պատասխան պահանջող մի շարք նոր հարցեր։ Հարկավոր է վիթխարի աշխատանք մարքսիստական մանկավարժության բնագավառում» (հ. 2, էջ 396)։

Մեր օրերում, առավել ևս ոչ պակաս ծագում են պատասխան պահանջող նոր հարցեր, չնայած շատ բան արդեն փոխվել է։ ՍՍՀՄ մանկավարժական գիտությունների ակադեմիայում, մանկավարժական և հոգեբանական բնույթի գիտահետազոտական այլ հաստատություններում գիտնականների մեծ կոլեկտիվներ աշխատում են մանկավարժության բնագավառում։ Երկրի 200 մանկավարժական ինստիտուտներում կան համապատասխան ամբիոններ։ Տարբեր մասնագիտությունների շատ գիտնականներ դաստիարակության գիտական պրոբլեմներն ուսումնասիրում են սոցիալական, ֆիզիոլոգիական և հոգեբանական առումով։ Արգասավոր է սոցիալիստական երկրների մանկավարժական գիտության գործիչների համագործակցությունը։ Բայց մենք անհեռատես կլինեինք, եթե բավարարվեինք ձեռք բերածով։ Բուռն զարգացող կյանքը ուժգին ներգործում է մարդու վրա։ Փոխվում են սոցիալական պրոցեսների վրա մարդկանց ազդեցության պայմանները։ Բնականաբար, պետք է փոխվի նաև կրթության բովանդակությունը դրա բոլոր փուլերում։ Անհրաժեշտ է կատարելագործել հետևողականորեն դեպի կոմունիզմ ընթացող հասարակության մարդկանց դաստիարակության մեթոդները։ Ավելի է հարստանում կենսապրակտիկան։ Այս ամենը մեր օրերում ևս հաստատում է Կրուպսկայայի այն միտքը, որ անհրաժեշտ է վիթխարի ստեղծագործական աշխատանք մարքսիստական մանկավարժության բնագավառում։

Ղեկավարվելով դաստիարակության և հասարակական հարաբերությունների սիստեմի օրգանական կապի մարքսիստական ըմբռնմամբ, Կրուպսկայան միշտ շեշտել է հասարակարգի վճռական ազդեցությունը աճող սերնդի գիտակցության, բարոյական վարքագծի ձևավորման վրա։ Նա ասում էր. «...Գրավականն այն բանի, թե [հնարավոր է] դաստիարակել այնպիսի մի սերունդ, որն իրոք կկարողանա վերջնականապես կառուցել սոցիալիզմը, որի հիմքն արկանում է ներկա սերունդը, դրա երաշխիքն այն է, որ մեզ մոտ գոյություն ունի սովետական իշխանություն, որ ամբողջ կենսաձևն այնպիսին է, որ ինքը՝ այդ կենսաձևն է առաջ մղում, սովորեցնում, դաստիարակում» (հ. 5, էջ 263)։ Սոցիալիստական կարգը, սոցիալիստական ապրելակերպը, մարքս-լենինյան գաղափարախոսությունն այժմ պայմանավորում են դպրոցի ողջ կյանքը, մանկավարժական ողջ գործունեությունը։

Ն. Կ. Կրուպսկայային հիշում են որպես ականավոր կուսակցական ու պետական գործիչ՝ հազարավոր թելերով կապված աշխատավոր մասսաների հետ, որպես հիանալի մանկավարժ և սքանչելի մարդ։ Նրա կյանքի ողջ ուղին, անսահման նվիրվածությունը կոմունիզմի գործին ոգեշնչող օրինակ են։

Նադեժդա Կոնստանտինովնայի մանկավարժական մեծ ժառանգությունը բարձր է գնահատվել մեր երկրում, միջազգային պրոգրեսիվ հասարակայնության կողմից։ ՍՍՀՄ կառավարությունը սահմանել է Ն. Կ. Կրուպսկայայի մեդալ աճող սերնդի ուսուցման և դաստիարակության գործում ցուցաբերած ծառայությունների համար և Ն. Կ. Կրուպսկայայի անվան մրցանակ՝ դաստիարակության և ուսուցման պրոբլեմներին նվիրված լավագույն գիտական աշխատությունների համար։ Ռուսաստանյան Ֆեդերացիայի կառավարությունը սահմանել է Ն. Կ. Կրուպսկայայի անվան ՌՍՖՍՀ պետական մրցանակ՝ աչքի ընկնող մանկապատանեկան գեղարվեստական ստեղծագործությունների համար։

Միավորված ազգերի կազմակերպությունը 1979 թվականը հայտարարել է մանկան միջազգային տարի։ Սովետական Միությունում կենսագործվել են մանկան իրավունքների դեկլարացիայի սկզբունքները, որ ընդունել է ՄԱԿ-ը 20 տարի առաջ։ Սովետական իշխանությունն իր գոյության առաջին օրերից արել է հնարավոր առավելագույնը՝ մանկության պահպանության համար։ Դրա վառ վկայությունն է լենինյան դեկրետը երեխաների պաշտպանության խորհուրդ հիմնելու մասին։ Մեր օրերում ՍՍՀՄ Սահմանադրությունը՝ զարգացած սոցիալիզմի հասարակության հիմնական օրենքը, երաշխավորում է աճող սերնդի երջանիկ մանկության, համակողմանի զարգացման, աշխատանքային գործունեության համար որակյալ պատրաստականության իրավունք ապահովող միջոցառումների լայն սիստեմի իրականացում, ներառյալ անվճար, ընդհանուր, պարտադիր միջնակարգ կրթությունը։

Մանկան միջազգային տարվա առնչությամբ մենք վերստին երախտագիտությամբ ենք հիշում, թե որքա՜ն շատ բան է արել երեխաների, պատանիների համար Կրուպսկայան, և ոչ միայն մեր երկրի մանուկների համար։ Նրա աշխատությունները մեծ ուշադրությամբ ուսումնասիրում են աշխարհի շատ երկրներում, նրա գաղափարներն առավել լայնորեն են կիրառվում միջազգային մանկավարժական պրակտիկայում։ Զարգացող երկրներում գրագիտության տարածման գործի ակնբախ հասումների համար լուսավորության առանձին կազմակերպությունների ու գործիչների ամեն տարի ՅՈՒՆԵՍԿՈ-ն շնորհում է սովետական կառավարության կողմից նրա տնօրինությանը հանձնված Ն. Կ. Կրուպսկայայի անվան մրցանակ։

Կրուպսկայայի աշխատությունների նշանակությունը չի սպառվում սովետական դպրոցի ստեղծման ու զարգացման անցած փուլով։ Դրանք այն կենսահորդ աղբյուրն են, որ, սնելով մանկավարժական միտքն ու պրակտիկան, առաջ են մղում դրանք հանուն կոմունիստական հասարակության մարդու դաստիարակության ծավալվող պայքարի նորանոր բարձունքներ։

«Коммунист», № 3, 1979 г.

# ԷՋԵՐ ՄԵԾ ԿՅԱՆՔԻՑ

Կուսակցական ու պետական ականավոր գործիչ Ն. Կ. Կրուպսկայային նվիրված գրականության ցանկը հարստացավ մի նոր գրքով*: Հեղինակային կոլեկտիվը խնամքով ժողովել, ի մի է բերել այն ամենը, ինչ ամբողջացնում է Լենինի մերձավորագույն բարեկամի կյանքն ու գործունեությունը: Գրքում ըստ արժանվույն գնահատված է Նադեժդա Կոնստանտինովնայի դերը բոլշևիկյան կուսակցության ստեղծման ու ամրապնդման, Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության հաղթանակի, մեր երկրում սոցիալիզմի կառուցման, ինչպես նաև ժողովրդական տնտեսության, գիտության ու կուլտուրայի համար գաղափարապես համոզված, մասնագիտորեն հմուտ ու կոփված կադրեր պատրաստելու գործում:

Գրքի բազմաթիվ էջեր արտացոլում են նրա անխոնջ ջանքերը կուլտուրական հեղափոխության տեսության և պրակտիկայի խնդիրները ժամանակին լուծելու, ժողովրդական կրթության, աճող սերնդի կոմունիստական դաստիարակության կազմակերպման մարզում:

Կրուպսկայայի գրական ժառանգության վավերագրական աղբյուրների մանրազնին ուսումնասիրմամբ, օգտագործված արխիվային նյութերի, Նադեժդա Կոնստանտինովնայի ժամանակակիցների, մտերիմների հուշերի օգտագործմամբ հեղինակային կոլեկտիվը համակողմանի լուսաբանել է նրա հերոսական կյանքը, որի էջերը յուրովի արտացոլում են լենինյան կուսակցության պատմությունը, սոցիալիզմի կառուցման համար մեր ժողովրդի մղած պայքարը:

Իր կյանքի ամեն մի աչքի զարնող իրադարձությամբ Իլյիչի հետ սերտորեն առնչված բացառիկ համեստ այդ անձնավորությունն իրեն համարում էր պատմական մեծ անցքերի սոսկ վկան: Իրականում Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության, մեր երկրում սոցիալիզմի կառուցման ակտիվ մասնակիցն էր նա:

Նադեժդա Կոնստանտինովնան ծնվել է 1869-ի փետրվարին, առաջադեմ հեղափոխական-դեմոկրատական ընտանիքում: Ոսկե մեդալով ավարտելով իգական գիմնազիան, նա սովորում է մանկավարժական դասարանում, ստանալով տնային ուսուցչուհու կոչում: Աշակերտուհիները ջերմորեն սիրում էին իրենց ուսուցչուհուն: «Վայելչակազմ աղջիկ էր,— գրել է նրա աշակերտուհիներից մեկը՝ գրող Վ. Գ. Կորոլենկոյի աղջիկը,— գեղեցիկ, մոխրագույն աչքերով, բարձր ճակատով, երկար, խարտյաշ հյուսով... սիրալիր ու չափազանց բարի»:

1889 թվականին Կրուպսկայան ծանոթանում է Պետերբուրգի տեխնոլոգիական ինստիտուտի բարձր կուրսերի ուսանողների հետ, դառնում ռուս առաջին մարքսիստներից մեկի՝ Մ. Ի. Բրյուսնևի սոցիալ-դեմոկրատական խմբակի, այնուհետև մարքսիստական խմբակի անդամ. ուսումնասիրում է Կ. Մարքսի Կապիտալ-ի I հատորը և մարքսիստական այլ գրականություն: Նա որոնում է և ստանում իրեն հուզող հարցերի պատասխանները. «Ես իսկական կենարար ջուր խմեցի: Ո՛չ անհատների տեռորի, ոչ էլ տոլստոյական ինքնակատարելագործման մեջ պետք է փնտրել ուղին: Հզոր բանվորական շարժում՝ ահա թե ո՛րն է ելքը», եզրակացնում է նա: Գիտական կոմունիզմի հիմնադիրների աշխատություններն օգնում են Կրուպսկայային՝ հասկանալու ճշմարիտ նպատակը, որի համար պետք է պայքարել:

1891 թվականին Նադեժդա Կոնստանտինովնան Պետերբուրգի Նևայի ուղեկալի մեծահասակ բանվորների կիրակնօրյա երեկոյան դպրոցի ուսուցչուհի է: Բարի, սիրալիր ու խելացի ուսուցչուհին կարողանում է թափանցել իր աշակերտների՝ բանվորների հոգու խորքը, դառնում նրանց մտերիմ խորհրդատուն ու օգնականը. նրանց հուզող հարցերի պատասխանը նա գտնում է իր ուսումնասիրած մարքսիստական գրքերում: Բանվորները տեսնում էին, թե իրենց երիտասարդ ուսուցչուհին ինչպիսի՜ համբերությամբ ու նվիրվածությամբ է աշխատում, հավատում էին նրա խոսքին, գնում նրա հետևից: Մարքսիստ ուսուցչուհու ազդեցությունն օրեցօր մեծանում էր, և շուտով դպրոցը վերածվեց բանվորների քաղաքական լուսավորության օջախի: «Ինձ զարմացնում էր, հիշում է հետագայում Կրուպսկայան, թե մարքսիզմի վրա հենվելով ինչպիսի՜ հեշտությամբ էինք բանվորներին բացատրում ամենադժվար բաները: Կյանքի բոլոր հանգամանքները նրանց հանգեցնում էին մարքսիզմի ընկալմանը: Դպրո-

* «Надежда Константиновна Крупская», Биография, М., Политиздат, 1978.



ցում անցկացրած այդ հինգ տարիները կենդանի արյուն ներարկեցին իմ մարքսիզմին, ընդ-
միշտ ձուլեցին ինձ բանվոր դասակարգի հետ»:
Վլադիմիր Իլյիչն ու Նադեժդա Կոնստանտինովնան միմյանց հանդիպեցին 1894 թ. փե-
տըրվարի վերջին, Պետերբուրգի մարքսիստների խորհրդակցության ժամանակ: «Մենք Իլյիչի
հետ հանդիպեցինք արդեն որպես կազմակերպված հեղափոխական մարքսիստներ, և այդ
իր կնիքը դրեց մեր համատեղ կյանքի ու աշխատանքի վրա», շատ տարիներ անց հիշում է
Կրուպսկայան: Նրանց բարեկամությունն աստիճանաբար վերածվեց սիրո:
1898 թ. հուլիսի 10-ին Նադեժդա Կոնստանտինովնան և Վլադիմիր Իլյիչը աքսորավայ-
րում՝ հեռավոր սիբիրյան Շուշենսկոյե գյուղում, ամուսնացան: Վլադիմիր Իլյիչն ընտրեց
Նադեժդա Կոնստանտինովնային, «և այդ ընտրությունը,— գրել է Գ. Մ. Կրժիժանովսկին,—
անսխալ էր. դժվար կլիներ գտնել ավելի հավատարիմ բարեկամի»:
Համարյա 30 տարի Ն. Կրուպսկայան Վ. Ի. Լենինի հետ էր: Եթե անգամ Նադեժդա
Կոնստանտինովնայի դերը սահմանափակվեր Վլադիմիր Իլյիչի նկատմամբ սիրող կնոջ հո-
գատարությամբ, ապա միայն դրանով էլ նա կարժանանար բոլոր առաջադեմ մարդկանց
երախտագիտությանն ու հարգանքին: Իլյիչի բացակայությամբ կոնսպիրացիոն բոլոր կա-
պերի կենտրոնն էր նրա «ժառանգորդուհին»՝ Նադյան: Նրա կազմակերպական տաղանդը,
ամենատարբեր մարդկանց սրտերի բանալին գտնելու ունակությունը, իրադրությանը համա-
պատասխան գործելակերպի ընտրությունը, վարպետ կոնսպիրատորի հմտությունն առինք-
նում էին ընկերներին, և աստիճանաբար աճում էր նրա հեղինակությունը:
Վ. Ի. Լենինի խորհրդով Ն. Կրուպսկայան Շուշենսկոյեում գրեց Կինը աշխատավորուհի
բրոշյուրը, որտեղ ցույց է տվել կնոջ ծանր վիճակը ցարիզմի օրոք: Առաջին մարքսիստական
գրքույկն էր այն Ռուսաստանի աշխատավոր կնոջ մասին:
Բարձր գնահատելով Կրուպսկայային՝ որպես խորագիտակ մարքսիստի, Վլադիմիր Իլյի-
չը նրա հետ կիսում էր իր խոհերն ու ստեղծագործական պլանները: Նադեժդա Կոնստան-
տինովնան օգնում է Վ. Ի. Լենինին «Իսկրայի» ստեղծման գործում և, որպես խմբագրության
քարտուղար, վարում նամակագրությունը: Լենինյան «Իսկրա»-ի խմբագրությունում աշխա-
տելու տարիները Նադեժդա Կոնստանտինովնայի համար եղել են նրա հեղափոխական կեն-
սագրության ամենապայծառ էջերից: Միշտ և բոլոր պարագաներում նա հաստատ ու հետե-
վողականորեն վարել է լենինյան գիծ, եղել Իլյիչի անփոխարինելի օգնականը: Նա հանդի-
սացել է նաև «Վպերյոդ», «Պրոլետարի», «Ռաբոչայա գազետա» բոլշևիկյան թերթերի խմբ-
բագրությունների քարտուղարը, «Ռաբոտնիցա» (1914 թ.) ամսագրի խմբագրական կոլեգիայի
անդամը: Տարիներ շարունակ Կրուպսկայան կուսակցության Կենտկոմի քարտուղարն էր:
Լուսավորության գործի մեծ գիտակն ու էնտուզիաստը խորապես զգում էր կրթության
դերը ժողովրդի քաղաքական զարթոնքի, կուլտուրական վերելքի մարզում: Նրան մշտապես
անհանգստացնում էին մանկավարժական հարցերը: Դեռևս Ուֆայում նա գրել էր երեք բրո-
շյուր (Մանկավարժական հարցերի հասարակական կողմը, Դպրոցը և կյանքը, Երեք լավ
ուսուցիչ), որոնցում նա համարձակորեն շեշտում էր, որ մանկավարժությունը պետք է գըլ-
խավորեն հնամոլության ոգին թոթափած եռանդուն, առաջադեմ, մանկավարժությանը սիրա-
հարված, այդ գործը բարձր գնահատող, դրա նշանակությունն ու կարևորությունը խորապես
զգացող մարդիկ:
Առաջին համաշխարհային պատերազմի տարիներին Լենինի խորհրդով Կրուպսկայան
գրում է Ժողովրդական կրթությունը և դեմոկրատիան գիրքը, որն այնպես բարձր է գնահա-
տել Ա. Վ. Լունաչարսկին. «Նադեժդա Կոնստանտինովնայի գիրքը... այն հիմքն է, որից ել-
նում էինք մենք մեր ողջ աշխատանքի ծրագրերը կազմելիս՝ ինչպես նոր գաղափարների
ստեղծման վերաբերյալ, նույնպես և դրանց պրակտիկ իրականացման գործում, մանկավար-
ժական աշխատանքում, մեր հանրապետության հազարավոր ու հազարավոր դպրոցների
ռեալ մանկավարժական պրոցեսում»: Ն. Կ. Կրուպսկայան գիրքն ավարտում է հետևյալ կա-
րևոր մտքով. «Քանի դեռ դպրոցական գործի կազմակերպումը կգտնվի բուրժուազիայի ձեռ-
քում, աշխատանքի դպրոցը կլինի զենք՝ ուղղված բանվոր դասակարգի դեմ: Միայն բանվոր
դասակարգը կարող է աշխատանքի դպրոցը դարձնել ժամանակակից հասարակության վե-
րափոխման զենք»:
Նադեժդա Կոնստանտինովնան կուսակցական հմուտ պրոպագանդիստ էր, փայլուն
հռետոր: Նրա պարզ ու հստակ խոսքն առինքնում էր ունկնդիրներին, վերջիններս զգում էին,
որ նա խորապես հասկանում է իրենց կարիքներն ու ձգտումները, պատրաստ է օգնել նրանց
ինչով հնարավոր է:

Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո, Վ. Ի. Լենինի առաջարկությամբ, Նադեժդա Կոնստանտինովնան սկսեց աշխատել լուսժողկոմատում: Այդ մեծ ջանքեր պահանջող գործին Կրուպսկայան նվիրվել էր գլխովին, ողջ էությամբ:

Լինելով սովետների բոլոր համագումարների պատվիրակ, Կրուպսկայան տեսնում էր, որ քիչ կանայք են մասնակցում դրանց աշխատանքին: Եվ քաղաքական-հասարակական կին գործիչը, կանանց իրավունքների ջերմ պաշտպանը գրում է Ինչո՞ւ են քիչ կին պատվիրակները համագումարում բրոշյուրը և մի շարք հոդվածներ, հանդես գալիս զեկուցումներով՝ նվիրված կնոջ, մոր և մանկան վիճակի բարելավման հարցերին:

Երիտասարդության, մանուկների անկաշառ բարեկամը մասնակցել է 20-ական թվականներին հրավիրված կոմերիտմիության բոլոր համագումարներին, պատանիներին ու աղջիկներին կոչ արել ուսումնասիրել բնության օրենքները, բնագիտությունն ու այլ ճշգրիտ գիտություններ, դառնալ կրթված քաղաքացիներ: Մեծ կարևորություն էր տալիս Կրուպսկայան մանկական կոմունիստական շարժմանը: 1922 թ. նա դառնում է պատանի պիոներների կազմակերպության ստեղծման ակտիվ նախաձեռնողներից մեկը, սահմանում դրա նպատակներն ու խնդիրները: Նա ո՛չ միայն ջերմորեն սիրում ու հասկանում էր երեխաներին, այլև ամեն ինչ անում էր նրանց կյանքը բարեկեցիկ դարձնելու համար: Համամիութենական կենտգործկոմին կից երեխաների կյանքի բարելավման հանձնաժողովի ակտիվ անդամն էր նա:

«Ուսուցիչների ուսուցիչ» էին կոչում այն ժամանակ Նադեժդա Կոնստանտինովնային: 1924 թ. մանկավարժ-գիտնականի խմբագրությամբ լույս տեսավ Սոցիալիստական դաստիարակության ժամանակակից պրակտիկան ժողովածուն, որը երիտասարդ սովետական մանկավարժության առաջին նվաճումներից էր: Նրան հանձնարարվում է աշխատավորական լայն մասսաների շրջանում լուսավորական-գաղափարական աշխատանքի ամենապատասխանատու գործը: Վիթխարի է նրա դերը մեր երկրում նոր դպրոցի ստեղծման մարզում: Բացի արտադպրոցական կրթության բաժնից, նա ղեկավարել է նաև պետական գիտական խորհրդի գիտամանկավարժական սեկցիան, խմբագրել «Նոր դպրոցի ճանապարհներին» ամսագիրը: ՌՍՖՍՀ լուսժողկոմ Ա. Լունաչարսկու հետ մեկտեղ նա ձեռնամուխ է լինում միասնական, աշխատանքային, պոլիտեխնիկական, մի քանի աստիճան ունեցող դպրոցի կազմակերպմանը: Առաջին գիտնական մարքսիստ-մանկավարժն էր նա, սովետական մանկավարժության հիմնադիրներից մեկը:

Սոցիալիստական շինարարության տարիներին Նադեժդա Կոնստանտինովնան հատուկ ուշադրությամբ էր հետևում երկրում գիտությունների զարգացմանը: ՍՍՀՄ գիտությունների ակադեմիայի անդամները, երկրի գիտական հասարակայնությունը լավ գիտեին Ն. Կ. Կրուպսկայայի վաստակը նոր մանկավարժական գիտության ձևավորման, զարգացման ասպարեզում: Պատահական չէ, որ 1931 թ. փետրվարի 1-ին նա միաձայն ընտրվեց պատվավոր ակադեմիկոս: 1936 թվականին Ն. Կ. Կրուպսկայային, առաջինը մեր երկրում, շնորհվեց մանկավարժական գիտությունների դոկտորի աստիճան:

Ն. Կրուպսկայան երկար տարիներ եղել է կուսակցական ղեկավար օրգաններում՝ կենտրոնական վերահսկիչ հանձնաժողովի, կուսակցության Կենտրոնական կոմիտեի կազմում, բազմիցս ընտրվել է Համառուսաստանյան կենտգործկոմի և ՍՍՀՄ կենտգործկոմի անդամ: Ն. Կ. Կրուպսկայան ամենաակտիվ մասնակցություն է ունեցել սոցիալիզմի կառուցման լենինյան հանճարեղ պլանի կենսագործմանը:

Լենինիզմի գաղափարների անսկուն ու ջերմ պրոպագանդիստը, Լենինի առաջին, լավագույն կենսագիրը իր Հիշողություններում ամենամերձավորի անմիջականությամբ ներկայացրել է պրոլետարիատի մեծագույն ղեկավարի վեհ ու հմայիչ կերպարը: Կրուպսկայայի աշխատությունները Լենինի կյանքի և գործունեության արժանահավատ ու հարուստ աղբյուրն են: Երբ Լենինի առաջին կենսագիրն ավարտեց իր Հիշողությունները, Մաքսիմ Գորկին գրեց նրան. «Թանկագին Նադեժդա Կոնստանտինովնա, նոր վերջացրի Վլադիմիր Իլյիչի մասին Ձեր հիշողությունների ընթերցումը. այնքան պարզ, սիրելի, տխուր գիրք է: Ուզեցի այստեղից, հեռվից սեղմել Ձեր ձեռքը և, ճիշտն ասած, չգիտեմ էլ շնորհակալություն ասել Ձեզ, թե ինչ, այս գրքի համար»: Հուզմունքը մեծ էր, խոսքերը՝ ժլատ...

Իլյիչի կյանքի վերջին ամիսներին Նադեժդա Կոնստանտինովնան իր ողջ էությամբ նվիրվում է նրա տառապանքների թեթևացմանը: Այդ ծանր օրերին՝ 1924 թ. հունվարի 6-ին, նա ուժ գտավ ելույթ ունենալու սովետների II համագումարում: Անսահման հուզիչ ու ցնցող այդ ելույթի մասին տարիներ անց Ֆելիքս Կոնը գրել է Կրուպսկայային. «Երբ ես լսեցի Ձեզ սովետների II համագումարի ամբիոնից, երբ լսեցի Լենինի դրոշը բարձր պահելու Ձեր կոչը,



հասկացա կուսակցության մեջ Ձեր խաղացած դերը նրա հիմնադրումից սկսած, հասկացա՝ ինչպիսի կամքի ուժ պետք էր ունենալ կուսակցության առաջ այդ պարտականությունը կատարելու համար: Նադեժդա Կոնստանտինովնա, մինչև այդ պահը ավելի քան քառասուն տարի ես մասնակցել էի հեղափոխական շարժմանը, ծանր ապրումներ շատ եմ ունեցել, բայց երբեք չեմ զգացել այն, ինչ վերապրեցի ու վերզգացի Ձեր այդ ելույթի ժամանակ»:

Ծանր էր Վլադիմիր Իլյիչի կորուստը մեր ողջ երկրի, նրա մերձավորների, կյանքի անվարան ընկերոջ համար: «Մի մեծ խնդիրք ունեմ,— «Պրավդա»-ի միջոցով պատասխանում է Կրուպսկայան իրեն ուղղված ցավակցական հեռագրերի հեղեղին,— մի՛ք թույլ տա, որ Իլյիչի համար ձեր ապրած վիշտը վերածվի նրա անձնավորության մակերեսային փառաբանության: Կամենո՞ւմ եք հարգել Լենինի հիշատակը, կառուցե՛ք մանկամսուրներ, մանկապարտեզներ, տներ, դպրոցներ, գրադարաններ, ամբուլատորիաներ, հիվանդանոցներ, տներ հաշմանդամների համար և, ամենագլխավորը, կենսագործեք նրա պատգամները»:

Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայա գիրքը եզրափակվում է «Նրա անունն ապրում է ժողովրդի հիշողության մեջ» գլխով: Ն. Կրուպսկայայի պայծառ անունն ապրում է մեր երկրի բոլոր ժողովուրդների հիշողության մեջ: Նրա հեղափոխական-մանկավարժական ժառանգության ուսումնասիրումն ու պրոպագանդումը մեծապես խթանում է սովետական մանկավարժության զարգացմանն ու կատարելագործմանը:

Իրեն ուղղված սրտառուչ նամակներին Նադեժդա Կոնստանտինովնան պատասխանել է. «Ես բոլորովին վատ չեմ ապրել: Հակառակը, ես շատ երջանիկ եմ, որ ինձ վիճակվել է ապրել հեղափոխությունը, շատ եմ սիրում իմ այժմյան աշխատանքը, շատ լավ է եղել իմ կյանքը և անձնական հարաբերությունների առումով: Իսկ ծանր պահեր, ո՞ւմ կյանքում դրանք չեն լինում: Բոլոր տարիներին կյանքը եռացել, լցված է եղել ափեափ: Ո՛չ, ես բողոքելու հարկ չունեմ: Եվ, եթե կյանքս նորից սկսեի, շատ քիչ բան, միայն մանրուքներ կփոխեի»:

Իրոք օրինակելի և ուսանելի կյանք, որի ուսումնասիրությունն օգնում է մարդկանց, երիտասարդությանը՝ դառնալու իր երկրի լիակատար քաղաքացիներ, ջերմ, բոլորանվեր հայրենասերներ:

**ԳՈՀԱՐ ՄԱՆՎԵԼՅԱՆ**

---

## Օրենք և էկոնոմիկա

# ՊԱՐԱՊՈՒՐԴՆԵՐԸ ՄԻՋԱՄՏՈՒԹՅՈՒՆ ԵՆ ՊԱՀԱՆՋՈՒՄ

ՅՈՒ. Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

ԵՐԵՎԱՆ ԿԱՅԱՐԱՆԻ ուղեբեռային բաժանմունքում զայրացած մի անծանոթ գանգատվում էր.

— Տասն օր է անցել, ինչ ես Մոսկվայից կահույք եմ ուղարկել։ Ինչո՞ւ է իմ բեռն ուշանում։

— Երբ տեղ հասնի, տեղյակ կպահենք։

— Մինչև ծանուցագիրը փոստով ստացվի, իմ հաշվին տոկոսներ կգրանցվեն...

Երեք օր հետո, հենց այդտեղ էլ ես պատահաբար կրկին հանդիպեցի անհանգիստ հասցեատիրոջը։ Դեմքի գոհունակ արտահայտությունից պարզ երևում էր, որ ուղեբեռը տեղ է հասել։

Այս դեպքը ես հիշեցի, երբ նույն կայարանում ականատես եղա մեկ այլ տեսարանի։ Բաց երկնքի տակ, աչքը «տիրոջ» ճամփին, ընկած էր երկու աշտարակային ամբարձիչ։ Դրանք, որ հանրապետության արդյունաբերական շինարարության մինիստրության հասցեով ստացվել էին 1978 թվականի նոյեմբերին, մինչև վերջերս էլ «անտեր» էին։

— Այսպիսի անտնտեսավարությունը մեծ վնաս է պատճառում հանրային գործին,— զայրանում է Անդրկովկասյան երկաթուղու Երևանի բաժանմունքի պետ Ա. Ա. Ղանդիլյանը։— Որոշ մարդկանց անփութության, թափթփվածության պատճառով փչանում է թանկարժեք սարքավորումը, փտում են բանջարեղենն ու միրգը, վագոնների պարապուրդները հասնում են մեծ չափերի, խախտվում են փոխադրումների գրաֆիկները։ Արդյունաբերական ձեռնարկությունների և տարբեր կազմակերպությունների մերձատար ուղիներում տեղի են ունենում բեռնման ռեսուրսների զգալի կորուստներ։ Մեր բաժանմունքում օրական չի բեռնաթափվում վագոնների 30 տոկոսը։ Վերջիվերջո նման տընտեսավարները պատասխանատվության պետք է ենթարկվե՞ն, թե ոչ։

Դիմենք վիճակագրությանը։ Տրանսպորտային միջոցների պարապուրդներն անցյալ տարի հանրապետության երկաթուղիներում հասել են 9 փաստացի ժամի՝ նորմայով նախատեսված 5,3-ի փոխարեն։ Դրա հետևանքով օգտակար շրջանառությունից դուրս է մնացել ավելի քան 250 հազար վագոն։ Ըստ էության կորուստը կազմել է շուրջ 700 լիարժեք գնացք, որոնք պետք է երթևեկեին պողպատե ուղիներով։ Տարբեր կազմակերպությունների վճարած տուգանքի գումարը հասել է 19 մլն ռուբլու։

Թվերի անողոք լեզուն տխուր խորհրդածությունների տեղիք է տալիս։ Այսպիսի անտնտեսվարությունն էապես վնասում է պետության շահերին։

ՍՄԿԿ Կենտկոմի 1978 թվականի նոյեմբերյան պլենումը, սկզբունքային գնահատական տալով այդ երևույթին, կուսակցական և սովետական մարմիններին նպատակամղում է վճռական պայքար ծավալելու ժողովրդական տնտեսության մեջ եղած ամեն տեսակ խախտումների դեմ։ Մասնավորապես երկաթուղային տրանսպորտում անհրաժեշտ է, վերջապես, լուծել բեռնառաքների և



հասցեատերերի «գորդյան հանգույցը», գերատեսչական վիճաբանությունները, ռիթմի, կարգապահության խախտումները... Չէ՛ որ տրանսպորտը մեր էկոնոմիկայի արդյունավետության ու որակի համար մղվող պայքարի վճռական տեղամասերից մեկն է։ Եվ այստեղ այլևս չի կարելի ներողամիտ լինել մեղավորների նկատմամբ։

Պլանային և պայմանագրային պարտավորությունների կատարումը, պետական կարգապահության խստիվ պահպանումը սոցիալիստական օրինականության և իրավակարգի ամրապնդման կարևոր գործոններ են և արժանի են դատախազական հսկողության սևեռուն ուշադրության։ Հենց այդ պատճառով էլ տրանսպորտի աշխատանքի նորմալացման նպատակով հանրապետության դատախազության մարմինները մեկ տարում ստուգումների հետևանքով ավելի քան հարյուր առաջարկություն են ներկայացրել մի շարք մինիստրությունների և գերատեսչությունների՝ դրանցում շարադրելով այն պայմանները, որոնք նրանց ենթակա ձեռնարկություններում դառնում են իրավախախտումների պատճառ։ Կոնկրետ միջոցներ են ձեռնարկվել վագոնների գերնորմատիվ պարապուրդները վերացնելու և նյութական վնասը հատուցելու համար, պատասխանատվության են ենթարկվել օրինականությունը խախտող անձնավորությունները։ Բացահայտ անտնտեսավարության համար հարուցվել են մի շարք քրեական գործեր։

Թերթելով այս տխուր պատմությունների էջերը, ծանոթանալով պատասխանողների մշուշապատ բացատրություններին, ակամայից մտածում ես, որ եթե վագոններում լինեին մեղավորների անձնական իրեր, նրանք իսկույն կկազմակերպեին բեռների փոխադրումը, ինչպես դա արեց ուղեբեռային բաժանմունքում ինձ հանդիպած խռովահույզ անծանոթը։

Չորս վագոն կաղամբ էր ստացվել Հայկոոպի էջմիածնի արտադրական կոմբինատի հասցեով։ Անհրաժեշտ է բեռնաթափել։ Սակայն ձեռնարկության գլխավոր ինժեներ Դ Նազարյանը կտրականապես հրաժարվում է այն ընդունել, պատճառաբանելով, թե իբր իրենք այդպիսի ապրանքի հայտ չեն ներկայացրել։ Կայարանի աշխատողների բազում պահանջները՝ շուտ փչացող բեռն ընդունել երկաթուղային տրանսպորտի կանոնադրության 63-րդ հոդվածի համաձայն, հանդիպում են կտրական «ոչ»-ի։ Իսկ կանոնադրության մեջ սևով սպիտակին գրված է. «Այնպիսի բեռ ստանալու դեպքում, որը նախատեսված չէ պլանով (պայմանագրով, պատվերով, կարգագրով) հասցեատերը պարտավոր է այդպիսի բեռն ընդունել կայարանից՝ իր պատասխանատվությամբ պահելու համար»։ Դ. Նազարյանի համառությունը, ի վերջո, կոտրվեց միայն այն ժամանակ, երբ պարզվեց, որ վագոնները, այնուամենայնիվ, եկել են Հայկոոպի հասցեով։

Ինչպես գլխի է ընկնում ընթերցողը, հարաբերությունները «պարզելու» ընթացքում անընդհատ աճում էր վագոնների անարտադրողական պարապուրդների յուրաքանչյուր օրվա տուգանքի գումարը։ Տասնմեկերորդ օրը, երբ արդեն ավարտվել էր բեռնաթափումը, պարզ դարձավ, որ անցած աշնան կլիմայական ծանր պայմաններում հավաքված կաղամբի գրեթե կեսն այլևս օգտագործման համար պիտանի չէ։ Դ. Նազարյանի քմահաճույքի պատճառով ձեռնարկությունն ստիպված եղավ վճարել չորս հազար ռուբլի տուգանք և, միաժամանակ, նույնպիսի գումարի չափով «ակտավորել» փչացած բանջարեղենը։ Եվ օրինաչափ է այն խիստ պատասխանատվությունը, որ հետաքննության նյութերով ներկայացվեց մեղավորին։

Սակայն բանը ո՛չ միայն անտնտեսավարությունը, պետական կարգապահության խախտումները ժամանակին բացահայտելն է, այլև դրանց ծնող պատճառների կանխումը։ Հենվելով հասարակության, աշխատանքային կոլեկտիվների վրա, դատախազության մարմիններն ամենից առաջ կոչված են կանխելու իրավախախտումները։ Ինչպես ցույց է տալիս դատախազական հսկողության պրակտիկան,— պատմում է Հայկական ՍՍՀ դատախազ Ս. Ա. Օսիպյանը,— այս կամ այն խախտումը, մասնավորապես վագոնների գերնորմատիվ պարապուրդները մեծ մասամբ հետևանք են աշխատանքի վատ կազմակերպման, աշխատանքային կարգապահության ցածր մակարդակի, այդ կարևոր

*մար, չեն ցանկանում հաշտվել բացասական երևույթների հետ, պահանջում են արմատախիլ անել անտնտեսավարության բոլոր դրսևորումները։*

*Հասկանալի է, որ երկաթուղային տրանսպորտում պետական կարգապահության պահպանման, գերնորմատիվ պարապուրդների կանխման մասին օրենսդրության կատարման նկատմամբ դատախազական հսկողության արդյունավետությունը բարձրացնելու գործում տակավին ոչ բոլոր լծակներն են գործադրվել։*

*Անհրաժեշտ է ակտիվացնել պետական կարգապահության խախտումները բացահայտելու և կանխելու աշխատանքները, խստությամբ քննել մեղավոր անձանց պատասխանատվության հարցը, լայնորեն կիրառել վնասի հատուցման հայցեր ներկայացնելու պրակտիկան, հասնել այն բանին, որ դատարանները մասնավոր որոշումներ կայացնեն տնտեսական ղեկավարների նկատմամբ, պատժվեն աշխատանքում անտնտեսավար և անփույթ անձինք։*

*Օրինականության և իրավակարգի պահպանության դիրքերում պետք է կազմ ու պատրաստ լինեն ընդհանուր շղթայի բոլոր օղակները։ Չէ՞ որ ձեռնարկությունների զգալի մասը դեռ շարունակում է խախտել վագոնների մշակման ժամկետները, ձախողվում են տրանսպորտային տնտեսության արտադրական բազայի տեխնիկական զինվածության և ամրապնդման համաձայնեցված պլանները, չեն օգտագործվում նախատեսված միջոցները, շատ են դատարկ վազքերը...*

*Շարժակազմի արդյունավետ օգտագործման, գնացքների շարժման կայուն ռիթմի և փոխադրումների հարցում ժողովրդական տնտեսության լիակատար բավարարման հասնելն առաջնակարգ կարևորություն ունեցող խնդիր է։ Եվ այդ գործում օրենքից ամեն մի շեղում պահանջում է արժանի գնահատական։*

---



# ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԿՐԹՈՒԹՅԱՆ ՁԵՌՆԱՐԿ*

«Экономическая газета» շաբաթաթերթի խմբագրության պատրաստած Սոցիալիզմը և աշխատանքը դասագիրքը նախատեսված է աշխատավորների մասսայական տնտեսագիտական կրթության սիստեմի ունկնդիրների համար:

Դասագրքում **ՍՄԿԿ XXV** համագումարի պատմական որոշումների լույսի ներքո քննության են առնված աշխատանքի արտադրողականության, արտադրանքի որակի բարձրացման, աշխատանքների գիտական կազմակերպման, նյութական խրախուսման ու բարոյական խթանման, սոցիալիստական մրցության կազմակերպման հարցերը:

Տասներորդ հնգամյակը՝ արդյունավետության և որակի հնգամյակ. այսպես է վերնագրված դասագրքի ներածությունը: **ՍՄԿԿ XXV** համագումարի որոշումներով ոգեշունչ, աշխատանքային վերելքի պայմաններում, մեր երկիրը ոտք դրեց այս հնգամյակը: «Ամբողջ աշխարհն է տեսնում, որ մեր կուսակցության գործունեությունը, նրա ձգտումները,— նշեց այդ համագումարում ընկեր **Լ. Ի. Բրեժնևը**,— հնարանպատակամղված են այն բանին, որ հնարավոր ամեն ինչ արվի մարդու բարօրության համար, հանուն մարդու»: Ահա ինչու մեկ են կուսակցության և սովետական ժողովրդի նըպատակները, անքակտելի՝ օրըստօրե ընդլայնվող ու ամրապնդվող նրանց կապերը: Համառոտակի անդրադառնալով իններորդ հնգամյակի հասումներին՝ նշվում է, որ տասներորդ հնգամյակի գլխավոր խնդիրը ժողովրդի նյութական ու կուլտուրական մակարդակի հետևողական բարձրացումն է: Դրան հասնելու հիմնական ուղիներն են՝ հանրային արտադրության դինամիկ ու համամասնական զարգացումը և արդյունավետության բարձրացումը, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, աշխատանքի արտադրողականության բարձրացումը, որակի համակողմանի բարելավումը: Այդ ամենի կենսագործման խնդրում հույժ մեծ է սոցիալիստական մրցության դերը, որն անհրաժեշտ է անդուլ ծավալել՝ նոր թափ հաղորդելով աշխատանքի նըկատմամբ կոմունիստական վերաբերմունքի շարժմանը:

Դասագրքի առաջին գլխում (Աշխատանքը սոցիալիստական հասարակությունում) ցույց է տրված, որ աննանաչելիորեն փոխվել է բազում դժվարություններ հաղթահարած, մեծ զոհաբերությունների գնով, համառ պայքարով հեղափոխության հաղթանակը նվաճած աշխատավորը: Փոխվել է և նրա աշխատանքի բնույթը. մարդն աշխատում է ոչ թե շահագործողի, այլ ողջ հասարակության, իր իսկ բարօրության համար:

Մեր երկրի սոցիալիստական ինդուստրացման և գյուղատնտեսության կոլեկտիվացման շնորհիվ բարձրացել է երկրի հանրայնացման մակարդակը, արմատապես փոխվել դրա տեխնիկական բազան, վերացել են ձեռքի աշխատանքի շատ ծանր տեսակներ, օրեցօր ավելանում է մեքենայացված աշխատանքը: Սոցիալիստական շինարարության ընթացքում մեր երկրում իրականացված կուլտուրական հեղափոխության շնորհիվ աննախընթաց չափերով սկսեցին զարգանալ ժողովրդական լուսավորությունը, կուլտուրան, արվեստը: **ՍՍՀՄ**-ը դարձավ համատարած գրագիտության, կրթության ու կուլտուրայի երկիր: **ՍՍՀՄ** Սահմանադրությամբ երաշխավորված է մեր քաղաքացիների աշխատանքի անկապտելի իրավունքը: Իսկ աշխատանքը սովետական քաղաքացու համակողմանի ինքնարտահայտման, ինքնադրսևորման լավագույն միջոցն է:

Սոցիալիստական իրականության մեջ կոփվել է բանվոր դասակարգի, կոլտնտեսային գյուղացիության, ժողովրդական մտավորականության անխախտ, կուռ դաշինքը, ուր առաջատար դեր է խաղում բանվոր դասակարգը: Այդ անխորտակելի դաշինքը զարգանալով, ծավալվելով կհանգեցնի այն բանին, որ, ինչպես ասված է **ՍՄԿԿ** ծրագրում, «Կոմունիզմի հաղթանակով տեղի կունենա մտավոր և ֆիզիկական աշխատանքի օրգանական միացում մարդկանց արտադրական գործունեության

---

* Սոցիալիզմը և աշխատանքը: *«Հայաստան» հրատ., 1978։*

առավել կուլտուրական ու կրթված, համակողմանի զարգացած: Ըստ արժանվույն կարևորելով այս գործոնը՝ ընկեր Լ. Ի. Բրեժնևն ասել է. «...ազատ ժամանակը կարող է իսկապես հանրային հարստություն համարվել, երբ այն օգտագործվում է մարդու, նրա ընդունակությունների համակողմանի զարգացման համար և դրանով իսկ՝ ամբողջ հասարակության նյութական ու հոգևոր պոտենցիալը է՛լ ավելի բազմապատկելու համար»:

Ահա ինչու այնպես անհրաժեշտ է ազատ ժամանակի խելացի, պատշաճ կազմակերպումը, դրա անիմաստ կորուստների անհանդուրժողականությունը, ինչպես իր, նույնպես և ուրիշների ժամանակը խնայելը, չվատնելը:

Գրքի նախավերջին գլխում (Աշխատավորների մասնակցությունը արտադրության կառավարմանը) ներկայացված է սովետական դեմոկրատիզմի էությունը, դրա տարբերությունը բուրժուական երկրների դեմոկրատիզմից: Մեր երկրում կուսակցությունը մշտապես հոգում է դեմոկրատիայի զարգացման մասին, ամեն ինչ արվում է ապահովելու համար աշխատավորների ստեղծագործական ակտիվությունը, արտադրության կառավարմանը նրանց առավել գործուն մասնակցությունը:

Սովետական դեմոկրատիայի սիստեմում շատ կարևոր դեր է խաղում ժողովրդական վերահսկողությունը, որն իրականացնում են ժողովրդական վերահսկողության խմբերն ու պոստերը, ժողովրդական վերահսկիչները: Կոմերիտական «լուսարձակայինների» հետ մեկտեղ նրանք կազմակերպում են արշավներ, ստուգայցեր, մասսայական ստուգումներ, բացահայտում թերությունները, օգնում դրանց վերացմանը:

Բարձր գաղափարայնություն, կոմունիստական համոզվածություն— սրանք են աշխատանքի լենինյան ոճի բնորոշ հատկանիշները՝ մեր երկրի առաջընթացի վճռական նախադրյալները: Այդ ոճին հատուկ են նորի զգացումը, առաջ նայելու, հեռանկարը տեսնելու ունակությունը, նախաձեռնությունն աշխատանքում, ստեղծագործական մոտեցումը գործին, գործարարությունը, խոր գործիմացությունը: Բացահայտելով քննադատության և ինքնաքննադատության դերը՝ որպես հասարակական զարգացման առաջշարժիչ ուժ, հուսալի խթան, դասագրքում նշվում է, որ պետք է պատժել քննադատությունը ճնշողներին, քննադատողներից վրեժ լուծողներին:

Գրքի վերջին գլուխը նվիրված է աշխատանքին ու կոլեկտիվին, ուր ցույց է տրված աշխատանքային կոլեկտիվի դերը անհատի ձևավորման, կատարելագործման մարզում: Հասարակական առաջընթացի տեմպերը պայմանավորված են նաև յուրաքանչյուր կոլեկտիվի արտադրական գործունեությամբ: Այդ արտահայտվում է նրանով, որ աշխատանքային կոլեկտիվը հանդես է գալիս որպես հասարակության նոր արտադրանուժ՝ սերտորեն կապված գիտատեխնիկական առաջընթացի արագացման, մասսաների տեխնիկական ու տնտեսական ստեղծագործության զարգացման հետ:

Ֆ. Էնգելսը ժամանակին գրել է, որ հանրային արտադրամիջոցներով աշխատանքը «ենթադրում է կոլեկտիվ արտադրություն, կոլեկտիվություն, որպես արտադրության հիմք»:

Սոցիալիստական հասարակարգում դրա ամեն մի անդամի աշխատանքը մասնիկն է կոլեկտիվ աշխատանքի, իսկ վերջինս պարզապես համատեղ աշխատանք չէ: Գրքում ներկայացված են աշխատանքի կոլեկտիվության բնորոշ կողմերը— արտադրամիջոցների նկատմամբ հասարակության բոլոր անդամների հավասարություն. շահերի ընդհանրություն, նպատակների միասնություն, մարդկանց կամավոր ու գիտակցական միավորում համատեղ աշխատանքում. անմիջական մասնակցություն այդ աշխատանքին, ընդհանուր նպատակների համար գործելու պատրաստակամություն, հասարակության յուրաքանչյուր անդամի ներդրման գնահատում ըստ նրա աշխատանքի քանակի ու որակի. փոխօգնություն, ընկերական հարաբերություններ, կազմակերպվածություն, կարգապահություն, պատասխանատվություն աշխատանքային ընկերների առջև. հասարակության բոլոր անդամների և աշխատանքային կոլեկտիվների փոխգործունեության պլանաչափություն, ողջ հանրային տնտեսության ներդաշնակ զարգացում:

Ցույց տալով, որ մարդկության այս մեծագույն նվաճումը՝ աշխատանքի կոլեկտիվությունը, պատմական զարգացման արգասիք է, միաժամանակ նշվում է, որ այն հասարակության բոլոր անդամների քաղաքական ակտիվ գործունեության կազմակերպող գործոն է, համաժողովրդական իշխանության իրականացման սիստեմի կարևոր մի օղակ:

Դաստիարակությունը աշխատանքային կոլեկտիվում ենթագլխում արտացոլված է կոլեկտիվի ներգործուն դերը, դրա վճռական ազդեցությունը անհատի կազմավորման կատարելագործման խնդրում: Այստեղ են ձևավորվում նոր, սոցիալիստական հատկանիշները, ստեղծվում ընկերական փոխօգնության ու բարեկամության հարաբերությունները:

Կոլեկտիվի ներգործությունը աշխատանքի արդյունավետության վրա ապահովվում է կոլեկտիվում բարոյահոգեբանական նպաստավոր մթնոլորտի ստեղծմամբ. այդ գործոնը իրավամբ համեմատվում է օդի հետ. «Եթե այն մաքուր և հարուստ է թթվածնով,— կարդում ենք գրքում,— ապա մարդը այն չի նկատում: Սակայն օդի որոշակի աղտոտվածության դեպքում սկսում է հանդես գալ նրա բացասական ներգործությունը, վատթարանում է մարդկանց ֆիզիկական վիճակը»:

Հեղափոխական, մարտական, աշխատանքային փառավոր ավանդություններ ունեն մեր երկրի բազմահազար կոլեկտիվները, որոնք և դառնում են երիտասարդության աշխատանքային, բարոյական դաստիարակության դարբնոցներ, կոմունիզմ կառուցողի բարոյական կոդեքսի արմատավորման դպրոցներ:

Շահագործումից ազատ, արտադրամիջոցների հանրային սեփականության վրա հիմնված սոցիալիստական աշխատանքը մեր երկրում աստիճանաբար վերածվում է կոմունիստականի: Դրա նյութական հիմքը մեր հասարակության նյութատեխնիկական բազայի զարգացման հաջողություններն են: Բարձր կազմակերպված արտադրության և զարգացած տեխնիկայի վրա հիմնված կոմունիստական հասարակության մեջ կփոխվի աշխատանքի բնույթը, բայց հասարակության անդամները բնավ էլ չեն ազատվի աշխատանքից. այն «...չի լինի անարխիայի, անգործության ու դատարկապորտության հասարակություն,— կարդում ենք Սովետական Միության կոմունիստական կուսակցության ծրագրում:— Ամեն մի աշխատունակ մարդ կմասնակցի հասարակության աշխատանքին և կապահովի հասարակության նյութական ու հոգևոր հարստությունների անընդհատ աճ»: Ահա ինչու այնպես կարևոր նշանակություն ունի կոմունիստական վերաբերմունքը աշխատանքի նկատմամբ, որին նվիրված է դասագրքի վերջին ենթագլուխը: Հիշենք Ռոմեն Ռոլանի հիացմունքով լի խոսքերը ստախանովյան շարժման մասին. «Դա, ըստ երևույթին, մարդկային գիտակցության վիթխարի զարթոնք է աշխատանքի բնագավառում: Այն հնարավոր է լինում իսկական սոցիալիստական հասարակության մեջ, ուր բանվորն իրեն զգում է որպես տեր»:

Իրոք, իրեն որպես տեր զգացող աշխատավորն է միայն, որ կարող է կամավոր կերպով իր ջանքերը ձուլել կոլեկտիվի, հասարակության ջանքերին և բարիքներ ստեղծել ո՛չ միայն իր, այլև ողջ հասարակության համար, ապրել ու աշխատել կոմունիստաբար:

Օգտակար գործ է կատարել «Հայաստան» հրատարակչությունը՝ թարգմանաբար հայ ընթերցողի սեղանին դնելով բանվորների համար գրված Սոցիալիզմը և աշխատանքը դասագիրքը՝ մայրենի լեզվով: Կարևոր ու պիտանի մի գիրք է այն, որը կնպաստի աշխատավոր մասսաների տնտեսագիտական կրթությանը:

Ցավոք, գրքում կան թարգմանական, լեզվաոճական սխալներ:

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

# Նամակ խմբագրությանը

Հարգելի խմբագրություն.

Ձեր ամսագրի 1964 թվականի № 11-ում
լույս տեսավ «Մի հուշարձանի ճակատագիրը»
խորագրով իմ հաղորդումը՝ Փամբակի գոգա-
հովտում, Սպիտակի շրջանի Սարալ գյուղի
դիմաց, սև քարից կառուցված բուրգի մասին:
Դրանով տարիների մոռացությունից հետո,
առաջին անգամ, արխիվային հավաստի փաս-
տաթղթերի օգնությամբ, բացվում էր այդ «ա-
նանուն» կոթողի գաղտնիքը: Այստեղ, 1804
թվականի օգոստոսին, թափվել է ռուս և
հայ ժողովուրդների զավակների արյունը. այդ
հուշարձանը Արևելքի բռնակալների լծից Հա-
յաստանի ազատագրման համար հերոսաբար
զոհված ռուսական բանակի 114 զինվորների
ու սպաների առաջին եղբայրական գերեզմանն
է հայկական հողում: Հոդվածն ավարտվում է
«Հուշարձանը պետք է, անտարակույս, վերա-
կանգնվի...» առաջարկությամբ:

Ցավոք, ամսագրի այս հաղորդումն ու լավ
ցանկությունը երկար ժամանակ անհետ մնա-
ցին համապատասխան կազմակերպություննե-
րի կողմից և մի շարք ջանադիր միջա-
մըտություններից հետո միայն, 1973 թ. կեսե-
րից, գործնական քայլեր արվեցին, կոնկրետ
միջոցառումներ մշակվեցին հուշարձանը վե-
րականգնելու և դրա շուրջը համալիր ստեղ-
ծելու համար:

Ընդառաջելով Սպիտակի կուսշրջկոմի ըն-
կերների խնդրանքին, վերադարձնելու պայ-
մանով ես նրանց տրամադրեցի (**ծանո-
թանալու,** բայց ոչ երբեք հրապարակելու)
երկրի տարբեր արխիվներից իմ ջանքերով
հանված փաստաթղթերի մեքենագիր պատճեն-
ները, հիշյալ հուշարձանի վերականգնման ճար-
տարապետական երկու նախագծերի (պատ-
րաստված 1835—1837 թթ.) լուսանկարները,
«Լենինյան ուղիով» ամսագրի 1964 թ. № 11-
ում տպագրված «Մի հուշարձանի ճակատա-
գիրը» իմ հաղորդման առանձնատիպը, ինչպես
նաև արխիվային նյութերի և գրականությունից
քաղված տեղեկությունների հիման վրա պատ-
րաստած ուսումնասիրությունս՝ բաղկացած 13
մեքենագիր էջից:

Հետագայում այդ նյութերը ետ ստանալու
համար թափածս ջանքերը, տարաբախտա-
բար, ապարդյուն անցան:

Բայց ահա, տարիներ հետո, 1978 թվականի
հունիսի 23-ին, «Սովետական Հայաստան» օ-
րաթերթում կարդալով Սպիտակի կուսշրջկո-
մի առաջին քարտուղար Հ. Հակոբյանի՝ «Մեծ
հիրադարձությանը արժանի գործեր» վերնա-
գրով հոդվածը, շատ զարմացա, երբ տեսա,
որ դրա 1/3-ը վերը նշված հուշարձանի պատ-
մության վերաբերյալ ամսագրում տպա-
գրված համառոտ հաղորդումից ու Սպիտակի
կուսշրջկոմում գտնվող դրա ընդարձակ մեքե-
նագիր շարադրանքից արված մոնտաժ է:
Ահա մեր խոսքը հաստատող երկու օրինակ.

«Լենինյան ուղիով», *1964, № 11*

*1804 թվականի օգոստոսի երկրորդ կեսին գե-
ներալ Ցիցիանովը Երևանի տակ կռվող գնդերից
առանձնացրեց 114 հոգուց բաղկացած մի ջո-
կատ և մայոր Մոնտրեզորի հրամանատարու-
թյամբ ուղարկեց Փամբակ, Թիֆլիսից՝ Ռոստոմ-
բեկի գլխավորությամբ եկող գումակին դի-
մավորելու և այն ապահով տեղ հասցնելու հա-
մար: Սակայն այդ գաղտնի չմնաց թշնամուց
(էջ 98):*

«Սովետական Հայաստան»,
*1978, հունիսի 23*

*Նույն թվականի օգոստոսի երկրորդ կեսին
Երևանի պարիսպների տակ կռվող ռուսական
գնդերից առանձնացվում է 114 հոգուց բաղկա-
ցած մի ջոկատ և մայոր Մոնտրեզորի (ղարա-
մայոր) հրամանատարությամբ ուղարկվում
Փամբակ՝ Թիֆլիսից եկող գումակին դիմա-
վորելու և այն ապահով տեղ հասցնելու համար:
Սակայն դա գաղտնիք չի մնում:*



*Սեպտեմբերի 13-ին Ցիցիանովի զորքերը
Երևանից վերադարձի ճանապարհին Փամբակի
հովտում գտել և հողին են հանձնել մայոր
Մոնտրեզորի ու նրա հետ զոհված քաջերի դիակ-
ները, թվով 100 մարդ: Հետագայում Թիֆլիսի
հետևակ գնդի սպաների նախաձեռնությամբ ի-
րենց պաշտոնակցի՝ մայոր Մոնտրեզորի հիշա-
տակը հավերժացնելու համար այնտեղ կանգ-
նեցվել է մի համեստ կոթող, որի էպիգրաֆը
գրել է ինքը՝ Ցիցիանովը: Այդ կոթողն իր սկզբ-
նական տեսքով մեզ չի հասել, այլ ավերվել է
1826—1827 թթ. ռուս պարսկական պատերազմի
ժամանակ, պարսիկների կողմից (էջ 98—99):*

*Երևանից վերադարձող Ցիցիանովի զորքերը
1804 թ. սեպտեմբերի 13-ին Փամբակի հով-
տում գտել և հողին են հանձնել մայոր
Մոնտրեզորի ու նրա հետ զոհված քաջերի
դիակները: Հետագայում Թիֆլիսի հետևակ
գնդի սպաների նախաձեռնությամբ այդտեղ
կանգնեցվել է մի համեստ կոթող, որի էպի-
գրաֆը գրել է Ցիցիանովը: Այդ կոթողը իր
սկզբնական տեսքով մեզ չի հասել, այն ա-
վերվել է 1826—1827 թթ. ռուս-պարսկական
պատերազմի ժամանակ:*

Ցավոք, սա վերջին անակնկալը չէր: Հու-
լիսի կեսերին Սպիտակից ստացա ծրարված
հրավիրատոմս (նույն ամսի 28-ին հուշարձա-
նի բացմանը ներկա լինելու համար) և Հ.
Հակոբյանի «հեղինակած» նոր գործը՝ «Այս
սուրբ հուշարձանի առաջ» բրոշյուրը, որ հրա-
տարակել էր Հայկական ՍՍՀ «Գիտելիք» ըն-
կերությունը:

Իհարկե, ինձ ուրախացնում էր այն փաստը,
որ, ի վերջո, վերականգնվում էր այդ հուշար-
ձանը և ավարտվում դրա շուրջը կառուցվող
համալիրը: Բայց, միաժամանակ, խոր ցավ
զգացի՝ կարդալով բրոշյուրը, որտեղ ինձ կո-
ղոպտված տեսա: Ինչպես լրագրում, բրոշյու-
րում ևս կոթողին վերաբերող շարադրանքը
նույնն էր: Բրոշյուրի հեղինակը նույնիսկ զլա-
ցել էր վկայակոչել «Լենինյան ուղիով» ամսա-
գիրը:

Ի լրումն ասվածի, առաջադրված հարցի
առնչությամբ բերենք մի նմուշ ևս՝ հուշարձա-
նի պատմությունը ներկայացնող իմ ուսում-
նասիրության (որի մի օրինակը գտնվում է
խմբագրությանդ արխիվում, մյուսը՝ Սպիտա-
կում) և Հ. Հակոբյանի հրատարակած բրո-
շյուրի զուգահեր համադրությամբ.

Մեքենագիր օրինակում (էջ 12)

*«...ընկած քաջերի հուշարձանի մասին տեղե-
կություններ չլինելու պատճառով այն կառուցե-
լուց հետո 13 տարի մնացել է առանց հուշա-
տախտակի: Միայն 1848 թ. մայիսի 7-ին ին-
ժեներ-փոխգնդապետ Կորգանովի ջանքերով հա-
ջողվում է վերջապես արխիվից ստանալ մայոր
Մոնտրեզորի և նրա հավաքական ջոկատի մյուս
մասնակիցների զոհվելու մասին Ցիցիանովի
կողմից ցարին ուղարկված զեկուցագրի և այլ
նյութերի պատճենները, որոնց հիման վրա
կազմվել է հուշատախտակի արձանագրության
տեքստը: Երկու տարի է տևել նաև մարմարյա
հուշատախտակի պատրաստումը»:*

Հ. Հակոբյանի բրոշյուրում (էջ 9)

*«Շուրջ 13 տարի հերոս զինվորների հուշար-
ձան-կոթողը մնում է առանց հուշատախտակի՝
ստույգ տեղեկություններ չլինելու պատճառով:
Միայն 1848 թ. մայիսին ինժեներ-փոխգնդա-
պետ Կորգանովին հաջողվում է արխիվից հայտ-
նաբերել մայոր Մոնտրեզորի ու նրա ջոկատի
մյուս մասնակիցների զոհվելու մասին Ցիցիա-
նովի կողմից ցարին ուղարկված զեկուցագիրն
ու մյուս նյութերը: Երկու տարի է տևել մար-
մարյա հուշատախտակի պատրաստումը»:*

Այս երկու ընթերցումների համընկնումն
այնքան ակնբախ է, որ ավելորդ են դառնում
մեկնաբանությունները: Հ. Հակոբյանն արտա-
գրելիս միայն աննշան «խմբագրական աշխա-
տանք է» կատարել, որը վկայում է հետքերը
կորցնելու նրա ապարդյուն ճիգերի մասին:

Բանն այն է, որ ինչպես հապճեպորեն գըր-
վել է բրոշյուրը, նույնպիսի հապճեպությամբ
էլ այն «խմբագրվել» ու լույս է տեսել: Ցավալի
է, որ իրենց կոչման բարձրության վրա չեն
գտնվել նաև բրոշյուրի խմբագիրներ պրոֆե-
սոր Վ. Պարսամյանը և Ս. Սիմոնյանը:

Ճշմարտության դեմ չմեղանչելու համար ա-
սենք նաև, որ Հ. Հակոբյանի «ինքնուրույնու-
թյունը» դրսևորվել է միայն այն բանում, որ
բրոշյուրում խեղաթյուրվել են պատմական
որոշ փաստեր, արվել են սխալ և կամայական
մեկնաբանություններ, որոնք տեղիք են տվել
թյուրիմացությունների՝ ապակողմնորոշելով ըն-
թերցողներին ու հուշարձանի այցելուներին:

Ցավոք, Հ. Հակոբյանի սույն բրոշյուրը և «Սովետական Հայաստան» լրագրի հոդվածը հիմք դարձան մամուլի և ինֆորմացիայի այլ օրգանների նման հրապարակումների համար:

Սովետական պատմագիտությանը և մամուլին խորթ նման արատավոր պրակտիկան ձաղկելու նպատակով գրված մեր նամակը կօգնի պայքարելու նման երևույթների դեմ:

Խորին հարգանքով՝
Հ. Ն. ԽԱՉԱՏՐՅԱՆ

12 օգոստոսի
1978 թ.

**ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ.— Մեզ համար ևս անսպասելի էր հայ և ռուս ժողովուրդների բարեկամությունը հավերժացնող կոթողին նվիրված հրապարակման նման արձագանքը. մամուլի ավանդույթների խախտման մասին վկայող այս նամակն առիթ հանդիսացավ վերանայելու տասնհինգ տարի առաջ՝ 1964 թ. մեր հրապարակած Մի հուշարձանի առթիվ հաղորդումը, մեզ մոտ գտնվող սույն հաղորդման ընդարձակ տեքստը, համեմատելով դրանք «Սովետական Հայաստան» լրագրի 1978 թ. հունիսի 23-ի համարում զետեղված Մեծ իրադարձությանը արժանի գործեր վերնագրով հոդվածի և «Գիտելիք» ընկերության հրապարակած Այս սուրբ հուշարձանի առաջ բրոշյուրի հետ: Համեմատությունից պարզվեց, որ նամակի հեղինակն իրավացի է, դժգոհությունը՝ տեղին:**

**Իհարկե, խրախուսելի է հուշարձանը պրոպագանդելու Հ. Հակոբյանի մտադրությունը, բայց դա չպետք է արվեր մեկ այլ հեղինակի ինքնությունն անտեսելով: Խոսքը, վերջին հաշվով, վերաբերում է հեղինակային իրավունքին և մամուլի էթիկային:**

**Զանտեսել նախորդների հանրօգուտ վաստակը մեր կյանքի որևէ բնագավառում. սա մեր պարտականությունն է: Դեռևս լենինյան «Искра»-ի ժամանակներից բոլշևիկյան մամուլի վետերանները, առաջավոր մտքի ներկայացուցիչները, տեսաբանները, հոդվածագիրները, բանավիճողները ուրիշից քաղված արտահայտությունները, մի բառն իսկ առել են չակերտի մեջ, ցույց տվել աղբյուրը:**

**Առիթից օգտվելով՝ կուզեինք նշել, որ դեպքը եզակի չէ. մամուլում դեռևս պատահում է, որ հոդվածագիրները, գրքերի, աշխատությունների հեղինակները վկայակոչում են արխիվներ, աղբյուրներ, որ բնավ չեն էլ տեսել, տեղյակ չեն, այլ քաղել են երկրորդ աղբյուրից, հաճախ էլ այն հեղինակներից, որոնցից վերցնում, արտագրում են տվյալ հատվածը: Այս քայլը արատավոր, խոտելի չէր համարվի, եթե նոր հեղինակը հիշատակեր, թե ումի՞ց է քաղել տվյալ հատվածը, կամ նշեր իր շարադրանքի սկզբնաղբյուրը:**

**Մամուլի լենինյան ավանդույթների պահպանության նախանձախնդիրները՝ խմբագրու-
Մամուլի լենինյան ավանդույթների պահպանության նախանձախնդիրները՝ խմբագրությունները, պետք է ջանան այնպես անել, որ չկրկնվեն նման արատավոր երևույթները: Իսկ դրա համար մամուլի աշխատողները, հրատարակիչները պետք է ինչպես հարկն է հետևեն մամուլի մյուս օրգանների հրապարակումներին, մի բան, որ հնարավորություն կընձեռի՝ կանխելու այսպիսի երևույթները:**

---



Адрес редакции: 375033, Ереван 33, Барекамутян 59 г.

**Խմբագրության հասցեն՝ 375033, Երևան—33, Բարեկամության 59 գ.:** Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ՝ 27—25—29, պատ. քարտուղար՝ 27—12—92, պրոպագանդայի և էկոնոմիկայի բաժիններ՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատողներ՝ 27—60—64:

*ՎՖ 01702 Պատվեր 672 Թղթի չափսը 70×108 1/16: Տիրաժ՝ 16.600 Գինը՝ 20 կոպ.:*
*Ստորագրված է տպագրության 9/IV-1979 թ.:*
*Տպ. 6 մամուլ, մամուլում 68840 նիշ:*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան, Ալ. Իսահակյան փող. № 28:*



# *Ձեզ համար, ընթերցողնե՛ր*

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆ— Երկերի լիակատար ժողովածու: *Հ. 19: «Հայաստան» հրատ.,* 
*1978:*

Հայկական սովետական հանրագիտարան: *Հ. 4: Ե., ԳԱ հրատ., 1978:*

Գ. ԺՈՒԿՈՎ— Հիշողություններ և խորհրդածություններ: *Հ. 2: «Հայաստան»*
*հրատ., 1978:*

Ի. ՉԻՍՏՅԱԿՈՎ— Ծառայում ենք հայրենիքին: *«Հայաստան» հրատ., 1978:*

Վ. ՏՐՈՒԽԱՆՈՎՍԿԻ— Անտոնի Իդեն: *Անգլիական դիվանագիտության էջեր,*
*30—50-ական թվականներ: «Հայաստան» հրատ., 1978:*

Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆ— Իսրայել Օրի: *«Հայաստան» հրատ., 1978:*

Մ. ԶԱԽԱՐՈՎ— Գիտնականը և զինվորը *(Սովետական Միության մարշալ Բ. Մ.*
*Շապոշնիկովի մասին): «Հայաստան» հրատ., 1978:*

Հ. ԱԼԻԽԱՆՅԱՆ— Կոմունիստի բարձր կոչումը: *«Հայաստան» հրատ.: 1978:*

Ա. ԳԱՎԹՅԱՆ— Զարգացած սոցիալիստական դեմոկրատիայի հասարակությու-
նը: *Ե., «Գիտելիք» հրատ., 1978:*

Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ— Մտորումներ գիտնականի կոչման մասին: *Ե., «Գիտելիք»*

*հրատ., 1978:*

Ս. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ— Սովետական ապրելակերպը սոցիալիզմի մեծագույն
նվաճումն է: *Ե., «Գիտելիք» հրատ., 1978:*

Վ. ՂԱԶԱԽԵՑՅԱՆ— Հայաստանի կոլտնտեսային գյուղացիության պատմու-
թյունը (1929—1937): *Ե., ԳԱ հրատ., 1978:*

Հ. ԶԱՔԱՐՅԱՆ— Աշխատանքային ռեսուրսների զբաղվածության և ռացիոնալ
Հ. ԶԱՔԱՐՅԱՆ— Աշխատանքային ռեսուրսների զբաղվածության և ռացիոնալ օգտագործման հարցերը զարգացած սոցիալիզմի պայմաններում: *ԵՊՀ հրատ., 1978:*

**Владимир Ильич Ленин.** Биографическая хроника. Т. 9. Июнь 1920 — январь 1921. М., Политиздат, 1978.

**Л. И. БРЕЖНЕВ — Мир социализма-торжество великих идей.** М., Политиздат, 1978.

**А. ГРОМЫКО — Во имя торжества ленинской внешней политики.** Избранные речи и статьи. М. Политиздат, 1978.

**Б. ПОНОМАРЕВ — Реальный социализм и его международное значение.** М., Политиздат, 1978.

**А. КУРЕЛЛА — На пути к Ленину.** (Пер. с нем.). М., Политиздат, 1978.

**Октябрь, историческая миссия социализма и современный мир.** М., Политиздат, 1978.

**Внешняя политика Советского Союза.** Изд. 2-е, перераб. и доп., М., Политиздат, 1978.

**Ленинская аграрная политика КПСС.** Сборник важнейших документов (март 1965 г. — июль 1978 г.). М., Политиздат, 1978.

**Что такое «демократический социализм»?** М., Политиздат, 1978.

**П. ГУРЕВИЧ — Буржуазная пропаганда в поисках теоретического обоснования.** М., Политиздат, 1978.

**Международное рабочее движение.** Справочник. М., Политиздат, 1978.

**Г. ШАХНАЗАРОВ — Социалистическая судьба человечества.** М., Политиздат, 1978.

Գինը՝ 20 կ.

Индекс 77783

# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԲԱՐԵՐԱՐ ՃԱՌԱԳԱՅԹՈՒՄ

*Լիտվացի մասնագետներն առաջարկել են սածիլների լրացուցիչ ճառագայթման սարքավորումներ փոքր թաղարների, բազմահարկ հիդրոպոնիկ սարքերի, ինչպես նաև սովորական ջերմոցների համար: Գյուղատնտեսները գիտեն՝ հարուստ բերք կարելի է ստանալ լուսավորության լավագույն ռեժիմի դեպքում: Նոր ավտոմատ սարքերի հիմնական առանձնահատկությունն այն է, որ դրանք, հաշվի առնելով բնական լուսավորության աստիճանը, կատարում են շտկումներ— միացնում են ցերեկային լամպերը կամ հալոգեն (աղածին) ջահերը: Նախօրոք տրված ծրագիրն ապահովում է ճառագայթման գիտականորեն հիմնավորված նորմաները: Այսպիսով, ստանալով լույսի լավագույն չափը, բույսերը չեն տուժում դրա անբավարարությունից կամ ավելցուկից: Սածիլները նման պայմաններում տալիս են 100 տոկոսանոց աճ՝ առավելագույն նյութափոխանակությամբ: Սոխի, ստեպղի, գողի և վարունգի բարձր բերք կարելի է ստանալ նաև ձմռանը:*

## ՑԵԼՅՈՒԼՈԶԱՅՈՎ ԱՂՅՈՒՍ

*Եթե աղյուսի մեջ լինում են ծակոտիներ, ապա այն ոչ թե խոտան է, այլ հատուկ տեսակի է՝ ջերմամեկուսիչ: Սակայն նման ծակոտիներ ստանալը դյուրին գործ չէ: Շինանյութի բարելավման նոր միջոց է հայտնաբերվել ԳԴՀ-ում: Թղթի ֆաբրիկաներից մեկում զբաղվում էին արտադրական թափոնների՝ հոսող ջրերից կորզվող ցելյուլոզայի մանրաթելի և օրգանական այլ նյութերի մնացորդների օգտագործման խնդիրներով: Եվ ահա այդ մնացորդներն էլ որոշեցին ավելացնել կավին: Այրումից հետո դրանք առաջացնում են ներքին ծակոտիներ, որոնք պահպանում են աղյուսի մեխանիկական հատկությունները և իջեցնում ինքնարժեքը:*

## ՕԴԱՓՈԽԻՉ ՍԱՂԱՎԱՐՏ

*Տեխնիկական անվտանգության լեհ մասնագետները մշակել են պլաստմասսայից պատրաստված երկշերտ սաղավարտ՝ շինարարների, հանքափորների, ցեմենտի արդյունաբերության աշխատողների համար: Այն պաշտպանում է ո՛չ միայն հարվածից, այլև փոշուց: Այդ սաղավարտի ծոծրակային մասում տեղադրված է փոքր մարտկոցով բանող օդափոխիչ, որը ներծծում է օդը և ուղարկում այն կրկնամաքրման: Դրանից հետո օդը մղվում է դիմակի ապակու և մարդու դեմքի միջև եղած տարածությունը, ապա դուրս գալիս ծնոտի տակի բացվածքից:*

## ԽՃՈՒՂԻՆ ԵՐԵՍՊԱՏՈՒՄ ԵՆ ԼԻՆՈԼԵՈՒՄՈՎ

*Ֆրանսիայում այժմ խճուղիներ կառուցելու համար չի պահանջվում ո՛չ բազմատոնն գլանիվ, ո՛չ ասֆալտ հալող կաթսա: Բետոնե հիմքին քսում են սինթետիկ սոսինձ, ապա վրան փռում յուրատեսակ լինոլեում՝ պլաստմասսայի և մանրախճի խառնուրդից պատրաստված լայն ժապավեն: Նման մեթոդով ժամում կարելի է երեսպատել 40 մետր ճանապարհ: Մեկ* քմ *պոլիմերամանրախճի շերտի քաշը 12* կգ *է: Նոր մեթոդով խճուղիներ կառուցվում են առաջին հերթին լեռնային շրջաններում:*

## ՍԿԻՊԻԴԱՐՈՎ ԲԱՆՈՂ ՏՐԱՆՍՊՈՐՏ

*Ֆինն գիտնականների մի խումբ Հելսինկիի շրջակայքում փորձարկել է նոր տեսակի վառելանյութով բանող մարդատար ավտոմեքենա: Այն լավ զտված նավթի ու սկիպիդարի խառնուրդ է, ընդ որում սկիպիդարը գերակշռում է: 100* կմ *անցնելու համար ծախսվում է ավելի քիչ նոր վառելանյութ, քան բենզինը: Բանն այն է, որ երկրի փայտե թափոններ մշակող ձեռնարկություններում տարեկան պիդար, որով կարելի է փոխարինել ստացվում է մոտ 40 հազար տոննա սկիթանկարժեք բենզինը:*